№ 1 ՍԱՀԱԿ-ՄԵՍՐՈՊԵԱՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ № 1

ԼԷՕ

# Ս. ՄԵՍՐՈՊ



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ ԱՒԵՏԻՍ ՊՕՂՈՍԵԱՆՑԻ

ԹԻՖԼԻՍ
Տպարան «ՀԵՐՄԷՍ», Միխայլեան փողոց № 81.
1904 (25)

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

## ԵՐԿՐՈՐԴ ՄԱՍ.—Ցեղաւորչում

**Ա.**—*Քրիստոնէութիւնը իբրև եւրոպական կրօն։—Եկեղեցու առաջադիմական ջանքերը և յոյների կատարած դերը այդ գործերի մէջ։—Քրիստոնէութիւնը հալածվածից դառնում է տիրապետող։—Եկեղեցական շարժումներ* 75—80։

**Բ.**—*Քրիստոնէութիւնը Հայաստանում։—Դա ժողովրդական շարժում չէր։—Թագաւորի հրամանով և զօրքերով։—Հեթանոսութեան դիմադրութիւնը։—Նա չը ջնջվեց բոլորովին։—Հեթանոսասէր կուսակցութիւն և Պարսկաստան։—Ժողովուրդը տգէտ է։—Գրիգոր Լուսաւորչի յաջողութիւնները և ձեռք առած միջոցները։—Հեթանոսական յիշատակարանների ոչնչացում, յոյն-ասորական դպրոցներ, օտար ուսմունք, օտար լեզու։—Քրիստոնէութիւնը չէ ժողովրդականանում։—Ամբողջ չորրորդ դարը հեթանոսութեան մրցումն է քրիստոնէութեան դէմ։—Փաւստոսի մի նկարագրութիւնը։—Եկեղեցական իշխանապետութիւն ժառանգական դինաստիայի ձևով* 80—92։

**Գ.**—*Գրիգոր Լուսաւորչի տոհմը իբրև խոշոր հողատէր ազնուականութիւն։—Դինաստիական շահեր և պարտաւորութիւններ։—Պատիւ և ազդեցութիւն։—Եկեղեցին ու պետութիւնը չը միացան իրար հետ։—Հայ սուլթանիզմը հնացած, ուժասպառ։—Կռիւ եկեղեցու դէմ։—Տիրանի անգթութիւնները։—Քաղաքական պատճառ։—Շապուհ երկրորդ, հալածանք յունական քրիստոնէութեան դէմ։—Ալբիանոսի կաթողիկոսական տոհմը իբրև հակադրութիւն Լուսաւորչի յունասէր տոհմի դէմ։—Դա պահպանողական-ազգային կուսակցութիւն է, հաւատարիմ արքունիքին։—Պարսկական կուսակցութեան զոհերը։—Նախարարների բաժանումը* 92—109։

**Դ.**—*Վտանգաւոր ժամանակ յունական քրիստոնէութեան համար։—Ներսէս Մեծ։—Բարեկարգութիւնների շրջան. ապարդիւն ջանքեր։—Հայաստանը՝ վանական միաբանութիւն։—Բարեգործական դրախտ։—Ներսէսի հզօր ազդեցութիւնը։—Ի՞նչ էր Արշակ երկրորդը։—Բարեգործութիւնների միւս երեսը։—Խիստ րէակցիա յունական ազդեցութեան դէմ. Մեհրուժան և պարսկական կուսակցութեան աջողութիւնները։—*

## ՉՈՐՐՈՐԴ ՄԱՍ.—Հետեւանքներ

## ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Չորս հարիւր երեսուն ինն թուականի ձմեռն էր։ Հայոց Մեհեկան ամիսը նոր էր մտնում իր կէսին և Արարատեան մեծ դաշտի վրա դեռ տիրում էր սառնամանիքների մեռելութիւնը։ Բայց մարդիկ ցուրտ ու անզգայ չէին բնութեան պէս։ Նրանց մէջ սաստիկ յուզմունք էր նկատվում։ Պատահել էր մի տխուր դէպք։

Տերևազուրկ ու անկենդան փռված են այգիները դաշտի երեսին, և ծառաստանների այդ ընդարձակ տարածութեան միջից բարձրանում են մի քաղաքի կաւէ պարիսպներն ու աշտարակները։ Վաղարշապատն է, Հայաստանի ամենագեղեցիկ քաղաքներից մէկը։

Թագաւորներ շինեցին ու զարդարեցին նրան, թագաւորներ էին նստել նրա մէջ. բայց այժմ թագաւորական մայրաքաղաք չէր Վաղարշապատը, և բազմաթիւ բարձր ապարանքները այժմ միայն վկայ էին թէ նա մի

ժամանակ եղել է Արշակունի թագաւորների սիրած-փայփայած կալուածն ու բնակատեղին։ Վաղուց էր նա զրկվել այդ փառքից։ Մի ժամանակ նա նախանձով էր նայում իր հարաւ-արևելեան դաշտեցի հարևան Դուինին, ուր փոխադրվել էր արքունիքը։ Այժմ նախանձելու առիթ էլ չէր մնացել. այժմ նըրան չէր նախանձում և հին ու հռչակաւոր մայրաքաղաք Արտաշատը, որ նայում էր Դուինին միւս կողմից, Արաքսի ափից։ Երեք մայրաքաղաք մի դաշտի վրա, երեքն էլ այրիացած։ Այժմ այլ ևս թագաւոր չէր ապրում ոչ մի տեղ, այժմ սարդն էր ոստայններ գործում թագաւորների դահլիճում *)։ Հայաստանի թագը վերացել էր. հայերը իրանք չը կամեցան թագ ունենալ. ու գնացին, պարսիկներին տուին իրանց թագը։

Բայց հայոց աշխարհում դեռ մնացել էր մի համազգային հիմնարկութիւն։ Վաղարշապատի ապարանքներից մէկը գտնվում էր կաթուղիկէ եկեղեցու մօտ։ Քաղաքական կործանման միջոցին նա էլ բաւական խախտվել էր, բայց կարողացաւ պահվել և նրա շնորհիւ Վաղարշապատը այժմ էլ շարունակում էր մայր քաղաք լինել Հայաստանի համար։ Այդ ապարանքը կաթողիկոսարանն էր։

Այդտեղ ահա, Մեհեկանի 13-ին (Փե-

*) Ֆրդուսիի խօսքերը։

տրվարի 17-ին) մի մարդ մեռաւ, և այդ դէպքն էր, որ յուզմունք տարածեց մայրաքաղաքի մէջ։

Վերջին տասը տարիների ընթացքում հայ ժողովուրդը մեծ-մեծ կորուստներ էր ունեցել։ Կորցրեց թագաւորութիւնը, վերջացաւ Արշակունիների տոհմը. կաթողիկոսական իշխանութիւնը խլվեց Գրիգոր Լուսաւորչի տոհմից, յանձնվեց վատ ու արատաւոր օտարազգիների։ Վեց ամիսը դեռ նոր էր անցել, ինչ խորին վշտի մէջ մեռել էր գահից հեռացրած հայոց կաթողիկոսը, որի հետ վերջանում էր Լուսաւորչի հաչակաւոր տոհմի հոգևոր տիրապետութիւնը։ Իսկ այժմ այս կորուստը, վերջինը, որ տանում էր իր հետ գեղեցիկ յիշատակներ։ Զգում էին որ հայ աշխարհից վերանում է մի սուրբ, մի նուիրական բան։ Եւ մինչդեռ կաթողիկոսարանի սենեակում դրված էր այդ վերացողի անշունչ մարմինը, նրանից քիչ հեռու տաք վիճաբանութիւն տեղի ունէր։ Հաւաքվել էին մարդիկ, մտածում էին թէ Հայաստանի մէջ ո՞ւր պիտի որոնել այն մի ափ հողը, որ այդ մարմինը իր ծոցում ամփոփելու պատիւն ունենայ։ Երեք տեսակ կարծիքներ կային, երեք վիճող կողմեր, ամեն մէկը մի տեղ էր առաջարկում, պատճառաբանութիւններ էր բերում, չէր ուզում զիջել միւսներին։

Եւ այդքան սիրված ու յարգված հանգուցեալը հռչակված իշխանաւոր չէր, մեծանուն մի տոհմից չէր վարում իր ծագումը, պատերազմի հերոս չէր կամ հարուստ մի կալուածատէր, աշխարհ կառավարող, հրամանատար չէր եղել, ոչ իսկ այս աշխարհի հզօրներից մէկն էր։ Մօտ ութսուն տարեկան մի ծերունի վարդապետ—վարդապետ և ո՛չ իսկ եպիսկոպոս,—հասարակ գիւղացու որդի.— ահա ով էր նա։

Բայց այդ ծերունին մի հատ անուն ունէր. Նա առաջին հայ ուսուցիչն էր: Գործել էր երեսուն ու հինգ տարի, և այժմ, երբ մահը խլել էր նրա ձեռքից թուղթն ու գրիչը, հայոց աշխարհը, առաջին անգամ իր պատմութեան սկզբից, գլուխ էր իջեցնում այդ նոր, մինչև այդ չեղած, գործիչի առջև։ Երևոյթը որքան նոր էր, այնքան, և աւելի էլ, զարմանալի մեծ ու խորհրդաւոր էր։ Մի երկիր, որ դարերի ընթացքում իմացել էր միմիայն կոպիտ ոյժի առջև խոնարհվել, այժմ գտնում էր պաշտելու արժանի մի նոր սկզբունք—մտաւոր ոյժը։ Գրքի հերոսը, առաջին անգամ հայ հողի վրա, ստանում էր այն պատիւներն ու մեծարանքները, որ մինչև այդ սովոր էին մատուցանելու սրի հերոսին...

Բացվել էր փետրվարեան օրը, բաց էին և Վաղարշապատի դռները։ Մարդկային

գլուխների մի ամբողջ ծով դանդաղ, յորձանքներ տալով, դուրս է թափվում։ Մայրաքաղաքը շատ էր տեսել փայլուն զօրահանդէսներ, արքայական յուղարկաւորութիւններ. այժմ նա ցոյց էր տալիս թէ գահից ու ինքնուրոյնութիւնից զրկված մի երկիր ինչ հզօր նեցուկ էր դտել։ Շարժվում էր ծովացած, լուրջ ու մտախոհ ամբոխը։ Պլպլում էին ճրագներն ու ջահերը, եկեղեցական երգեցողութիւնը տիրապէս ծաւալվում էր պաղ օդի մէջ։ Ճանապարհին գիւղական խմբեր էին միանում հանդէսին։

Իսկ ճանապարհը երկար էր։ Արարատեան դաշտի երեսին անհագին բազմութիւնը ամփոփվեց, համեմատաբար փոքր էր երեւում շրջապատող տափարակների անհուն տարածութեան վրա։ Մասիսը, գետնից մինչև երկինք ձգված ձիւնեղէն սիւնը, հարաւից էր նայում հայոց աշխարհի այս նոր երևոյթին, իսկ հիւսիսից Արագածի սուր գագաթները իրանց առաջապահ բարձրութիւնների ձիւնոտ գլուխների վրայով տեսան որ յուղարկաւորութիւնը թեքվեց դէպի իրանց կողմը։

Եւ իրաւ։ Կաթողիկոսարանում վիճող կողմերից մէկը պիտի յաղթէր, ու յաղթողը չէր կարող մի ուրիշը լինել, երբ վիճողների թւում էր և հայոց հազարապետը, Վահան

Ամատունին։ Պարսից արքունիքը, ջնջելով հայոց թագաւորութիւնը, պարսիկ կառավարիչ (մարզպան) էր ուղարկում Հայաստան։ Ամատունին նշանակված էր հազարապետ և երկրի կառավարութիւնը, մարզպանից յետոյ, նրա ձեռքումն էր։ Դա հայ լաւագոյն իշխաններից մէկն էր և կառավարում էր ժողովուրդը «հայրաբար», ինչպէս վկայում է պատմութիւնը։ Եւ պէտք է որ այդպէս լինէր, որովհետև նա մէկն էր կրթված հայերից։ Առաջին հայ ուսուցչի դագաղը շրջապատել էին նրա աշակերտները։ Դրանք էին ամենից շատ վշտացած, դրանք էին վէճ բացել թաղման տեղի մասին։ Վահան Ամատունին էլ այդ աշակերտներից մէկն էր։ Բնական էր որ նա կամենար իր սեփական կալուածում թաղել իր սիրելի ուսուցչին։ Իսկ նրա կալուածը այս դաշտից քիչ բարձր էր գտնվում—Օշական ամրոցը։ Հայոց հազարապետը թաղման հանդէսի գլուխն անցաւ. Նըրա հետ էր այն ժամանակվայ առաջնակարգ և ազդեցիկ ազնուական տան ներկայացուցիչը — Համայեակ Մամիկոնեան, Վարդանի եղբայրը։

Դաշտը տեղի տուեց քարքարոտ բլուրներին. Արագածի շղթայի առաջին ոտներն էին։ Բազմութիւնը հասաւ ամենամեծ բլուրի գլուխը, իջաւ Քասաղ գետի մեծ ձորը,

*հորից դէպի բարձր դիմեց։ Օշականն էր։ Այդտեղ իջեցրին դագաղը, այդտեղ եկեղեցին հրաժեշտ տուեց իր վարդապետին, իսկ ժողովուրդը վերջին անգամ երկրպագեց ուսուցչին։*

*Գերեզմանը փակվեց։ Եւ այն օրից Օշականի հողը պահում է իր ծոցի մէջ ս. Մեսրոպին։*

# ՕՃԱԿԱՆԻ ՍՈՒՐԲԸ

*(Իմ ճանապարհորդական յուշատետրից)*

—

*Անողորմ է յուլիսեան արեգակը Արարատեան դաշտում։ Շուրջդ ամեն ինչ այրվում է։ Երկնակամարն անգամ—չես հաւատում թէ շիկացած երկաթից չէ։ Մի բանի դէմ միայն անզօր է յուլիսեան արևը.—Մասիսի վեհափառ գագաթի դէմ, որ օրն ի բուն շողացնում է իր ձիւնեղէն գտակը և իր ոտների տակ տապակվող աշխարհին ասում է թէ արարատեան արեգակն էլ, այնուամենայնիւ, ամենակարող չէ։ Բայց դրանից ինչ մխիթարութիւն խեղճ ուղևորին...*

*Քրտնաթաթախ, մոծակներից և հազար ու մի անտեսանելի մժեղներից խոցոտված ու այրված, մենք—ես և պրօֆէսոր պ. Գ. Խալաթեանը—*1902 *թւականին, վաղ առաւօտեան, կառք ենք նստում Վաղարշապատ գիւղում։ Դաշտի ծանր, այրող փոշին մլլում է*

անիւների տակից, օդի մէջ շարժվող մասնիկ չը կայ։ Մի օր էլ է բացվել, այրվելու մի երկար օր էլ։ Գնում ենք միշտ երեսներս դէպի հիւսիս։ Իսկ հիւսիսի ամենաբարձր կէտից, կապոյտ ու ժպտուն երկնքի միջից, մեզ նայում է գեղեցիկ Արագածը։ Այնտեղ կը գտնենք զովութիւն, կանաչներ։

Դաշտը դանդաղ կերպով բաց է թողնում մեզ իր այրող գրկից։ Երևացին աղքատ, չոր, վհատեցուցիչ բլուրներ։ Ամեն ինչ կրակված վերջացած է. ուր չը կայ ջրի մի շիթ, այնտեղ մէկ է բոյսի, հողի, քարի վիճակը—այրվել։

Մեր ճանապարհը նոր է շինված, խճուղի է. և ձիաների ու մեր յարմարութեան համար նա ոլորվում է բլուրների լանջերով, երկար շրջաններ է տալիս։ Նոր ժամանակի պահանջը—երկար լինի, հանգիստ լինի։ Այսպէս չէր հին դարերում, այն ժամանակ յարմարութեան մասին չէին մտածում, այլ կարճութեան։ Ահա և այդ հին ժամանակների ճանապարհը. նա նեղ է, ծուռ ու մուռ, կտրում-անցնում է ուղիղ ու համարձակ, մեծ շրջաններ տալու, յարմար դիրքեր բռնելու բան չունի, կամ սողում է դէպի բարձր, կամ գլխիվայր ցած է վազում։

Կառքից նայում եմ այդ հին կածանին և ինձ թւում է թէ տեսնում եմ նոյն այն

ուղին, որով 1463 տարի առաջ Վահան Ամատունին տանում էր Թաղման մեծ հանդէսը։ Սխալվո՞ւմ էի արդեօք.—ո՞վ կարող է ասել։ Դարերը անխնայ քանդել են մեր երկիրը,—այս ճիշտ է. բայց և ինչպէս լաւ գիտէին շատ բան անշարժ ու անխախտ պահել։ Միշտ շարժուն, անհանգիստ, որոնող մարդու վրա անգամ այնքա՜ն շատ բան է մընացել հին ու անփոփոխ, մի՞թէ անհնար է որ միայն մի հատ ճանապարհ այս լերկ բլուրների լանջերին։

Ես չը գիտեմ, ես երևակայում եմ։ Ամեն մի մեծութիւն բնութեան և մարդկային կեանքի մէջ իրաւունք ունի անփոփոխ միալու ոչ թէ երէկ ու այսօր, այլ յաւիտեան. եղե՞լ է որ և է փոփոխութիւն այն հայեացքի մէջ, որ դարերի սկզբից Մասիսն ու Արագածը բևեռած ունեն այս ապառաժոտ լանջերի վրա։ Բնութիւնը չէ խօսում որ ասէ. մարդկային անցեալը խորհրդապահ ու լուռ է բնութեան պէս, բայց դու զգում ես նրան, շօշափում ես հոգով։ Եւ ահա ես տեսնում եմ—աչքո՞վ արդեօք—մեծ բազմութիւնը, որ տանում էր դագաղը ձեռքից ձեռք, ուսից ուս տալով։ Այստեղ, այս ձորակում, երևի, հանգիստ առան յուղարկաւորողները, —առջևի լանջը շատ է ցից ու դիք։ Այստեղ, երևի, մարդիկ իրար անցան, օգնու-

թեան հասան իրար, որպէս գի դագաղը զգոյշ տանեն, ցած չը գլորեն։ Այս սապատող լանջը ծածկված էր մարդկանցով, ո- րոնք այստեղ ցրիւ ընկած էին գնում,—այսպէս է ասում, չը գիտեմ ինչու, տեղի դիրքը։ Այն բլուրների գլխից մարդիկ էին նայում հանդէսին և հարց ու փորձ էին անում թէ ով է այսպիսի պատւով թաղվում։ Իմանում էին և զարմանում։

Ու հարիւր ու մի այսպիսի մանրմունր տեսարաններ։ Թւում էր թէ տեսնում եմ խունկի ծուխը, լսում եմ սաղմոսների ձայնը. ահա նա մարեց այն ձորում, ահա նորից հնչեց, դուրս գալով այն մի բարձրութեան գլուխը։

Ամբողջ ճանապարհը ես այդ հանդէսի հետ եմ։ Վերին աստիճանի ախորժելի մի զգացմունք է այն, երբ սկսում ես ազատ շունչ քաշել, երբ օդի մեղմութիւնը աշխոյժ է տարածում թուլացած մարմնիդ մէջ։ Այս յանկարծակի, սիրուն փոփոխութիւնը, այս նոր աշխարհը, որ դանվում է Վաղարշապատի մոծակներից ու այրվող օդից բարձր, աւելի ուժեղացնում է մտքիդ թռիչքը դէպի հեռու, դէպի այևոր դարերի խորքը։ Ինձ թւում էր թէ ամեն ինչ այնպէս է տեղի ունեցել, ինչպէս ես եմ ինձ ներկայացնում, թէ կարելի է այժմ, առանց դրքերի ու վկայ-

ութիւնների, կագնեցնել կառքը և այստեղ իսկ, արևի տակ, գրել հազարամեայ այդ պատմական եղելութեան մանրամասն, ճիշտ պատկերը։

Ինչո՞ւ է այսպէս։ Ինչո՞ւ թւում է թէ հիմա էլ գնում եմ այն հին, սգաւոր հանդէսի ետևից, ինչո՞ւ երևակայութիւնը այնքան ուժեղ է, որ տասն և չորս դարերի ետևից ստուերներ է հանում՝ նրանց մարմին և արիւն հաղորդելու համար։ Ինչի՞ց է այս եռանդուն, տենդային ջանքը։

Մենք գնում ենք Մեսրոպի գերեզմանը տեսնելու—ահա ինչու։ Անունը հեռուից է ազդել, մենք լցված ենք ուխտաւորի ջերմեռանդ ոգևորութեամբ։ Օշականը դեռ չէ երևում, ես երբէք նրան չեմ տեսել, բայց գիտեմ, հաւատում եմ որ այս բլուրների ետևում պիտի տեսնեմ մեր դժբախտ, արիւնոտ պատմութեան ամենամեծ հրաշքը, պիտի հաղորդակից դառնամ այն հիացմունքին, որ տասն և հինգ դարերի ընթացքում հայ աշխարհի բոլոր կողմերից հաւաքվել է այս համեստ, սովորական հայ գիւղում։ Իբրև հայ գրագէտ, պիտի խոնարհվեմ իմ մեծ պապի առջև, որ ինձ, ինչպէս և ինձ նման հազարներին, գծեր է տուել սրտի և հոգու իղձերը, թախիծն ու զգացմունքները պատկերացնելու, իսկ իբրև որդի մի ազգի, որին դարե-

րի սև փոթորիկների մէջ պահողը եղել է գիրն ու լեզուն, պիտի իմ անհուն, կրակոտ երախտագիտութիւնը թափեմ այդ գերեզմանի վրա…

Ահա և հռչակաւոր, անմահացած գիւղը։ Մենք բարձրացել ենք մեծ բլուրի գլուխը։ Որքա՜ն մեծ ու խոր ձոր է իր համար փորել Քասաղ գետը։ Այգիների մի երկար տեսարան է բացվում.—գեղեցի՜կ է Օշականը։ Հինաւուրց կամուրջի տակով քարէքար ընկած փաղում են Քասաղի պարզ ու վճիտ ջրերը և իրանց մեղմ վշշոցով ողջունում են նորեկին, աւելի խտացնելով այն յափշտակութիւնը, որ գրկում է նրան այս անուանի վայրերում։

Կամուրջի միւս կողմը գիւղն է, որ վերևից գալիս է սեղմվում ձորի բաշին, կախ ընկնում նրա լանջերով։ Օշականը գեղեցիկ շրջականեր ունի, նա հարուստ է իր այգիներով, բայց և այդպէս, մեր այժմեան սովորական գիւղերից մէկն է իր փոքրիկ տներով, աղբոտ փողոցներով։

Սակայն ուխտաւոր այցելուի համար ժամանակակից գիւղական հարցերը երկրորդական են։ Ամենից առաջ նրան հիացնում է այս հասարակ գիւղի երկարակեցութիւնը։ Ո՞ր ժամանակներից է նա մաքուր ու հնչիւն պահել իր անունը։ Հռչակված, համաշխար-

հային մայրաքաղաքներ են եղել, որոնք այժմ մոխրի կույտեր են ներկայացնում. իսկ այս խղճուկ գիւղը հասստատ ու անսասան է մնացել իր ձորի ծայրին, ապրել է և ապրում է։

Անցնելով Օշական, ուր կարելի է ուղղել քայլերը, եթէ ոչ դէպի եկեղեցին։ Մեր ժամանակների մի շինութիւն է դա բարձր զանգակատնով, բաւական մաքուր ու վայելուչ տեսքով։ Ներսից էլ լաւ տպաւորութիւն է թողնում. գիւղական եկեղեցուց քիչ—այն, քիչ—աւել մի բանի է նման։ Աջ կողմի խորանում մի դուռ է բացվում, մի քանի աստիճան ցած էք գնում և ձեր առջև, քարէ կամարների յաւիտենական ցուրտ լռութեան ու մթութեան մէջ, սպիտակին է տալիս մի ցածրիկ, տափակ ու անզարդ քար։ Ահա ս. Մեսրոպը…

Այստեղ թող լռեն ուխտաւորի զգացմունքները։ Սիրտն էլ այս անձուկ ու մութ խորշի նման է. շատ բան է պարունակվում նրա մէջ, բայց դրսի աշխարհը նրան չէ տեսնում և լսել չէ կարող։ Այն միայն հնարաւոր է այստեղ ասել, որ գերեզմանը հարկադրում է խորին, անսահման շնորհակալութեամբ լցվել դէպի այս խաւարն ու խոնաւութիւնը, այս քարերն ու կամարները, դարաւոր հաւատարիմ աւանդապահները։ Այցելուն գիտէ

որ այս գերեզմանի մէջ ամփոփված է մի մեծագործութիւն, որ արժանի էր մեծ ու փառահեղ յուշարձանների։ Ամեն ազգ իր երախտագիտութեան ամենաաքանչելի ցոյցերն է թափում իր նուիրական գերեզմանների վրա, լոյս, օդ, լայնարձակ հրապարակներ է յատկացնում նրանց, որպէս զի տպաւորութիւնը ազդու լինի, վեհ։ Ո՞ւր է Մեսրոպի յաւիտենական օթեանի փառահեղութիւնը, ո՞ւր է արուեստը, որ նշանակէր, շեշտէր այս նուիրական վայրը։

Ոչինչ չը կայ, և այցելուն առաջին վայրկեան մի տեսակ վիրաւորանք է զգում։

Բայց դա վայրկենական զգացմունք է, և անցնում է շուտով, երբ հասկանում ես հայրենի բազմադարեան իրականութիւնը։ Կարո՞ղ էր փառահեղութիւնը կանգուն մնալ, դիմանալ մեր երկրում։ Մի երկիր է դա, ուր սարերն անգամ մաշվել են յարձակվողների անխնայ ձիանների սմբակների տակ. ինչ կը դառնային կոթողներն ու մահարձանները, եթէ նրանք դրված էլ լինէին Մեսրոպի դամբարանի վրա…

Արուեստը հիացնում է կրթված, լուսաւոր սրտերը, բայց կատաղութիւն է ներշնչում վայրենիներին, որոնց հասկանալի է միայն քանդելու, կողոպտելու պաշտամունքը։ Երկաթն ու որձաքարը ոչնչանում են

վայրենիների մուրճի տակ և ոչնչացնում են այն դէպքերն ու անունները, որոնց յաւէժացնելու համար էին դրված։ Ֆիդիասի հանճարն անգամ չը կարողացաւ թուլացնել քանդողների թևերը։ Իսկ այստեղ, Արագածի փէշին կպած այս փոքրիկ գիւղի փոքրիկ եկեղեցին իր պատերի մի խորշում պահել-պահպանել է, աւերման դարերի անվերջ շարքերով անց է կացրել ու մեզ հասցրել մի անշուք քար, որ այսօր մեր ամենանուիրական պարծանքն է *)։

Ոչ թէ հրապարակներում պաշտել այդ պարծանքը, այլ լռիկ խաղաղութեան մէջ փոքրիկ, դողդոջուն ճրագը ձեռքին մտնել ստորերկրեայ փոսը, ուր խոնաւութիւնն ու մութը անյայտութիւն և մոռացութիւն են ապահովում, և այդտեղ տեսնել ու զգալ, մտածել ու յուզվել—այս հնարաւորութիւնն է տուած եղել հային...

Ո՞վ էր, որ սկզբից և եթ հասկացաւ թէ այս կերպով կարելի է յաւէժացնել մեծ մարդուն, նրա աճիւնը յանձնել դարերին իբրև հաստատ աւանդ։

Եկեղեցին մտնելիս, դուք ուշադրութիւն

---

*) Ս. Մեսրոպի գերեզմանաքարը շինված է Գէորգ IV-ի հրամանով 1884 թւականին և ունի մի խըղճուկ արձանագրութիւն, որ աւելի նորոգողին է հռչակում։ Դա մի Անդրէաս արքեպիսկոպոս է, Կ. Պոլսեցի։

էք դարձրել բակի ծայրում բարձրացած քարէ գեղեցիկ, քառակուսի մի արձանի վրա։ Այժմ, ս. Մեսրոպի գերեզմանից հեռանալիս, այցելեցէք այդ արձանը։ Նա հին չէ, շինված է մեր օրերում և գիր ու յիշատակ չունի։ Բայց յայտնի է որ նրան կանգնեցրել են ի յիշատակ Վահան Ամատունու։ Արդէն գիտէք որ նա Մեսրոպի աշակերտներից էր, հայոց աշխարհի հազարապետ էր կարգված և հօր պէս էր կառավարում երկիրը։ Բայց Օշականի իշխանը դրանից էլ աւել աչքի ընկնող գործեր ունի։ Հինգերորդ դարի ապստամբական շարժման գլխաւորներից մէկն էր նա, Վարդանի, Ղևոնդ երէցի կողմնակիցը և զինակիցը։ Աւարայրի պատերազմում Ամատունեաց գնդի հրամանատարն էր. պատերազմում անվնաս մնաց, բայց պատերազմից յետոյ միւս նախարարների հետ Պարսկաստան քշվեց, ուր տարիներով կրեց գերութեան կապանքները։

Այս նահատակութիւններն էլ բաւական են, որ մեր ոսկեդարի այդ հերոսն ունենայ այսպիսի մահարձան։ Սակայն Վահան իշխանի գլխաւոր երախտիքը այդ չէ։ Նա թաղեց Մեսրոպին իր Օշականում, բայց մեծ ուսուցչի համար այդքանը քիչ համարեց և նրա գերեզմանի վրա եկեղեցի էլ կանգնեցրեց, որի ցածրիկ, ստորերկրեայ խորշում

մօտ 1500 տարի է, ինչ պահվում է այդ գերեզմանը։ Եւ նրա մահարձանը Օշականի եկեղեցու բակում—դեղեցիկ միտք է։ Ուսուցիչն ու աշակերտը միասին. և աշակերտը այժմ էլ, հազարաւոր տարիներից յետոյ, իր առանձնութեան անկիւնից կարծես նոյն հիացմունքով է նայում այն պատերին, որոնց ետևում ծածկված է ուսուցիչը…

---

Նստենք, ընթերցող, Օշականի եկեղեցու բակում։ Վաղարշապատի այրվող դաշտից յետոյ ո՜րքան հաճելի է հանգստանալ այս՝ մեղմ օրօրվող՝ ծառերի զով շուքում։ Սարի շունչը հանգարտ շոյում է մեր ճակատը, եկեղեցու պատերը քաղցր խորհրդաւորութիւն են հաղորդում ամառնային առաւօտին։ Դարերն են շշնջում, լսենք նրանց։ Ես դիտմամբ բերի ձեզ այստեղ։ Մեսրոպի պատմութիւնը մի այլ տեղ անել չուզեցի։ Լա՛ւ է խօսել վկաների ներկայութեամբ. ահա՛ Վահան Ամատունին, ահա և ինքը, մեծ մարդը։

Ո՞վ է նա, այդ մարդը։ Դուք լաւ գիտէք։ Գիտէք որ հինգերորդ դարում մի հայ վարդապետ, Մեսրոպ կամ Մաշտոց անունով, հայերէն տառեր գտաւ և դրա համար էլ մեր նշանաւոր մարդկանցից մէկն է համարվում։ Ես միայն այդ չը պիտի կրկնեմ Ձեզ։ Զոր

ու ցամաք կենսագրութիւնը շատ բան չի տա՛ ձեզ. Նա 'աղքատ է, չափազանց համառօտ։ Նա այդպէս էլ հասել է մեր ձեռքը և այդ թերակատար դրութեան մէջ յայտնի է հինգերորդ դարից։ Կենսագրական նիւթի այդ պակասութիւնը մենք, այսօրվայ մարդիկս, կարող ենք միայն մի բանով լրացնել, այն է՝ պարզելով Մեսրոպի նշանակութիւնը մեր ամբողջ անցեալի նկատմամբ։ Այս մենք կարողութիւն ունենք անելու, որովհետև պատմութիւն կայ, փաստեր կան, որոնք չոր ու ցամաք, պատահական եղելութիւններ չեն ներկայացնում, այլ և մի ընդհանուր միտք, մի խորհուրդ, որի մեծութիւնը ապշեցնող է։

Հէնց այս պատճառով էլ բերել եմ ձեզ այստեղ։ Նախ երկու խօսք այն աշխարհի մասին, ուր այս րօպէին գտնվում ենք մենք։

Այստեղ, ինչպէս գիտէք, Արագածի ոտներն են։ Մեր նախնիքները այսպէս էլ անուանում էին այս կողմերը—Արագածոտն։ Մեծ ու ընդարձակ մի գաւառ, որ բոլոր հայկական գաւառների մէջ ամենից շատ հռչակված է։ Հռչակը նրան հաղորդել են ոչ թէ Արագածի գեղեցիկ գիրքերը, այլ այն, որ սա մեր պատմութեան օրրանն է։ Աչք ածեցէք ձեր շուրջը։ Առաջներիս փռված է Արարատեան դաշտը կամ Արաքսի հովիտը։ Նա ձգվում է, հարթ ու լայն, արևելքից դէպի

արևմուտք, իսկ հարաւից և հիւսիսից եզերված է լեռնային շղթաներով։ Հարաւային շղթայի առջև տիրաբար կանգնած է Մասիսը առանձնակի, իսկ հիւսիսային շղթայի վրա բազմած է Արագածը։ Այդ երկու խրոխտ հսկաները իրարից բաժանող տարածութեան վրա, մեր պատմութեան վաղ արշալոյսին, հանդէս եկան հայերը։ Մովսէս Խորենացին, պատմելով Արմենակի գաղթի աւանդութիւնը, ասում է. «Եւ արևելեան դաշտը կարծես երեսն ի վեր պառկած, տարածում է երկայնութիւնը դէպի արեգակի կողմը. սարերի ստորոտից էլ շատ ականակիտ աղբիւրներ բղխելով և իրանց սահմանների մօտ հաւաքվելով՝ գետեր են դառնում և սարերի ստորոտներով ու դաշտի ծայրերով հեզաբար բոլորում են ինչպէս մի քանի պատանիները օրիորդների շուրջը։ Բայց մինչև արեգակը բարձրացած հարաւային սարը (Մասիսը), սպիտակ գագաթով, երկրից ուղղաձիգ բուսած, փոքր առ փոքր սրածայր է դառնում և ճիշտ որ ծեր սար է երևում երիտասարդ սարերի մէջ. երեք օր գնալով, ինչպէս մերոնցից մէկն ասաց, արագաքայլ մարդը կը շրջապատէ նրան։ Արմենակը, այս խոր դաշտի մէջ բնակվելով, շինցրեց դաշտի հիւսիսային կողմի մի մասը և սարի նոյն կողմի ստորոտը, սարը իր անունով Արագած կո-

չեց, իսկ կալուածները—Արագածոտն»:

Ահա ինչ գեղեցիկ և վեհ տպաւորութիւն էին թողել այս կողմերը առաջին հայերի վրա: Այստեղ էլ դրվեց մեր հիմքը, այստեղ մենք զարգացանք, մտանք պատմական ազգերի շարքը: Արաքսի հովիտը մի լայն ու մեծ ճանապարհ էր Արևելքի և Արևմուտքի մէջ. այստեղ իրար հանդիպում էին, իրար հետ բաղխվում էին ամեն տեսակ ազգեր. պարսիկ, ակիւթացի, ասորեստանցի, հռոմայեցի, բիւզանդացի, արաբ, սելջուկ, մօնգօլ, թիւրք, դաղստանցի: Այստեղ մենք գործում էինք, տանջվում էինք, ընկնում, նորից վերկենում: Մեր պատմութիւնը այս հովտում կազմվեց:

Օշականի բարձունքների վրա մի դործ կատարենք, ընթերցող: Կուտենք հին-հին դարերը Արարատեան դաշտում, թողնենք որ նրանք դնան այնպէս, ինչպէս գնացել են իրանց ժամանակին, Մասիսի ու Արագածի մէջ տեղով, իսկ մենք նայենք այն կոյտերին: Մեծ գործը պէտք է լուսաբանել շատ կողմերից, դնել լայն հօրիզօնների մէջ: Ս. Մեսրոպը միայն իր ժամանակը չը յեղափոխեց, այլ իր ժամանակի հայութեան ամբողջ անցեալը, ամբողջ ներկան ու ապագան: Մեր պատմութիւնը ուրիշ նոյնանման մեծագործութիւն չունի, չէ ճանաչում: Սխալ

կը լինի այդ մեծագործութիւնը միայն իր քամանակի մէջ տեսնել։ Մենք պիտի տեսնենք երեք բան. ինչ կար, ինչ եղաւ և ինչ հետևանքներ ծնվեցին։

Ս. Մեսրոպի ծառերի տակ հանգստութեան շատ ժամեր ունենք։ Արևը դեռ չէ բարձրացել, յուլիսեան առաւօտը մեղմ ու կազդուրիչ է։ Մեր ուղևորութիւնը դէպի հին դարերը լաւ յարմարվում է այս առաւօտին...

---

# Ա.

Արեւելքի քաղաքակրթութիւնը։—Միջագետք։—Ուրարտեան երկիրներ։—Հայերի գալուստը։—Նոր հայրենիքի քաղաքական կազմակերպութիւնը։—Շր-ջապատը.—տոհմական բռնապետութիւն։—Ասորեստանը՝ նախատիպ։—Գազանային պաշտամունք։—Արեւելեան քաղաքակրթութեան յատկանիշները։—Բօկլի կարծիքը։—Ասորեստանի անկումը և Նաւում մարգարէ։
Արեւելքի հարկադրութիւնը։—Արեւմուտք։—Հելլէնականութիւն։—Անհատ, ազատութիւն, հայրենիք։—Արեւելեան հարցի սկիզբը—ընդհարում Եւրոպայի և Ասիայի մէջ։

---

Հին լատինական ասացուածք կայ թէ լոյսը արեւելքից է գալիս։ Եթէ բանը վերաբերվէր արեգակի լոյսին, չարժէր էլ այդ մասին ասացուածք կազմել և կրկնել նրան իբրև ճշմարտութիւն, որովհետև ում չէ յայտնի որ արեւը արեւելքից է ծագում։ Բայց միայն այս հանրածանօթ իրողութիւնը չէ ծածկված այդ խօսքի մէջ։ Կայ և աւելի խոր իմաստութիւն.—աշխարհը մտաւոր լոյսն էլ արեւելքից ստացաւ։

Նախապատմական աղջամուղջի, քաոսական խաւարի մէջ Արեւելքն էր այն տեղը, ուր առաջին անգամ վառվեցին մարդկային քաղաքակրթութեան ճրագները։ Այդ լոյսերի հայրենիք հանդիսացան հարաւային մի քանի մեծ գետերի հովիտներ, ուր նախնական մարդը աւելի մեծ յարմարութիւններ գտաւ բնութեան դէմ կռւելու և իր կացութիւնը բարւոքելու համար։

Թողնելով չինական, հնդկական, եգիպտական գետահովիտները, կասենք, որ ամենահին քաղաքակրթութեան օրրաններից մէկը շատ մօտ էր այն երկրին, որ հայերի պատմական հայրենիքը դարձաւ։ Հայաստանի լեռներից բղխող երկու մեծ գետեր, Եփրատն ու Տիգրիսը, իրանց ստորին ընթացքում, Միջագետքից մինչև Պարսից Ծոցը, տասնեակ դարեր պահում էին իրանց ափերի վրա մարդկային խելքի և առաջադէմ ոգու զարմանալի գործերը։ Մինչդեռ այժմեան Եւրոպան դեռ բոլորովին վայրենի էր և նրա բնակիչները ապրում էին անտառների մէջ, գազանների նման, Տիգրիս-Եփրատեան հովտում ծաղկած էին ահագին քաղաքներ, երկրագործութիւնը, արուեստները, գիտութիւնը այնքան առաջ էին գնացել, որ մարդը նոյն իսկ փարթամութեան վերին աստիճաններն էր բարձրացել։ Նոյն այդ հովտում էլ կազ-

մակերպվեց առաջին ասիական մեծ պետությունը, Ասորեստան։

Միջագետքը—դա համաշխարհային քաղաքակրթական, խոշոր օրրան էր։ Բայց կային և մասնաւոր, տեղական շրջանակներ, ուր լռելեայն, առանց ամբողջ աշխարհի ուշադրութեան արժանանալու, զարգանում էին ազգութիւններ։ Այսպիսի տեղերից մէկն էր մեր Արաքսի հովիտը։ Անյայտ հին ժամանակներից այստեղ ապրում էին ուրարտեան կամ նախահայեր կոչված ցեղերը։ Նրանք պետութիւն կազմեցին, ուժեղացան, կուլտուրա զարգացրին, տարածվեցին մինչև Վանի լճի ափերը և ուրիշ տեղեր։ Քրիստոսից վեց դար առաջ այդ ցեղերի բնակութեան տեղերը, Արաքսի և Վանի լճի աւազանները, ենթարկվեցին արևելքից եկած բարբարոսների արշաւանքին։ Երկիրը քարուքանդ եղաւ և նախահայերի թագաւորութիւնը ոչնչացաւ. բազմաթիւ ազգաբնակութեան մի մասը միայն ազատվեց կոտորածից, այն էլ հեռացաւ ուրիշ տեղեր, թողնելով երկրի մէջ փոքրիկ, թոյլ մնացորդներ։

Այդ սարսափելի փոթորիկից յետոյ բաւական ժամանակ անցած՝ Ուրարտեան երկիրներում երևան է գալիս մի նոր ազգ— հայերը։ Սրանք, ինչպէս ենթադրում են այժմեան դիտնականները, արևմուտքից եկան,

Փռիւգիայից։ Ութներորդ դարի վերջերում դուրս գալով այդ երկրից, հայերը կամաց-կամաց առաջացան, գրաւեցին հայկական լեռնաշխարհը, աւելի խաղաղ միջոցներով, քան զէնքի ոյժով ձուլեցին իրանց մէջ տեղացի բնիկ ազգերը։

Ի՞նչ ազգ էին այդ նորեկները։ Հաստատ տեղեկութիւններ չը կան, ազգային աւանդութիւններն էլ կցկտուր են, վայրիվերոյ։ Յայտնի է այն, որ այդ ազգը հնդկաեւրօպական ցեղին էր պատկանում, ուրարտացիների հետ ոչինչ ազգակցութիւն չունէր։ Իբրև քաղաքական կազմակերպութիւն, նա աչքի ընկնող ոյժ չէր ներկայացնում, իսկ իբրև կուլտուրական մարմին՝ չունէր խիստ որոշվող, բարձր յատկութիւններ պարունակող ինքնուրոյնութիւն։ Դա հովուական-երկրագործ մի ժողովուրդ էր, որ բերում էր իր հետ արիական ցեղերին յատուկ պաշտամունքներ, հասարակական—իրաւական, ընտանեկան կազմակերպութիւն։

Պատմական յիշատակարանները առաջին անգամ Հայաստանի անունը տալիս են Քրիստոսից առաջ հինգերորդ դարում։ Այդ ժամանակ նրանց երկիրը Պարսկաստանի դէմ ապստամբված է և նորից նուաճվում է Դարեհի ձեռքով։ Թւում է թէ այդ միջոցին հայերը դեռ Հայաստանի արևմտեան մաս-

րում էին կենտրոնացած։ Դրանից առաջ, արեւմուտքից դէպի արեւելք շարժվելիս, հայերը ընկել էին մարաց պետութեան լուծի տակ։ Նախնական այդ շրջաններում էլ հայերին տեսաւ եւ նկարագրեց յոյն զօրավար եւ մատենագիր Քսենոփոնը։ Որքան կարելի է դատել այդ նկարագրութիւնից, հայերը բաւական ցած էին գտնվում քաղաքակրթութեան աստիճանների վրա եւ ունէին այդ դրութեան համապատասխանող հասարակական կազմակերպութիւն։ Քսենոփոնը չէ ասում որ հայերը այդ ժամանակ ունէին թագաւորութիւն. հայոց երկիրը կառավարում էր պարսկական սատրապը, եւ բացի նրանից՝ միակ իշխանութիւնը, որին հանդիպում ենք այդ նկարագրութեան մէջ, գիւղական տանուտէրն է։ Բայց այս չէ նշանակում որ Հայաստանը չունէր թագաւորութիւն. սատրապը հայոց թագաւորն էր, ինչպէս ենթադրում են գիտնականները։ Նոյն Քսենոփոնը իր մի ուրիշ աշխատութեան մէջ մանրամասն նկարագրել է հայոց Տիգրան թագաւորին եւ նրա ընտանիքը։ Բայց սեփական թագաւոր ունենալը չէր խանգարում որ երկիրը հպատակ լինի մի այլ պետութեան։ Այս երեւոյթը շատ սովորական է հին ժամանակներում, մանաւանդ Արեւմտեան Ասիայում։

Եւ այսպէս, սկզբից եւ եթ հայ ազգը,

գտնելով եղած տեղեկութիւններից, պատմութեան բեմի վրա երեւան է գալիս իբրեւ ուրիշների հպատակ։ Անկասկած, նա ոչ իր ցեղական յատկութիւններով, ոչ իր թւով չէր էլ կարող անկախ դեր խաղալ այնպիսի մի ժամանակ, երբ Առաջաւոր Ասիայում կազմվում էին վիթխարի, աշխարհակալ միապետութիւններ։ Կարեւոր է, սակայն, ի նկատի առնել այն կազմակերպութիւնը, որ ստացաւ Հայաստանը, երբ վերջացել էր հայերի առաջխաղացութիւնը եւ տեղի վրա գտնվող բնիկ ազգաբնակութիւնը վերջնականապէս խառնվեց նրանց հետ։ Ուրարտական կամ նախահայերի երկրում գոյութիւն ունէին բազմաթիւ մանր, անկախ իշխանութիւններ, որոնք սեպաձեւ արձանագրութիւնների մէջ կոչվում են թագաւորութիւններ եւ որոնք հարկաւոր դէպքերում գիտէին միանալ՝ արտաքին թշնամուն դիմադրելու համար։ Հայերը, տիրելով նրանց երկիրներին, չը կարողացան վերացնել տեղական անկախութիւնների այդ սիստեմը, այլ հարկադրված եղան իրանց պետական կազմակերպութիւնը ենթարկել նրան։ Այնպէս որ Հայաստանը իր քաղաքական գոյութիւնը վերջնականապէս հաստատում է մանր անկախութիւնների մի խիտ ցանցի ձեւով։ Դրանք մեր նախարարութիւններն են, որոնք, ինչպէս յայտ-

նի է, երկրի մշտական թուլութեան ամենագլխաւոր պատճառներն էին։ Այդպիսի կազմակերպութիւնը չէր թոյլ տալիս որ երկիրը կենտրոնացնէ իր ոյժերը, ընդհանուր, հաւաքական ջանքերով իր վիճակը տնօրինէ և հանդէս բերէ իր ընդունակութիւնների միահամուռ պատկերը։ Իբրև ներսից թոյլ մի մարմին, նա միշտ ենթարկված էր մեծ պետութիւնների խիստ ազդեցութեան։

Ազդեցութեան հարցը չափազանց կարևոր է իւրաքանչիւր փոքր, ուրիշներին հպատակված ազգութեան համար։ Դա նրա քաղաքական և հասարակական դաստիարակութեան հարցն է, դա այն միջավայրն է, ուր տիրող կարգերն ու օրէնքները մշակում են յայտնի դրութիւններ, աշխարհայեցողութիւններ, պաշտամունքներ։ Ուստի մենք պիտի ծանօթանանք այն միջավայրի հետ, որին ենթարկվեցին հայերը իրանց նոր հայրենիքում, ուրիշ խօսքերով՝ պիտի տեսնենք թէ ինչ էր պարսից միապետութիւնը, որի մի մասն էր կազմում Հայաստանը։ Ի՞նչ էր առհասարակ ասիական միապետութիւնը։

Ինչպէս ասացինք, ասիական առաջին մեծ պետութիւնը կազմակերպվեց Միջագետքում։ Դա Ասորեստանն էր, որ ներկայացնում էր Տիգրիս-Եփրատեան հովտի քաղաքակրթութիւնը։

Մի պետութիւն էր դա, որի հազարամեայ տարեգրութիւնները խօսում են անվերջ նուաճումների, պատերազմների մասին։ Պատերազմը այն տարրն էր, առանց որի չէր կարող ապրել Ասորեստանը։ Դա զինուորական մի բանակ էր, որ չէր կարող հանգիստ նստել իր տեղը, որ տիրապետում էր անթիւ ազգերի վրա։ Ասորեստանի աստուածը արիւնի, գազանութիւնների աստուած էր.— նա հրամայում էր լինել անխնայ և անգութ, քանդել, աւերել. և ասորեստանական թագաւորները պարծանքով յիշում են որ իրանք ամենայն ճշտութեամբ կատարում էին այդ ահաւոր պատուէրները։ «Ես կոտորեցի, ես չը խնայեցի, ես քարուքանդ արի այնպէս, որ մարդու և անասունի ձայն չէր լսվում, ես մարդկանց ցից հանեցի, ես ապստամբների կաշին քերթել տուի ողջ-ողջ և այդ կաշով ծածկեցի բերդի պատերը, ես բռնաբարեցի աղջիկներին և տղաներին»։ Այս և այսպիսի գործերի անվերջ կրկնութիւններ են պարունակում իրանց մէջ ասորեստանական արձանագրութիւնները, սարսափ ու զզուանք ազդելով ընթերցողին։

Զինուորական արիւնարբու բռնապետութիւնը իր աջողութիւնների համար պիտի շարունակ զարգացնէր գազանական ոգին։ Այդ բռնապետութեան կենտրօնը կազ-

մում էր մի երկրաւոր աստուած, որի առջև սողում էր ամեն ինչ։ Եւ դա թագաւորն էր։ Ամբողջ պետութիւնը, մեծից սկսած մինչև փոքրը, թագաւորի ստրուկն էր։ Բռնակալը ամեն մի կեանքի տէրն էր և նրա քմահաճոյքից, նրա կամայականութիւնից էր կախված անհատների և ամբողջ հասարակութիւնների ապրելը կամ մեռնելը։ Նրա իւրաքանչիւր խօսքը, ակնարկը երկնային պատգամ էր այս աշխարհի վրա, ամեն ինչ նրան էր ծառայում, նրանով էր երկիրը կենդանութիւն ստանում կամ ընկնում։ Ինչպէս յատուկ է զինուորական միապետութեան, Ասորեստանը բարգաւաճում էր միայն այն ժամանակ, երբ նրա թագաւորը եռանդոտ, ուժեղ մարդ էր լինում. արշաւանքները, պատերազմական աւարը, հարկերը առատ էին լինում։ Իսկ երբ թագաւորը թոյլ ու անընդունակ էր լինում, նա միայն վայելում էր բռնապետի անսահման երջանկութիւնը, և պետութիւնը, չը նայած իր գրաւած դիրքին, թուլանում էր, փառքից զրկվում։

Ասորեստանեան արիւնածարաւ պաշտամունքների մէջ զարգանում էր և կուլտուրան, որ ամբողջապէս փոխ առնված էր Բաբիլօնից։ Թագաւորները իրանց քմահաճութիւնների մէջ ունէին և այն, որ հովանաւորում էին երկրագործութիւնն ու ա-

րուեստները, հասարակական շինութիւններ էին կառուցանում, ջրանցքներ էին անցկացնում։ Գիտութիւնը, գրականութիւնն էլ առաջդիմութեան քայլեր էին անում։ Բայց այդ ամբողջ կուլտուրական գործունէութեան վրա էլ դրոշմված էր զինուորական-բռնապետական պաշտամունքը։ Քանդակագործը թագաւորի յաղթութիւններն էր պատկերացնում քարերի վրա, ճարտարապետը թագաւորական պալատներ էր կառուցանում, տալով նրանց բերդի կերպարանք և ամրութիւն։ Աստղաբաշխութիւնը բաւական ծաղկած էր, բայց նրա հիմքը դիտական ճշմարտութիւններ որոնելը չէր, այլ գործնական կեանքին ծառայելը. պէտք էր գուշակել թէ ինչ աջողութիւն կունենայ թագաւորը այս կամ այն արշաւանքի մէջ, պէտք էր գտնել մարդու ճակատագիրը, իմանալ թէ ինչ բախտ է որոշված նրա համար և այլն։ Քուրմերը, ժամանակի գիտնականները, այս տեսակ հարցերով էին զբաղված։

Կար, այո, քաղաքակրթութիւն, և նրա փառաւոր մնացորդները այժմ էլ հիացմունք են պատճառում դիտնականներին և սիրողներին։ Բայց ի՞նչ էր այդ քաղաքակրթութեան ոգին, ի՞նչ էր նա տալիս ամբողջ ժողովրդին, այն անհագին բազմութեան, որ աշխատում էր պետութեան փառքի համար։

Բօկլը իր «Քաղաքակրթութեան Պատմութիւն» նշանաւոր գրքի մէջ, քննութեան ենթարկելով Ասիայի և Աֆրիկայի, առհասարակ տաք երկիրների հնագոյն քաղաքակրթութիւնը, այսպէս է բնորոշում նրան. «Ժողովուրդը համարվում էր ոչինչ, նա ոչինչ ձայն չունէր պետական կառավարութեան մէջ, ոչ մի վերահսկողութիւն այն հարստութեան վրա, որ իր աշխատասիրութեան արդիւնքն էր։ Նրա միակ գործն էր աշխատել, միակ պարտաւորութիւնը—հնազանդվել։ Ահա ուր է սկիզբը այն տրամադրութեան դէպի հանդարտ, ստրկական հնազանդութիւնը, որ, ինչպէս մենք գիտենք պատմութիւնից, այդպիսի ազգերի յատկանիշն էր միշտ։ Այդ հարուստ և պտղատու երկիրներում շատ են եղել փոփոխութիւններ, բայց ամենքը սկսվել են վերևից և ոչ ներքևից։ Ռամկավարական տարր բոլորովին չը կար դրանց մէջ։ Եղել են բազմաթիւ պատերազմներ թագաւորների, դինաստիաների մէջ, եղել են յեղափոխութիւններ կառավարութեան մէջ, յեղափոխութիւններ արքունիքում, յեղափոխութիւններ գահի վրա, բայց բոլորովին չեն եղել ժողովրդի մէջ»։

Նոյն իսկ այն վիթխարի շինութիւնները, որոնք այսօր հին աշխարհի պարծանքըն են կազմում, պէտք է համարել ժողո-

վրդի դժբախտութեան վկաներ: Այսպէս, եգիպտական բուրգերը մի ստրուկ, հարստահարվող-ժողովրդի տառապանքներն են պատմում: «Որպէս զի կարելի լինի շինել այդպիսի հրէշաւոր չափերով և մի և նոյն ժամանակ այդքան անօգուտ բաներ, պէտք է որ կառավարիչները բռնակալներ լինէին, իսկ ժողովուրդը—ստրուկ,—ասում է Բօկլը: Ժողովրդի ամբոխը քիչ էր զանազանվում բանող անասուններից, նրան ընդունակ չէին համարում մի որ և բանի, բացի միայն անընդհատ, անվարձ աշխատանքից: Ամբողջ ժողովրդի բանուորական ույժերը փոքրամասնութեան անպայման տրամադրութեան տակ էին գտնվում և այսպիսով ընդունակութիւնն ու արուեստը ծառայում էին ի վնաս նրանց, որոնց պիտի օգուտ բերէին»:

Ահա ասիական քաղաքակրթութեան էութիւնը: Նա ամբողջապէս մարդու արտաքին կեանքն էր շօշափում, և շնորհալի քանդակագործը, ընդունակ ճարտարապետը, ինչպէս և առհասարակ ամեն մի մարդ, ստրուկներ էին: Չը կար հասարակական, անհատական զարգացման գաղափար, որևէ հասկացողութիւն ազատութեան մասին: Ամեն տեղ ծանրացած էր լուծը: Օրէնք, իրաւունք, կարգ կարող էր այն միայն լինել, ինչ կամենում էր Թագաւորը:

Դարաւոր նուաճումներով ձեռք բերված երկիրներից կազմվել էր ասորեստանեան ահագին պետութիւնը, բայց այդ երկիրները միութիւն չէին ներկայացնում, ներքին կապերով չէին կապված իրար հետ։ «Իմ լուծը դրի նրանց վրա», ասում է Նինուէի թագաւորը, պատմելով թէ ինչպէս յաղթեց, ինչպէս կոտորեց ու քանդեց այս ինչ երկիրը։ Այդ լուծը ծանր էր, և յաղթվածները ամեն յարմար դէպքում աշխատում էին ազատվել նրանից։ Ապստամբութիւնները ճնշվում էին սոսկալի գազանութիւններով. Ասորեստանը միայն մի միջոց գիտէր իր հպատակներին հնազանդութեան մէջ պահելու համար—սարսափ ազդել։ Բայց զարմանալի է որ սարսափը դեռ այն հին ժամանակներում վատ դաստիարակ էր ժողովրդների համար։ Չէ կարելի առանց յուզմունքի կարդալ այն ապստամբութիւնների պատմութիւնը, որոնք տեղի ունեցան Ուրարտեան երկիրներում ասորեստանցիների դէմ։ Յաղթական տիրապետողը արիւն ու աւերանք տարածեց երկրի մէջ, լեռների սուր ծայրերն անգամ չը կարողացան ազատել յաղթվածներին այն գազանային պատիժներից, որ այնպիսի տաղանդով հնարում էին Նինուէի թագաւորները։ Բայց այդ բոլոր սարսափների մէջ առանձին ցեղեր շարունակում էին կռւել, չը

նայած որ փոքրաթիւ էին, թոյլ էին և յաղթելու ոչ մի յոյս ունենալ չէին կարող։

Այսպէս երկար ու երկար ապրեց Ասորեստանի բռնապետութիւնը, մինչև որ երևան եկաւ մի նոր ուժեղ ազգ, որ իր հարուածը ուղղեց նրա դէմ։ Դա Մարաստանն էր։ Եւ ասորեստանեան ահագին պետութիւնը փլվեց ու քայքայվեց այդ մի հարուածից։ Պատմութիւնն էր պատրաստել այդ վիճակը. Ասորեստանը իր սեփական սիստեմի, իր բռնապետական պաշտամունքի զոհը դարձաւ։ VI դարում մարաց թագաւորը, Բաբիլօնի թագաւորի հետ, պաշարեց Նինուէն։ Հռչակաւոր մայրաքաղաքը, որին հպատակվել էին անթիւ ազգեր, որի մէջ ամբարված էին ազգերի հարստութիւնները՝ իբրև սեփականութիւն աշխարհակալ թագաւորների, ծածկվեց, անյայտացաւ իր աւերակների տակ. մի 50—60 տարի անցած՝ ասորեստանեան մեծ պետութիւնից յիշողութիւն անգամ չը մնաց, և Նինուէի տեղն անգամ յայտնի չէր։

Ի՞նչ տպաւորութիւն թողեց այդ կործանումը աշխարհի վրա։ Հրէական ազգը իր վրա փորձել էր թէ ինչ է ասորական սուրը, ինչ է Նինուէից տարածվող լուծը. և նրա մարգարէներից մէկը, Նաումը, այսպէս էր խօսում Նինուէի վերջի վրա.

«Վա՜յ արիւնահեղութիւնների քաղաքին,

որ ամբողջովին լիքն է ստութեամբ և յափշտակութեամբ։ Լսվում են խարազանի շըռինդը և պտտվող անիւների ձայները, ձիաների խրխնջոցը և սլացող կառքի աղմուկը։ Արշաւում է ձիաւոր զօրքը, փայլում է սուրը, պսպղում են նիզակները. շատ վիրաւորներ, մեռածների բազմութիւն. դիակները վերջ չունեն։ Պոռնիկի պոռնկութիւնների շատութեան համար է այս, պոռնիկի, որ լաւ շնորհալի է իբրև կախարդութիւնների տիկին, որ ազգերը ծախում է իր պոռնկութեամբ և ազգատոհմերը՝ իր կախարդութիւններով։ Բժշկութիւն չը կայ քո վէրքի համար, ցաւեցնող է քո խոցը։ Եւ ամեն մէկը, լսելով քո լուրը, պիտի ծափահարէ, որովհետև ո՞ւմ վրա չէ տարածվել քո չարութիւնը»։

Մենք երկար խօսեցինք Ասորեստանի մասին, բայց նկարեցինք այն պետական սիստեմը, որ ծնվեց Ասիայի հողից։ Ասորեստանը նախատիպն էր, հայրն էր։ Նրանից յետոյ Առաջաւոր Ասիայի զանազան կողմերում, զանազան ժամանակ, զանազան չափերով սովորական դարձաւ բռնապետութեան այս ձևը։ Այսօր էլ շատ բան անփոփոխ է մնացել Ասիայի երկնքի տակ։ Էութիւնը, ոգին միշտ մնաց։

---

Բայց այն ժամանակ, երբ Աստրեստա- նի կործանումը, մարգարէի գեղեցիկ խօս- քերով, բոլոր տեղերում ծափահարութիւն էր ՝արուցանում, հեռու այս տեղերից, արև- մուտքում, Բալկանեան թերակղզու բոլորո- վին հարաւային ծայրին և նրան շրջապատող կղզիների վրա, նկատվում էր հիմնովին հա- կառակ տեսարան։

Այդտեղ զարգանում էր մի ազատ մարդ- կութիւն, որ իր մտաւոր սքանչելի գործու- նէութեամբ եւրօպական քաղաքակրթութեան հիմքը դրեց։ Հելլէն ազգն էր դա։ Փոքրիկ ազգ, փոքրիկ երկրի վրա։ Բայց այդ մի բու- ռը ժողովուրդը մտքի հերոս հանդիսացաւ, հեռզհետէ մշակեց հասարակական կարգեր, հանրապետական սկզբունքները գործադրեց, քաղաքացիական իրաւունքները ու պարտա- ւորութիւնները օրինականացրեց և անհատի ազատ զարգացումը առաջ տարաւ։ Այդտեղ այլ ևս սուրն ու աշխարհակալութիւնը չէին մարդուն բարձրացնողը, այլ տաղանդը, խել- քը, իմաստութիւնը։ Այդտեղ պետական գա- ղափարը բոլորովին ուրիշ կերպարանք ստա- ցաւ. բռնապետութիւնը չէր կլանում ամեն ինչ, նրա տեղ կար աւելի բարձր և վսեմ իդէալ—հայրենիքի հասկացողութիւնը։ Հայ- րենիքին հպատակվում էին ամենքը, բայց ոչ թէ սարսափից ստիպված, այլ գիտակցա-

քար, այնպիսի ջերմ սիրով, որ հրաշալի անձնազոհութեան աստիճանին էր հասնում։

Նշանաւոր է որ Եւլադան աշակերտեց Արևելքին։ Նա սովորեց Ասորեստանից, Բաբիլոնից, Փիւնիկիայից և Եգիպտոսից շատ բան, մինչև իսկ աստուածներ փոխ առաւ այն տեղից։ Բայց անկախ պահեց իր ոգին, իր վերցրածը վերամշակեց, հաղորդեց նրան իր քաղաքակրթութեան գոյնը։ Ասիացին զարգացնում էր իր երևակայութիւնը միայն, նրա աստուածները ահաւոր էին, շրջապատուած գերմարդկային հանգամանքներով, երկիւղ էին ազդում իրանց յատկութիւններով, իրանց կերպարանքով։ Յոյնը, ընդհակառակըն, մօտեցրեց աստուածները մարդկային հասկացողութիւններին, մարմնացրեց նրանց մէջ մարդկային հոգին ու ձգտումները։ Նա երևակայութեան գերի չէր, նրան առաջնորդողը բանականութիւնն էր, որ հրաւիրում էր նրան ուսումնասիրել բնութիւնը, մտնել նրա գաղտնիքների մէջ, գտնել նրան կառավարող օրէնքները։ Այդ խուզարկող, որոնող, պատճառներ ու հետևանքներ տեսնող ուսումնասիրութիւնն էր, որ փարթամ ծաղիկների պէս բացեց քաղաքակրթութեան, լուսաւորութեան բոլոր դործօնները. գիտութիւնը, գրականութիւնը իր բազմաթիւ ճիւղերով, գեղարուեստը ոսկի դար բերին այդ դար-

մանալի ազգի համար։ Արևելքում ամենքը մի էին—ստրուկներ թագաւորի առաջ. այնտեղ շնորհքը, ընդունակութիւնը մեծագործութիւնների չէր կարող հասցնել, մինչդեռ Յունաստանի ազատ մթնոլորտում բազմանում էին խոշոր տաղանդները, որոնք թագաւորում էին մարդկանց մտքերի վրա, խաղաղ կեանքի մէջ հերոսներ էին հանդիսանում, աշխատելով հասարակաց բարիքի համար։ Փոքր էր այդ ազգը, բայց մեծ ու ուժեղ էր իր ազատ հիմնարկութիւններով։

Այստեղ, Յունաստանում, Եւրոպան էր. այնտեղ, Առրեստանում, Ասիան։ Երկու անուններ, որոնք միայն աշխարհագրական միտք չունեն։ Դրանք երկու ոգիներ են, երկու սկզբունքներ, միմեանց հակառակ, միմեանց բացասող, միմեանց հետ անհաշտ։ Եւ նրանք իրարից հեռու չը մնացին, անտարբեր ու առանձնացած չէին։ Նրանք կանգնեցին իրար հանդէպ, զինվեցին իրար դէմ։ Սկսվեց պայքարը Ասիայի ու Եւրոպայի, Արևելքի ու Արևմուտքի մէջ, արիւնոտ պայքար, որ տանջանքների ու սոսկալի ցնցումների մի անվերջ շղթայ դառնալով, ձգվեց այն ժամանակներից մինչև մեր օրերը և դեռ լուծում չէ ստացել։ Սկսվեց Արևելեան Հարցը. դա երկու սկզբունքների տիրապետութեան հարցն էր. մի կողմից կուլտուրա, քա-

ղաքակրթութիւն, ազատութիւն, միւս կող-
մից՝ բռնակալութիւն, անշարժութիւն, ստըր-
կութիւն։ Դարերի ընթացքում զէնքին է յանձնվում հարցի լուծումը—ո՞վ պիտի տիրապետէ...

Պայքարը սկսողը, առաջին անգամ արիւնով ներկողը Ասիան էր։

---

# Բ.

*Ասորեստանի յաջորդները։ — Մարաստան և Պարսկաստան։ — Պարսկական մեծ պետութիւնը։ — Նուաճողը և նուաճվածները։ — Հարկեր, արքունիքի շռայլութիւններ։—Սատրապներ։—Պարսկա-յունական պատերազմները իբրև եւրոպականութեան և ասիականութեան մրցում։*

---

Մարաստանը, կործանելով Ասորեստանը, տիրացաւ նրա ժառանգութեան։ Դա մի պարզակեաց, խստաբարոյ ժողովուրդ էր. բայց ստացած ժառանգութիւնը շուտով փոխեց նրան։ Նինուէի անհուն հարստութիւնների հետ ասորեստանական կարգերն էլ մըտան Մարաստանի մէջ։ Բայց նրան չէր վիճակված երկար վայելել ասիական մեծ պետութեան փառքը։ Արդէն պատրաստ էր և նրա ժառանգը։ Դա նրա ցեղակից Պարսկաստանն էր։

Պարսից ժողովուրդը պատմական ասպարէզն էր դուրս գալիս նոյնպէս իբրև մի

պարզամէր, խաղաղ երկրագործ արիական ազգ, որ ունէր խաղաղութիւն, աշխարհաշինութիւն քարոզող մի կրօն։ Բայց Պարսկաստանը կուսական երկիր չը մնաց. նա սկսեց նուաճողական քաղաքականութիւնը, անչափ մեծացրեց իր սահմանները և ենթարկվեց ասիական մեծ պետութեան ճակատագրին։ Մարաստանից ստանալով սարբեստանական ժառանգութիւնը, նա կազմակերպվեց նոյն բռնապետական սկզբունքների վրա, փոփոխել իր բարքերը, սակաւապէտութիւնից անցնելով դէպի շքեղութիւն, փափկասիրութիւն։ Նոյն իսկ նրա կրօնն էլ օտար ազդեցութիւնների տակ սկսեց կերպարանափոխվել, կորցնել իր նախնական պարզութիւնը, իր վերին աստիճանի գեղեցիկ բարոյական հիմքերը։

Նոյն իսկ Ասորեստանը նսեմացաւ Իրանի պետութեան փայլի և ոյժի առաջ։ Ասիան դեռ չէր տեսել մի այդպիսի ահագին տարածութիւն, ենթարկված մի իշխողի գայխոնին։ Հնդկաստանից մինչև Միջերկրական ծովը և Նեղոսի հովտից մինչև Արալեան ծովը ամեն ազգ և ամեն լեզու հպատակված էր պարսից զէնքին։ Այս վիթխարի մարմնի կենտրոնն էլ, ինչպէս Ասորեստանում, անսահման ինքնակալ թագաւորն էր, որի առջև ամեն ինչ սողում էր իբրև ստրուկ։

Պարսկական բռնապետութիւնը մի քանի քայլ առաջ գնաց իր ասորեստանեան նախատիպից։ Աւելի սաստկացաւ նուաճողական թափը, աւելի նպատակայարմար կարգեր մտցրվեցին՝ ահագին տարածութիւնների վրա փռված միլիօնաւոր ժողովուրդները կառավարելու համար։ Աքեմենեան Շահերի մէջ կան մի քանիսը, որոնք մեծ անուն են հանել պատմութեան մէջ։ Նրանք գնացին նուաճելու այն ամենը, ինչ կարելի էր նուաճել, յաճախ նոյն իսկ չիմանալով թէ ուր են գտնվում նուաճելի ազգերը, ինչ է նրանց երկիրը։ Մի քանի բարեկարգութիւններ, որոնք այդ աշխարհակալների գործերն են, ցոյց են տալիս որ բռնակալութիւնը կատարելագործվելու ձգտումներ ունէր։ Այսպէս, Աքեմենեանները մտցրին դրամական սիստեմ, պօստային հաղորդակցութիւն ստեղծեցին, որ, սակայն, միմիայն զինուորական նպատակներին էր ծառայում։ Բարելաւութիւնները, իհարկէ, չը փոխեցին ասիականութեան ոգին։ Բռնապետութիւնը նոյնն էր, ժողովուրդը խեղճ ու իրաւազուրկ։ 80 միլիօն հպատակների տուած հարկերը դարսված էին Շահերի պալատների նկուղներում, ուր մնում էին առանց գործադրութեան, լոկ Իրանի տիրոջ հարստութիւնը առասպելական չափերի հասցնելու համար։

Պետական կազմակերպութիւնը անփոփոխ մնաց և այն մասում, որ վերաբերվում էր նուաճած ազգերին։ Պարսկական աշխարհակալութիւնը քանի՜ տարբեր ազգեր ու կուլտուրաներ էր հաւաքել իր ձեռքի տակ։ Բայց դա ներքին կապերից, փոխադարձ համերաշխութիւնից զուրկ մի ժողովածու էր։ Թագաւորողը այդ բոլոր բաժան-բաժան մասնիկների վրա հպատակութեան լուծն էր, որ արտայայտվում էր համարեա միայն հարկեր տալով։ Պարսիկները չէին դիպչում իրանց նուաճած ազգերի տեղական ներքին կազմակերպութեան, այնպէս որ իւրաքանչիւր ազգ կառավարվում էր իր աւանդական սովորութիւններով։

Թէ ինչ բարբարոսական հասկացողութիւններ էին տիրում Իրանի լայնատարած պետութեան մէջ, ցոյց են տալիս այն հարկերը, որ տալիս էր պարսից արքունիքին իւրաքանչիւր երկիր։ Հերոդոտը պատմում է որ Բաբիլոնից և Ասորեստանից թագաւորը ստանում էր ամեն տարի 1000 տաղանդ արծաթ և 500 ներքինացրած երեխաներ. իսկ կողքիսցիները, շարունակում է նոյն պատմահայրը, իւրաքանչիւր հինգ տարին մի անգամ տալիս էին 100 երեխաներ և 100 աղջիկներ։ Դժբախտ էին այսպիսի հարկեր տուող երկիրները, բայց մի՞թէ պակաս դըժ-

բախտ էր և ընդունողը։

Եւ միլիօնները այսպէս կեղեքվում էին՝ Իրանի վեհապետին առասպելական փարթամութեան մէջ պահելու համար։ Ցատուկ նըշանակված էին մարդկանց խմբեր, որոնք շրջում էին պետութեան մէջ և Շահի սեղանի համար ամենն տեսակ համադամներ և խմիչքներ էին որոնում։ Իւրաքանչիւր երկիր իր լաւագոյն, հռչակված բերքերն էր ուղարկում պարսից դուռը։ Ցոյն ժամանակագիրներից մէկը հաղորդում է որ Շահի ճաշը օրեկան նստում էր 400 տաղանդ, այսինքն մօտ 700 հազար րուբլի։ Որքան էլ չափազանցութիւն լինի այդ թուանշանի մէջ, փաստ է մնում այն, որ պարսից արքունիքի շռայլութիւնը ընդունակ էր առասպելներ ստեղծել։ Եւ այս գումարը հաւանականութիւնից շատ հեռու չի լինի, եթէ նկատի առնենք բռնակալի կանանոցը, արքունիքը, ուր տասնեակ հազար մարդիկ էին ապրում։ Երբ Շահը ճանապարհորդում էր իր երկրում, նրա հետևորդները, կանանոցը այնպէս էին պլոկում ու թալանում շրջակայքը, որ կարծես մորեխ էր անցել այդ տեղերով։ Վերջապէս, սեմական ազգերի բռնապետութեան աւելի նմանվելու համար, Պարսկաստանում, ինչպէս վկայում են յոյն պատմագիրները, գոյութիւն ունէր և մարդկանց զոհաբերու-

թիւնը, թէև դա հակառակ էր պարսից կրօնի ոգուն։

Բռնապետական սիստեմը միայն արքայական պալատների համար չէր նուիրագործված։ Մեծ բռնապետը օրինակ էր հանդիսանում բազմաթիւ մանր բռնապետների համար։ Պետութիւնը բաժանված էր 20 մասերի, որոնց կառավարիչները սատրապ էին կոչվում։ Սրանք էլ մի մի թագաւորներ էին իրանց տեղերում, այն տարբերութեամբ միայն, որ Շահինշանը իրանից բարձր Ահուրա-Մազդա աստուածն ունէր, որի ողորմութիւնը միշտ իր հետ էր, իսկ սատրապները դողում էին Շահինշանի առաջ, որովհետև բաւական էր նրա մի հատ խօսքը և այսօրվայ ամենակարող սատրապը վաղը կը լինէր մի մերկ ու թշուառ սորուկ։

Սատրապների անմիտ շռայլութիւնն ու կամայականութիւնները առածի ձև են ստացել։ Հերօդոտը պատմում է որ Բաբիլօնի նահանգում չորս գաւառ պարտաւոր էին, իբրև հարկ, կերակրել ու պահել սատրապի հնդկական ահագին շները։ Նոյն այդ սատրապն ունէր 16800 ձի։ Աւելացրէք և սատրապական ուրիշ քմահաճոյքները, մանաւանդ կանանոցները, որոնք Պարսկաստանի խական կառավարիչներն էին, և դուք մօտաւոր հասկացողութիւն կը կազմէք թէ ազգաբնա-

կութիւնը ինչ դրութեան մէջ պիտի պահէր իրան՝ իր անթիւ խոշոր ու մանր բռնապետների կոկորդը իր հարստութիւններով լցնելու համար։

Հայաստանն էլ պարսկական մի սատրապութիւն էր։ Ճիշտ է, պատմագէտներից ոմանք ենթադրում են, որ հայ թագաւորներն էին սատրապի պաշտօն կատարում, բայց եթէ տեղի ունեցած էլ լինի մի այդպիսի բացառութիւն մեր երկրի համար, դարձեալ փաստ է մնում որ Հայաստանը պարսկական միապետութեան մի կտորն էր հարիւրաւոր տարիների ընթացքում։

Եւ ահա ասիականութեան այս լայնատարած, վիթխարի ներկայացուցիչն էր, որ կամեցաւ իր սարսափելի զէնքով ոչնչացնել եւրոպականութիւնը, ազատ ոգին։ Պարսկաստանը պատերազմներ սկսեց Յունաստանի դէմ։ Բայց ինչ պարզվեց այդ ահաւոր ընդհարումներից։ Այն, որ վայրենի ոյժը չէ կարող յաղթահարել լուսաւորութիւնը. մտաւոր ոյժը անհամեմատ գերազանց հանդիսացաւ ֆիզիկական անհեթեթ ոյժի վրա։

Պարսկաստանը Ասիայից Եւրոպա անցկացրեց մի բանակ, որ առնուազն 8—9 հարիւր հազար հոգուց էր բաղկացած։ Այդտեղ էին պարսից աշխարհի մէջ ապրող բոլոր ազգերը, որոնք գնացել էին կռուելու յանուն

այն միակ հասկանալի սկզբունքի, որ պարսկական Շահի հրաման էր կոչվում։ Չը կար Ասիայում մի ազգ, որ չը մասնակցէր այս արշաւանքին, ասում է Հերօդօտը։ Ուրեմն, բառացի մտքով, ամբողջ Ասիան ոտքի էր կանգնել մի փոքրիկ ազգ նուաճելու համար։

Բայց նուաճել չը կարողացաւ։ Ազատ ոգին, ժողովրդական-ռամկավարական սկըզբունքը դիմադրեց, յաղթեց և Քսերքսը կոտրագլուխ վերադարձաւ Ասիա։ Եւրօպական քաղաքակրթութիւնը փրկված էր։ Բայց սա վերջին պատերազմը չէր Ասիայի և Եւրօպայի մէջ...

---

## Գ.

Հայերը՝ ասիականութեան զինուորներ։—Պարսկական ազդեցութիւնը հայերի վրա։—Ստրաբոնի մի բնորոշ մոլորութիւնը։—Կրօնական ազգակցութիւն։—Ալէքսանդր Մակեդոնացու արշաւանքը։—Հելլէնականութիւնը աշխատում է պատուաստվել Ասիայում։—Արիստոտէլի կարծիքը։—Ալէքսանդրի՝ ջանքերը։—Հայերի վերաբերմունքը դէպի հելլէնականութիւն։—Արևմուտքը գիջողութիւն է անում Արևելքին, հայերին։

---

Ի՞նչ էր հայ ազգը երկու աշխարհայեցողութիւնների, երկու սկզբունքների այս ընդհարման մէջ։

Մենք ասիականութեան զինուոր էինք։ Սա բնական էր, շատ հասկանալի։ Մի համեմատաբար թոյլ ու փոքրիկ ազգ, մենք, բնակվելով Ասիայում, ենթարկվեցինք այդտեղի ոգուն, որ, ի դէպ ասած, բնական է զարգացման ստորին աստիճանների վրա կանգնած ազգերի մէջ։ Հայերն էլ Քսէրքսի բանակում գնացել էին Յունաստան՝ քաղաքակրթութիւնը ջնջելու, և Հերոդոտը նկա-

լուացրում է մեր հայրական անզամ։ Կրթու-թեամբ, բնաւորութեամբ, ձգտումներով մենք այն էինք, ինչ մեզանից շատ մեծ, մեզ վրա տիրող ազգն էր։ Իրանը մեր մէջ էր ապրում։ Պահպանելով մեր լեզուն, ազգային անհատականութեան այս առաջնակարգ սյժը, պահպանելով մեր աւանդական առանձին, ցեղային յատկութիւնները, մենք մեր սեփական տեղն էինք գրաւում ազգերի այն խառնարանի մէջ, որ Իրանի պետութիւն էր կոչվում։ Բայց մի և նոյն ժամանակ մենք ձըգտում էինք դէպի իրանականութիւնը, ներս էինք ծծում իրանական ազդեցութիւնը, կուլտուրական, հասարակական և պետական հասկացողութիւնները։

Քրիստոսից չորս հարիւր տարի առաջ Քսենոփոնը իր տասն հազար յոյների հետ անցնում էր Հայաստանով։ Մտնելով մի հայ գիւղ, նա հանդիպում է ջրի գնացած կանանց և խօսում է նրանց հետ պարսկերէն լեզուով։ Եթէ պարսկերէնը այդքան լաւ ծանօթ էր հայերին մի յետ ընկած գիւղում, հասկանալի է թէ ինչ կը լինէր նա աւելի խոշոր կենտրոններում, մանաւանդ երկրի այն մասի մէջ, որ Քսենոփոնի տեսած տեղերից աւելի մօտ էր Պարսկաստանին։ Եւ այս բանը չը պիտի զարմացնէ մեզ։ Հայերը առհասարակ հեշտ էին ենթարկվում իրանց

շրջապատող ազգերի ազգեցութեան։ Այնպէս որ Քսենոփոնից մի քանի դար յետոյ ապրած յոյն հռչակաւոր աշխարհագրագէտ Ստրաբոնը նոյն իսկ զարմանում է որ հայերը, ասորիները, արաբները առանձին ազգեր են համարվում, մինչդեռ դրանք բոլորը իրանց նիստ ու կացով, բնաւորութեամբ, լեզուով և կերպարանքով նման են իրար, այն տեղերում, ուր իրար մօտ են ապրում։ Նոյնպիսի նմանութիւն ունեն հայերը և պարսիկների ու մարերի հետ։

Յոյն հեղինակի այս կարծիքը, անկասկած, միակողմանի է և չափազանցութիւն։ Ազգերը արհեստական միջոցով, քմահաճոյքով չեն կազմակերպվում, այլ ցեղական յայտնի պայմանների ազդեցութեամբ· անկարելի է բոլոր յիշված ազգութիւնները մի համարել մանաւանդ այն պատճառով, որ ասորիներն ու արաբները սեմական ցեղին են պատկանում։ Բայց չէ կարելի չը խոստովանել և այն, որ Ստրաբոնի դիտողութիւնը պտուղ է այն հանգամանքի, որ Արևմտեան Ասիայում մի տեսակ քաղաքակրթութիւն էր տիրում, և նրան ենթարկվում էին այդտեղ ապրող այն բոլոր ազգերը, որոնք սեփական, առանձնայատուկ, աչքի զարնող քաղաքակրթութիւն մշակել չէին կարողանում։

Այդ անկարողութիւնը շատ ակներև է

մանաւանդ հայերի վերաբերմամբ։ Նոյն իսկ սեփական անկախ ու ինքնուրոյն կրօն չը կարողացան նրանք ստեղծել և երկրպագում էին օտարական, մանաւանդ իրանական աստուածներին, որքան մեզ յայտնի է, ունենալով շատ չնչին քանակութեամբ և նշանակութեամբ ազգային պաշտամունքներ։ Մեր բարքերի պատկերը լրացնելու համար յիշենք և այն, որ մարդկային զոհաբերութիւնն էլ, այն զզուելի պաշտամունքը, որ Արևմտեան Ասիայի մեծ պետութիւնների մէջ տարածված էր, անծանօթ չէր և Հայաստանում։ Մովսէս Խորենացուն վերագրվող մի պատմութեան մէջ ասված է թէ Հայաստանի լեռներում վիշապներին զոհ էին բերվում կոյս աղջիկներ և անմեղ պատանիներ։

Այս մտաւոր եղբայրակցութիւնը հաստատված է և պատմական բազմաթիւ փաստերով։ Երրորդ դարում Ք. ա. 40 հազար հետևակ և 7 հազար ձիաւոր հայեր պարսից Դարեհ Թագաւորի առաջնորդութեամբ կռւում էին Ալէքսանդր Մակեդոնացու դէմ։ Իսկ ի՞նչ էր Ալէքսանդրը։ Արևմտեան քաղաքակրթութեան ներկայացուցիչը, որ նուաճում էր Արևելքը՝ հելլէնական ոգին տարածելու համար։ Այս անգամ արդէն Արևմուտքն էր յարձակվողը, այս անգամ նա էր ձգտում զէնքի ուժով ջնջել ասիականութիւնը և նրա տեղը

դնել եւրօպական սկզբունքները։ Եւ Ալէքսանդրի առջև ոչինչ չը դիմացաւ. վիթխարի Պարսկաստանը հին Ասորեստանի նման ցրիւ եկաւ մի ուժեղ հարուածից։ Մակեդօնական զօրքերը հասան Հնդկաստան և Ալէքսանդրը արևելեան Պարսկաստանի ծայրերում էլ քաղաքներ հիմնեց, հելլէն ազգաբնակութիւն դրեց նրանց մէջ։ Ամեն եռանդ գործ էր դնում երիտասարդ աշխարհակալը, որ պատմութեան մէջ «Մեծ» տիտղոսին արժանացած առաջին մարդն է։ Բայց ունեցաւ այդ մեծ խելքը աչքի ընկնող աջողութիւն։ Նուաճել Արևելքը, ոչնչացնել պարսկական պետութիւնը դեռ կարելի էր։ Բայց կարելի՞ էր փոփոխել ասիական ոգին, կարելի՞ էր դարերով ստրկութեան մէջ ապրած և ստըրկութիւն զարգացրած ժողովուրդներին հասկացնել տալ թէ ինչ է ազատութիւնը։ Ալէքսանդրի ուսուցիչը, յոյն մեծ փիլիսոփայ Արիստոտէլը, կարծում էր որ անկարելի է։ Նա լաւ գիտէր թէ ինչ է Ասիան և ինչ է հելլէնականութիւնը։ Ուստի խորհուրդ էր տալիս իր աշակերտին վարվել հելլէնների հետ իբրև բարեկամների և ցեղակիցների հետ, իսկ ասիացիների հետ՝ իբրև անասունների և բոյսերի հետ։ «Ասիայի ազգերը,—ասում էր Արիստոտէլը—օժտված են կենդանի մտքով և ճարպիկութեամբ արուեստների

մէջ, բայց զուրկ են քաղցութիւնից, ուստի, նրանք ունեն հրամայողներ իսկ իրանք ստրուկներ են. յոյն ազգը նոյնքան քաջ է, որքան և մտածող. այդ պատճառով նա ունի ազատութիւն և պետական լաւագոյն կեանք»:

Ալէքսանդրը մտածում էր այլ կերպ: Նա կարծում էր թէ կարելի է փոխել սահմանական ոգին, հիմնվելով, ի հարկէ, այն մտքի վրա, որ ազգերը բնութիւնից չեն այսպէս կամ այնպէս ծնվում, որ անշարժութիւնը ճակատագրական չէ: Այդ մտքի մէջ մեծ ճշմարտութիւն կայ, բայց և այդպէս, անսխալ հանդիսացաւ մեծ փիլիսոփայի կարծիքը և այսօր էլ նա ճիշտ է արևելեան շատ ազգերի վերաբերմամբ:

Ինչի՞ց էր այս հակասութիւնը, ինչի՞ց էր որ մարդկային առաջադիմութեան օրէնքը սնանկ էր հանդիսանում Ասիայի մէջ:

Առաջադիմութիւնը, քաղաքակրթութիւնը նուաճողի հրամաններով ու կարգադրութիւններով չէ մտնում մի երկրի մէջ, այլ ժողովրդի յօժարակամ, երկարատև աջակցութեամբ: Մեծ աշխարհակալի կամքը չէր կարող մի քանի տարիներում կերպարանափոխել Ասիան: Որքան էլ Ալէքսանդրը աշխատում էր ցոյց տալ թէ իր նոր պետութեան մէջ չը կան նուաճողներ ու նուաճվողներ, այլ ամենքը հաւասար են, որքան

էլ նա գործով ու խօսքով յարգում էր տեղական սովորութիւնները, իր հպատակների ցեղական և ազգային առանձնայատկութիւնները, բայց նա, այնուամենայնիւ, մի հատ մարդ էր անհամար ազգերի ու լեզուների մէջ։ Ասիական աշխարհի համար նա մի խորթ հրամայող էր, խորթ՝ իր հայեացքներով ու ձգտումներով։ Աշխարհակալի կամքին հակառակվող չը կար և հելլէնական լեզուն, կուլտուրան տարածվում էին Ասիայում մինչև Հնդկաստան։ Բայց դա արտաքին յաղթութիւն էր, մի խորթ եկուոր, որ երբէք չընտանեցաւ ասիական ազգերին, չը լուծվեց նրանց մէջ, չը մարսվեց։ Եւ բացի դրանից, հելլէնականութիւնն էլ աղճատվեց Ասիայում։ Նուաճողները կամենում էին յարմարվել տեղական սովորութիւններին, մտերմանալ տեղացիների հետ, ուստի և իւրացրին շատ ասիական կարգեր։ Այդպիսով Ալէքսանդրի պետութիւնը փոխանակ զուտ հելլէնական ոգու արտայայտութիւն լինելու, դարձաւ կիսա-եւրօպական և կիսա-ասիական մի միապետութիւն...

Ինքը Ալէքսանդրը երկար կեանք չունեցաւ որ անձամբ համոզվէր թէ իր քաղաքակրթական դերը Ասիայում այնքան էլ մեծ չէ կարող լինել։ Բայց պատմութիւնը ունի իր առջև այդ իրողութիւնը։ Չը կար Ալէք-

սանդրը, բայց նրա պետութիւնը բաւական երկար ժամանակ պահվեց Արևելքում։ Որքան էլ Ալէքսանդրի յաջորդները խելքի և եռանդի կողմից հասարակ մարդիկ լինէին, բայց կար այն հանգամանքը, որ երկու հարիւր տարուց աւելի պարսկական հին պետութեան հողի վրա գոյութիւն պահպանեց եւրօպացիների ձեռքով հիմնված մի պետութիւն, որի մէջ տիրապետող տարրը յոյն ազգն էր։ Ի՞նչ կարողացաւ անել այդ պետութիւնը Ասիայի համար։

Նշանաւոր է այն դիրքը, որ գրաւել էր Հայաստանը Մակեդօնական տիրապետութեան ժամանակ։ Ալէքսանդրի մահից յետոյ Պարսկաստանը և Արևմտեան Փոքր Ասիան մտան Սելևկեան թագաւորութեան մէջ։ Հայաստանը մասամբ վասալական դրութեան մէջ մնաց, վերջը անկախութիւն էլ ստացաւ։ Բայց մեզ աւելի պիտի հետաքրքրէ այն հարցը թէ ի՞նչ էր նա։ Իր աւանդութիւններով ու ձգտումներով նա ներկայացնում էր պարսկական աշխարհը և թէև շատ անգամ էր շփվում մակեդօնական աշխարհի հետ, բայց հելլէնականութիւնը համարեա ոչ ինչ ազդեցութիւն չարաւ նրա վրա։ Հայաստանը և նրա հետ Կապադովկիան ու Պօնտոսը անկախութիւն ստացան, վերանորոգեցին իրանց թագաւորութիւնները Սելևկեան ար-

քունիքի համաձայնութեամբ։ Դա չէր նշանակում թէ հելլէնականութիւնը մի քայլ առաջ գնաց Ասիայում։ Բոլորովին ոչ։ Ընդհակառակն, դա ցոյց էր տալիս որ իրանականութիւնը զարթնում է, որ ասիական պետութեան գաղափարը չէ մոռացվել։ «Դա առաջին քայլն էր դէպի փոփոխութիւնների մի նոր շարք», ասում է հելլէնականութեան յայտնի պատմագիր Դրօյզէնը.—«դա առաջին զիջումն էր, որ անում էր նուաճող օտար տարրը Արևելքին, առաջին զոհը, որ բերում էր մակեդօնական իշխանութիւնը, որպէս զի հաշտեցնէ իր հետ Ասիան և նրա վրէժխնդրութեան առաջն առնէ»։

Ահա ինչ էր Հայաստանը։ Նրա անկախութեամբ մի վտանգաւոր պատուար էր ստեղծվում մակեդօնական տիրապետութեան դէմ։ Հարցը այն չէր թէ որքան ուժեղ է այդ պատուարը, հարցը այն էր, որ այդ անկախութիւնը նշանակում էր թէ ասիական սկզբունքը պիտի նորից գլուխ բարձրացնէ և յետ խլէ այն տեղերը, որ Ալէքսանդրի սուրը նուաճել էր եւրօպական կուլտուրայի համար։

Եւ ճիշտ, պարթևների հարստութիւնը նորից իրանականութեան գիրկը գցեց Արևելքի հողերը։ Բայց եւրօպական արշաւանքն էլ կանգ չառաւ։ Մակեդօնական թույլ

*պետութիւնը անցաւ հռոմայեցիներին, որոնք նոյնպէս հելլէնական քաղաքակրթութեան ներկայացուցիչներ էին և շարունակեցին հին, արիւնոտ պայքարը Արևելքի հետ։*

*Տեսնենք թէ Հայաստանը ինչ էր այդ պայքարի նոր կերպարանաւորութեան մէջ։*

## Գ.

Պարթևները և հայերը։—Տիգրան Մեծը իբրև ասիական բռնապետութեան ներկայացուցիչ։ — Թ. Մոմզէնի նկարագրութիւնները։ — Հայաստանը՝ կռուախնձոր Հռոմի և Պարսկաստանի մէջ։—Տակիտոսի վկայութիւնը հայերի մասին։—Ութ դարի կեանք։

---

Պարթևների թագաւորութեան ժամանակ Հայաստանը աւելի ևս մօտեցաւ Պարսկաստանին։ Այժմ սերտ կապեր հաստատողները միայն ընդհանուր աշխարհայեցողութիւնները, կուլտուրական ու կրօնական շահերը չէին. աւելացաւ և ազգակցական մերձաւորութիւնը։ Հայաստանում էլ պարթևներ էին թագաւորում, հայ իշխանները ամուսնական կապերով ազգականութիւն էին հաստատում պարթևների հետ։ Պարթև անունը հայերին շատ սիրելի դարձաւ։

Հայկական թագաւորութեան մասին տեղեկութիւնները շատ խառն ի խուռն են, բայց ընդհանրապէս կարելի է ասել որ նա

ոչնչով չէր զանազանվում ասիական միւս պետութիւններից։ Այստեղ էլ սերունդից սերունդ կենդանի էին նոյն օրէնքները, որոնք յատուկ են ասիական բռնապետութիւններին։ Եւ դրա փայլուն ապացոյցն է մեր Տիգրան թագաւորը, որի օրով Հայաստանը մի նոր, զարմանալի երեւոյթ դարձաւ։

Արեւելքում ամեն ինչ կախված է թագաւորող անձի յատկութիւններից։ Տիգրանը քաջ էր ու եռանդուն. ուստի կարողացաւ մի նշանաւոր աշխարհակալ դառնալ։ Հայաստանը նա ժառանգեց մի խեղճ դրութեան մէջ։ Երկիրը բաժանված էր երկու մասի, պարթեւները խլել էին շատ հողեր։ Տիգրանը միացնում է Հայաստանը, յետ է մղում պարթեւներին, արշաւանք է գործում դէպի Պարսկաստանի խորքերը և խլում է նոր երկիրներ։ Պատմութեան ասպարէզն է իջնում մի նոր, թարմ ազգ, որ Արեւելքի և Արեւմուտքի ուշադրութիւնն է գրաւում։ Տիգրանը,—ասում է գերմանացի գիտնական Մոմզէնը իր հռչակաւոր «Հռոմէական Պատմութեան» մէջ, —տալիս է Հայաստանին այն առաջնակարգ ազդեցութիւնը Ասիայում, որ Աքեմենեաններից անցել էր Սելեւկեաններին և այս վերջիններից՝ պարթեւ Արշակունիներին»։

Եւ իրաւ, Տիգրանը դուրս է գալիս իր երկրի սահմաններից և սկսում է անխնայ

նուաճումներ տարածել աջ ու ձախ։ Ատրպատականն ու Կորդուաց աշխարհը, իբրև հարկատու թագաւորութիւններ, ենթարկվում են Հայաստանին։ Նինուէի թագաւորութիւնը, Միջագետքի մի մեծ մասը հայերի ձեռքում են։ Եդեսիան Տիգրանը տալիս է հարաւային Միջագետքից իր ձեռքով գաղթեցրած մի արաբական ցեղի, որպէս զի նրա միջոցով տիրապետէ Եփրատի անցքի և առևտրական այն մեծ ճանապարհի վրա, որ անցնում էր Փոքր Ասիայից դէպի Հայաստան։ Այնուհետև Տիգրանը անց է կացնում իր զէնքը Եփրատի միւս կողմը, խոշոր գրաւումներ է անում Կապադովկիայում, մեծ հեշտութեամբ նուաճում է Արևելեան Կիլիկիան, Հիւսիսային Սիրիան, Փիւնիկիայի մեծ մասը։ Հասնում է հրէական թագաւորութեան սահմաններին և սպառնական դիրք է բռնում այդտեղ։

Ահա մի մեծ պետութիւն ասիական ոգով։ Եւ ոչինչ չէ պակասում նրան։ Տիգրանը մի քանի մայրաքաղաքներ ունի, որոնցից մէկն է Անտիոքը, նրա հրամանին հնազանդվում են տեսակ-տեսակ ազգեր և լեզուներ։ Պատկերը լիակատար դարձնելու համար բերենք այստեղ Մոմզէնի նկարագրութիւնը։

«Թւում էր թէ վերածնվել է Նինուէի

Թագաւորների՝ Սալմանասարի և Սենեքերի-բի ժամանակը,—ասում է նա.—արևելեան քաղաքակրթութիւնը "նորից" ծաղկում էր ա-րիական ազգերի վաճառականական անկա-խութեան վրա, ինչպէս մի ժամանակ Տիւրոսի և Սիդոնի վրա. նորից ցամաքային մեծ պետութիւնները յարձակվում էին Միջ-երկրական ափերի երկարութեամբ գտըն-վող երկրների վրա. նորից Կիլիկիայի և Սիրիայի ծովափերում կանգնած էին բա-նակներ, որոնք մօտաւորապէս կէս միլիոն զինուորներից էին կազմված։ Ինչպէս մի ժա-մանակ Ծալմանասարն ու Նաբուգոդոնոսորը տանում էին հրէաներին Բաբիլոն, այնպէս էլ այժմ նոր թագաւորութեան սահմանա-կից երկրներից՝ Կորդուէնից, Ադիաբենից, Ասորեստանից, Կիլիկիայից, Կապադովկիայ-ից բնակիչները, մանաւանդ յոյն և կէս—յոյն քաղաքացիները, պարտաւոր էին, եր-կիւղ կրելով իրանց բոլոր կայքերի դրաւման սպառնալիքից, բնակութիւն հաստատել ի-րանց անհեցած-չուհեցածով նոր մայրաքա-ղաքում։ Դա մէկն էր այն վիթխարի քաղաք-ներից, որոնք աւելի շուտ ազգերի ոչնչու-թեան մասին են վկայում, քան տիրողների մեծութեան մասին և որոնք կարծես գետնից էին բուսնում Եփրատի երկրում իւրաքան-չիւր նոր մեծ սուլթանի հզօր մի խօսքով

ամեն անգամ, երբ փոփոխութիւն էր տեղի ունենում թագաւորական գահի վրայ։

«Տիգրանի նոր քաղաքը, Տիգրանակերտը, որ հիմնված էր Տիգրիսի աջ ափին, Միջագետքի սահմաններում, և պիտի լինէր հայկական նոր նահանգների մայրաքաղաքը, դարձաւ Նինուէի և Բաբիլոնի նման մի քաղաք, յիսուն կանգուն բարձրութիւն ունեցող պատերով և սուլթանիզմի հետ անբաժան կապված պալատով, այգով և ծառաստանով։ Միւս բաների մէջ էլ նոր տիրապետողը հաւատարիմ մնաց աւանդութեան. ինչպէս որ յաւիտեան մանուկ մնացող Արևելքում առհասարակ երբէք չէ վերացել երեխայական հասկացողութիւնը գլխի վրա իսկական թագ կրող թագաւորների մասին, այնպէս էլ Տիգրանը այն օրերում, երբ երևում էր հասարակութեան մէջ, ցոյց էր տալիս փարթամութիւն Դարեհի և Քսէրքսի ժառանգի հագուստում. կրում էր ծիրանի բաճկոն, կէսը սպիտակ, իսկ կէսը նոյնպէս ծիրանի շապիկ, երկար և լայն վարտիք, բարձր ապարօշ և արքայական վարսակալ. ուր որ նա շրջում էր կամ կանգնում, ամեն տեղ նրան ուղեկցում էին չորս «թագաւորներ», որոնք ծառայում էին նրան իբրև սորուկներ»։

Ամեն ինչ գուցէ լաւ դնար այդ մեծ սուլթանութեան մէջ, եթէ Տիգրանին վի-

ճակված չը լինէր Բաէրքսի և Դարեհի բախտը, այն է՝ եւրոպացիների հետ ընդհարվելը։ Առժամանակ Հայաստանին էր բաժին ընկել վարելու Ասիայի դատը եւրոպականութեան դէմ, և ահա այստեղ էր հայ Բաէրքսի ճակատագրի ողբերգական կողմը։ Տիգրանի դէմ արշաւում են հռոմէական փոքրաթիւ բանակներ։ Բաւական է մի ընդհարում և ահա այն պետութիւնը, որ կարողանում էր կուտել Միջերկրականի ափերում կէս միլիօն զօրք, խորտակվում է խաղաթղթերից շինած տան նման։ Տիգրանակերտի մօտ Լուկուլլոսից յաղթված Տիգրանի մէջ խօսում էր պատմական այն օրէնքը, որից Ասորեստանը թաղվեց Նինուէի պատերի տակ, իսկ Պարսկաստանը ոչնչացաւ Աղէքսանդրի մի հարուածից։ Հայկական մեծ պետութիւնը չափազանց սակաւակեաց էր, նոյն իսկ իր հիմնադրի չափ էլ կեանք չունեցաւ։ Տիգրանը ստիպված եղաւ բաւականանալ Հայաստանի հին սահմաններով. Ասիայի նախապատիւ մեծ սուլթանը ընդունեց Հռոմի գերիշխանութիւնը ու այդպէս կարողացաւ շարունակել իր թագաւորութիւնը Արտաշատի մէջ։

Այս կարճատեւ պատմութիւնը ցոյց է տալիս որ ասիական պետութիւնը կարող էր հեշտ բարձրանալ և նոյնպիսի հեշտութեամբ էլ ընկնել. Առաջաւոր Ասիան թէ հին և թէ

միջին դարերում անթիւ այսպիսի օրինակներ ունի։ Եւ հռոմայեցիները չը փորձեցին էլ իրանց ջարդած մեծ պետութիւնը ձուլելու հռոմէական նահանգների հետ։ Նրանք գիտէին որ արեւելեան բարբարոսները երբէք չեն միանայ մի եւրօպական ազգի հետ, ուստի և համարեա անկախութիւն տուին հայերին, միայն մի քանի չնչին պարտաւորութիւններ դնելով նրանց վրա։ «Հայաստանը—ասում է Մօմզէն—մի այնպիսի պետութեան մէջ չէր մտցրված, որի հետ նրան կապէին ազգայնութեան կապերը։ Հռոմայեցիները, ի հարկէ, գիտէին, որ Եփրատի արեւելեան ափին գտնվող երկիրները իրանց կայսրութեան միացնելը կը լինէր յափշտակութիւն մի երկրի, որ վաղուց ի վեր պատկանում էր արեւելեան ազգերին և այդ բանը Հռոմի համար ինչպէս ոյժի աւելացում չէր լինի»։ Այս փորձը արել էր եւրօպականութիւնը Մակեդօնական պետութեան միջոցով և հռոմէացիները թոյլ տուին որ Հայաստանը պահպանէ իր անկախութիւնը, ճանաչելով, սակայն, Հռոմի գերիշխանութիւնը։

Մեզ չը պիտի շփոթեցնէ այն հանգամանքը, որ հելլէնականութիւնը, այնուամենայնիւ, մի քանի հետքեր թողեց Հայաստանում։ Յայտնի է, օրինակ, որ յունաց սա-

տուածների արձանները փոխադրվեցին Հայաստան, իսկ մեր Տիգրանի որդի Արտաւազդ Թագաւորը այնքան հելլէնասէր էր, որ յունական թատրոն էր պահում իր արքունիքի մէջ և ինքն էլ յունարէն լեզուով ողբերգութիւններ էր գրում։ Իւրաքանչիւր փաստ իր հետևանքներով պէտք է գնահատել։ Յունական արձանները եկան մեզ մօտ պարզապէս մեր հայ-իրանական աստուածներին ներկայացնելու համար, նրանք փոփոխութիւններ չը մտցրին մեր ազգային պաշտամոնքի մէջ։ Իսկ Արտաւազդի հելլէնասիրութիւնը մի մասնաւոր, անհատական երևոյթ էր։ Պարսկաստանի պարթև թագաւորների մէջ կային այնպիսիները, որոնք իրանց անուան կցնում էին «Հելլէնասէր» տիտղոսը։ Դա գուցէ և շատ ճիշտ էր, բայց չէր էլ խանգարում որ Պարսկաստանը Պարսկաստան լինի, իսկ այդ հելլէնասէրը—մի պարսկական Շահ։

Պարթևների և հռոմայեցիների մէջ երկար ժամանակ պատերազմներ էին տեղի ունենում Հայաստանի վրա գերիշխանութիւն պահպանելու համար։ Երկու պետութիւնները իրար ձեռքից խլում էին այդ իրաւունքը․ և եթէ Հայաստանը այդ ընդհարումների ժամանակ երբեմն Հռոմի կողմն էր անցնում, այդ դարձեալ չէր ցոյց տալիս թէ հայերը

եւրօպական կուլտուրային են ուղում հպատակվել: Քաղաքական շահն էր այդտեղ խօսում: Հռոմէական երեւելի պատմագիր Տակիտոսը այսպէս է բնորոշում հայերին. «Հայերը, որոնք իրանց երկդիմի հաւատարմութեամբ հրաւիրում էին մէկ և միւս կողմի (պարթեւների և հռոմէացիների) զէնքը, իրանց երկրի դիրքով, բարքերի նմանութեամբ աւելի մօտ էին պարթեւներին, նրանց հետ խառնված էին ամուսնութիւններով և, անծանօթ լինելով ազատութեան հետ, աւելի թեքվում էին դէպի այնտեղ, դէպի ստրկութիւնը»: Մի ուրիշ տեղ Տակիտոսն ասում է թէ հայերը ատում էին հռոմայեցիներին:

Մօմզէնը հռոմէական տիրապետութեան ամբողջ ժամանակամիջոցը բնորոշում է այսպէս. «Հայաստանը հռոմէական երկարատև տիրապետութեան ժամանակ էլ մնաց ոչ-յունական մի երկիր, որ անխզելի կապերով կապված էր պարթեւների պետութեան հետ թէ լեզուի ու կրօնի միութեամբ, թէ բազմաթիւ ազգականական կապերով նշանաւոր ընտանիքների մէջ, թէ հագուստի և զէնքերի նմանութեամբ»:

Բայց պէտք է այստեղ միակողմանիութիւնից խուսափելու համար, ասել և այն որ արևմտեան աշխարհը, իբրև նուաճող և տէր, այնպէս չէր պահում իրան Հայաստանի մէջ,

որ կարողանար ազգայնականութեան համակրանքները վայելել։ Լուսաւորված եւրոպացիները վարվում էին հայերի հետ, ինչպէս մի բարբարոս ազգի հետ։ Դեռ Քսենոփոնի զինուորները իրաւունք էին համարում խլել հայերից այն ամենը, ինչ հաւանում էին։ Հռոմայեցիները յաճախ նենգ և ստոր արարքներով վրդովում էին հայերին։ Բաւական է միայն յիշել Անտօնիուսին, որ անաջողութեան հանդիպելով պարսկական արշաւանքի մէջ, իր բարկութիւնը թափեց Տիգրանի որդի Արտաւազդի վրա, որ հռոմայեցիների դաշնակիցն էր։ Խաբէութեամբ բռնելով Արտաւազդին, Անտօնիոսը տարաւ նրան Եգիպտոս՝ իր սիրուհի Կլէօպատրային սիրաշահելու համար և սրա կամքով էլ սպանեց անմեղ թագաւորին։

Այդ ստորութիւնը կատաղեցրեց հայերին. Արտաւազդի որդին հրամայեց կոտորել Հայաստանում գտնվող հռոմայեցիներին, իսկ Հռոմը, ի հարկէ, իր միջոցները ձեռք առաւ Հայաստանը նորից խաղաղացնելու համար։ Երկրում ծագեցին ներքին խռովութիւններ, որոնց ժամանակ սպանվեց Արտաւազդի որդին։ Թէև խաղաղվեց երկիրը, թէև հռոմայեցիները տէր մնացին, բայց Հայաստանում ատելութիւնը և ընդդիմութիւնը հռոմայեցիների դէմ չը պակասեց։

եւրօպական կուլտուրային են ուզում հպատակվել։ Քաղաքական շահն էր այդտեղ խօսում։ Հռոմէական երեւելի պատմագիր Տակիտոսը այսպէս է բնորոշում հայերին. «Հայերը, որոնք իրանց երկդիմի հաւատարմութեամբ հրաւիրում էին մէկ և միւս կողմի (պարթեւների և հռոմէացիների) զէնքը, իրանց երկրի դիրքով, բարքերի նմանութեամբ աւելի մօտ էին պարթեւներին, նրանց հետ խառնված էին ամուսնութիւններով և, անծանօթ լինելով ազատութեան հետ, աւելի թեքվում էին դէպի այնտեղ, դէպի ստրկութիւնը»։ Մի ուրիշ տեղ Տակիտոսն ասում է թէ հայերը ատում էին հռոմայեցիներին։

Մօմզէնը հռոմէական տիրապետութեան ամբողջ ժամանակամիջոցը բնորոշում է այսպէս. «Հայաստանը հռոմէական երկարատև տիրապետութեան ժամանակ էլ մնաց ոչ-յունական մի երկիր, որ անխզելի կապերով կապված էր պարթեւների պետութեան հետ թէ լեզուի ու կրօնի միութեամբ, թէ բազմաթիւ ազգականական կապերով նշանաւոր ընտանիքների մէջ, թէ հագուստի և զէնքերի նմանութեամբ»։

Բայց պէտք է այստեղ, միակողմանիութիւնից խուսափելու համար, ասել և այն որ արևմտեան աշխարհը, իբրև նուաճող և տէր, այնպէս չէր պահում իրան Հայաստանի մէջ,

որ կարողանար ազգաբնակութեան համակրանքները վայելել։ Լուսաւորված եւրոպացիները վարվում էին հայերի հետ, ինչպէս մի բարբարոս ազգի հետ։ Դեռ Քսենոփոնի զինուորները իրաւունք էին համարում խլել հայերից այն ամենը, ինչ հաւանում էին։ Հռոմայեցիները յաճախ նենգ և ստոր արարքներով վրդովում էին հայերին։ Բաւական է միայն յիշել Անտոնիոսին, որ անաջողութեան հանդիպելով պարսկական արշաւանքի մէջ, իր բարկութիւնը թափեց Տիգրանի որդի Արտաւազդի վրա, որ հռոմայեցիների դաշնակիցն էր։ Խաբէութեամբ բռնելով Արտաւազդին, Անտոնիոսը տարաւ նրան Եգիպտոս՝ իր սիրուհի Կլէօպատրային սիրաշահելու համար և սրա կամքով էլ սպանեց անմեղ թագաւորին։

Այդ ստորութիւնը կատաղեցրեց հայերին․ Արտաւազդի որդին հրամայեց կոտորել Հայաստանում գտնվող հռոմայեցիներին, իսկ Հռոմը, ի հարկէ, իր միջոցները ձեռք առաւ Հայաստանը նորից խաղաղացնելու համար։ Երկրում ծագեցին ներքին խռովութիւններ, որոնց ժամանակ սպանվեց Արտաւազդի որդին։ Թէև խաղաղվեց երկիրը, թէև հռոմայեցիները տէր մնացին, բայց Հայաստանում ատելութիւնը և ընդդիմութիւնը հռոմայեցիների դէմ չը պակասեց։

# Ա.

*Քրիստոնէութիւնը իբրև եւրօպական կրօն։—Եկեղեցու առաջադիմական ջանքերը և յոյների կատարած դերը այդ գործերի մէջ։—Քրիստոնէութիւնը հալածվածից դառնում է տիրապետող։—Եկեղեցական շարժումներ։*

---

Չորրորդ դարի սկզբում համաշխարհային պատմութեան մէջ նկատելի է դառնում նոր, մեծ ոյժի յաղթանակը։ Քրիստոնէական կրօնը զարգացած է, այլ ևս հալածվող ու գաղտնի մի վարդապետութիւն չէ։ Շուտով նա դարձաւ պաշտօնական կրօն հռոմէական ահագին պետութեան մէջ և սկսեց արագ կազմակերպվել, տիրապետութեան հասնել և նուաճումներ անել։

Ի՞նչ էր բերում այդ նոր կրօնը։

Ֆրանսիացի գիտնական Րընանը իր մի ճառի մէջ ասում է. «Քրիստոնէութիւնը այն մտքով, ինչպէս հասկանում է հաւատացեալների ահագին մեծամասնութիւնը, իսկապէս հնդկա-եւրօպական ստեղծագործութեան արդիւնք է»։ Եւ դա ճիշտ է։

Երևան գալով սեմական ցեղի մէջ, քրիստոնէութիւնը երկար ժամանակ չը մնաց Պալէստինի քարացած հրէութեան սեփականութիւն։ Նոր կրօնը իր սկզբունքներով չէր էլ կարող այդպէս սահմանափակված մնալ։ Քրիստոսի մահից յետոյ նրա աշակերտները Երուսաղէմում հիմնեցին առաջին եկեղեցին և հրէաները շարունակեցին հաղորդել նրան իրանց ազգային գոյնը։ Գաղութից ի վեր հրէութեան իղձալն է եղել կղզիանալ, բաժանվել աշխարհից իբրև Աստուծու ընտրած մի հատիկ ժողովուրդ, որ բարձր է ամենքից, ուրեմն և երկնքի խնամքները միայնակ պիտի վայելէ։ Նոր եկեղեցու մէջ հրէան մնում էր հրեայ, նոյնպէս առանձնացած, նոյնպէս հպարտացած։ Նա չէր ընդունում որ Մովսէսի օրէնքները ջնջված են Քրիստոսի ձեռքով և հաստատված էր որ հին, նախանձոտ Եհովան ու Քրիստոսի հաշտեցնող, ազատութիւն և հաւասարութիւն քարոզող վարդապետութիւնը մի և նոյն սկզբունքներն են։ Տասն և հինգ հրեայ եպիսկոպոսներ, որոնք Երուսաղէմի եկեղեցու առաջնորդներն էին, թլփատված մարդիկ էին. քրիստոնեայ հրէայի համար Երուսաղէմի տաճարը նուիրական էր։ Հեթանոսները չէին կարող մտնել եկեղեցուն. նոյն իսկ խտրութիւն կար տեղացի և օտարերկրացի, օտար լեզուով խօսող հրէաների

մէջ. վերջիններս ամէնքի համբերող հոգի ունէին և յարատեւութիւն էին պահպանում հեթանոսների հետ, ուստի և Երուսաղէմայի ուղղափառ հրէութեան համար ատելի էին։

Երուսաղէմում յարուցած հալածանքները հանում են քրիստոնէութիւնը լծացած հրէականութեան գրկից. առաքեալները և նրանց աշակերտները քարոզչական գործունէութիւն են սկսում Պալեստինի սահմաններից դուրս, հիմնում են եկեղեցիներ, որոնք բազմաթիւ հեթանոսներ են ընդունում իրանց մէջ։ Միջերկրականի ափերում ապրող զանազան ազգերն ու ցեղերը մասնակից են դառնում նոր կրօնական շարժման և առաջ են գալիս նոր հոսանքներ ու գաղափարներ։ Հրէական քրիստոնէութիւնը համարվում է հերձուած, եկեղեցին այլ ևս Երուսաղէմից չէ ստանում ցուցմունքներ, հրահանգներ։ Ալէքսանդրիան, Անտիոքը, Եփեսոսը, Հռոմը քրիստոնէութեան նշանաւոր կենտրոններ են. այդ տեղերի մեծ եկեղեցիները մշակում են դաւանաբանական հիմունքներ։ Ամենամեծ դերը այդ եռանդուն շարժման մէջ կատարում են յոյները և յունական գիտութիւնը։ Առաջին դարից երևան են գալիս փիլիսոփայական և աստուածաբանական վէճեր, որոնց նպատակն էր պարզել Քրիստոսի աստուածային առաքելութեան միտքը,

նրա անձնաւորութիւնը, նրան աշխարհ ուղարկող գերագոյն էակի յատկութիւնները։ Իր նոր, վտանգաւոր ախոյեանի դէմ զինվում է և հեթանոսութիւնը։ Բայց քրիստոնէական կրօնը այդ վէճերի ու իրարանցումների մէջ ոյժ և պատրաստականութիւն է ձեռք բերում։ Նա եռանդով գործում է, ծիսական, դաւանական և վարչական սիստեմներ է ստեղծում, աշակերտում է յունական փիլիսոփայութեան, թէև դա հեթանոս մտքի արտադրութիւն էր, և վերցնում, իւրացնում է նրանից այն, ինչ հարկաւոր էր եկեղեցուն՝ նրա գոյութիւնը գիտական հիմքերի վրա ամրացնելու համար։

Չորրորդ դարում քրիստոնեաների մտաւոր պատրաստութիւնը այնքան նշանաւոր առաջադիմութիւն էր արել, որ վերացական, բարձր հարցերը քննելու և պատճառաբանելու համար հրապարակական մեծ ժողովներ են գումարվում։ Սկսվում է տիեզերական ժողովների շրջանը, որ ահագին ոյժ է տալիս եկեղեցուն, կազմակերպում ու պատրաստում է նրան մի համաշխարհային տիրապետութեան համար։

Թէ որքան շիտակութիւն ու ճշմարտութիւն կար այդ շարժումների մէջ, թէ ինչպէս էին ձևակերպվում այն կրօնական ճըշմարտութիւնները, որոնք ազգերի և լեզու-

ների համար պարտաւորական, անսխալ պիտի հրատարակվէին, թէ ինչ մարդիկ ինչ հանգամանքների մէջ էին այդ կանոնները խմբագրողներն ու հրատարակողները,—մեր այս աշխատութեան սահմաններից դուրս է։ Մի կողմ թողնենք այդ բոլոր նշանաւոր փաստերը։ Թողնենք որ մնայ միայն իրողութիւնը։

---

## Բ.

Քրիստոնէութիւնը Հայաստանում։—Դա ժողովրդական շարժում չէր։—Թագաւորի հրամանով և զօրքերով։—Հեթանոսութեան դիմադրութիւնը։—Նա չը ջնջվեց բոլորովին։—Հեթանոսասէր կուսակցութիւն և Պարսկաստան։—Ժողովուրդը տգէտ է։—Գրիգոր Լուսաւորչի զիջողութիւնները և ձեռք առած միջոցները։—Հեթանոսական յիշատակարանների ոչնչացում, յոյն-ասորական դպրոցներ, օտար ուսումունք, օտար լեզու։—Քրիստոնէութիւնը չէ ժողովրդականանում։—Ամբողջ չորրորդ դարը հեթանոսութեան մրցումն է քրիստոնէութեան դէմ։—Փաւստոսի մի նկարագրութիւնը։—Եկեղեցական իշխանապետութիւն ժառանգական դինաստիայի ձեւով։

---

Չորրորդ դարի սկզբում քրիստոնէութիւնը մուտք է գործում Հայաստան։ Նա գալիս էր արեւմուտքից, արեւմտեան աշխարհայեցողութիւններն ու գաղափարներն էր բերում։ Այն, ինչ դարերի ընթացքում չը կարողացան անել Ալէքսանդր Մակեդօնացին և նրա յաջորդները, հռոմէական լեգէօնները, կատարեց մի քրիստոնեայ համեստ քարոզիչ։ Եւրօպականութիւնը զէնքի ոյժով, աշխար-

հակալութեան թևերի վրա մեր երկրում հիւրընկալութիւն չը գտաւ, իսկ երբ հեզ ու խաղաղ կրօնի կերպարանքով մօտեցաւ մեր աշխարհին, նրա բոլոր սահմանները բաց գտաւ և ներս մտաւ։

Բայց դա մի ժողովրդական շարժում չէր, այլ սկսվեց վերևից, արքունիքից և ազնուականութիւնից։ Տարաբախտաբար, մենք չունենք հայերի քրիստոնէութիւն ընդունելու ճիշտ պատմութիւնը. եղած տեղեկութիւնները մեծ մասամբ աւանդութիւններ են, որոնք գրի առնվեցան մի դար յետոյ, այն էլ հոգևորականների ձեռքով։ Բայց որքան էլ եկեղեցականների ջերմեռանդութիւնը հրաշքներով ու գերբնական երևոյթներով է շաղախել քրիստոնէութեան մուտքի պատմութիւնը, մենք հնարաւորութիւն ունենք նոյն իսկ այդ աղճատ պատմուածքներից հետևեցնել, որ գործը Հայաստանում այնպէս չը գնաց, ինչպէս նկարագրված է։ Քրիստոնէութիւնը հրաշքով, հեշտութեամբ չը մտաւ Հայաստան։ Հինը, հեթանոսականը, ծխի պէս չը ցնդեց խաչի նշանի առաջ, այլ երկար դիմացաւ, մաքառեց և տեղի տուեց մի դար և աւել տևած մրցումներից յետոյ։

Կրօնը անհատական խղճի, համոզմունքի վրա է ազդում։ Հայաստանի մէջ առաջ

էլ քարոզչական փորձեր արել էին քրիստոնէութիւն տարածողները, բայց միայն Գրիգոր Լուսաւորիչը առանձին աջողութիւն ունեցաւ, կարողանալով ազդել ուղղակի հայոց թագաւորի վրա։ Իրաւունք ունի Մովսէս Խորենացին, երբ համեմատելով Տրդատ թագաւորին Գրիգոր Լուսաւորչի հետ, առաւելութիւնը թագաւորին է տալիս, որովհետև, ասում է նա, «համոզական կամ ստիպողական խօսքով նուաճելու կողմից թագաւորն աւելի շնորհ ունէր. որովհետև հաւատի համեմատ նա չէր պակասեցնում գործը»։ Լոկ խօսքը առանձին մեծ արդիւնքներ չէր ցոյց տայ, եթէ նրա հետ միացած չը լինէր ուժեղ թագաւորի գործը—հրամանը, զօրքը,— այսպէս է եղել ամեն տեղ, ուր քրիստոնէութիւնը. պետական կրօն էր հրատարակվում։

Դիմադրութիւնը դիմադրում էր։ Հայոց մեհեանները, շրջապատված բարձրաբերձ պարիսպներով, քրմական զօրքեր էին հանում նոր կրօնի առաջեալների դէմ։ Հայոց դարձի այն առասպելախառն պատմութիւնը, որ հասել է մեզ Ագաթանգեղոսի անունով, ասում է թէ դրանք զօրքեր, մարդիկ չէին, այլ դևեր։ Այսպէս, Երէզ աւանում, ուր հայ թագաւորների մեծ և բուն մեհեաններն էին գտնվում, Գրիգորի առաջ,

տում է Ագաթանգեղոսը, դուրս եկան «դևեր, որոնք վահանաւոր զօրքի նմանութիւն ունէին և մարտնչում էին, մեծագոչ աղաղակներով լեռներն էին թնդացնում»: Քրիստոնեայ հոգևորականի համար ինչ հեթանոսական է, նա դև է. բայց մենք պիտի ջնջենք այդ բառը, և այնուհետև պարզապէս դուրս կը գայ որ մեհեանների վահանաւոր զօրքերը կանոնաւոր պատերազմ էին մղում թագաւորի դէմ: Այսպիսի կռիւներ տեղի ունեցան մի քանի մեհեաններում:

*Ուրեմն*, առաջին կարևոր հանգամանքը այն է, որ երկրի գոնէ մի մասը բացարձակ ընդդիմութիւն ցոյց տուեց և նոյն իսկ զէնք էլ բարձրացրեց իր թագաւորի դէմ: Ագաթանգեղոսը պատմում է որ յաղթված դևերը փախչում էին դէպի Մարաստանի կողմերը: Այս էլ ճիշտ ցոյց տուած մի ուղղութիւն է: Մարաստանը Պարսկաստանի մի մասն է. և ուր կարող էին փախչել անբաւական տարրերը, եթէ ոչ Պարսկաստան, որի կրօնը այնքան մօտիկ ազգակցութիւն ունէր հայոց կրօնի հետ: Նշանակում է որ Հայաստանի մէջ բաւականաչափ պարարտ հող մնաց՝ նոր կարգերի դէմ մի զօրեղ ընդդիմադիր կուսակցութիւն կազմելու համար: Եւ որ գլխաւորն է՝ այդ կուսակցութիւնը կարող էր հովանաւորութիւն և աջակցութիւն

գանել պարսից կառավարութեան կողմից։ Պարսկաստանը շարունակում էր նայել Հայաստանին իբրև մի երկրի, որ իր սեփականութիւնն էր կազմում և որի համար կռիւներ էր մղել Հռոմի դէմ։ Այն ժամանակ, երբ քրիստոնէութիւնը մուտք էր գործել Հայաստան, Պարսկաստանում գահի վրա հաստատուել էր Սասանեան տոհմը, որ նոր ոյժ տուեց պարթևների ժամանակ թուլացած զրադաշտական կրօնին, գարձրեց նրան պարսկական պետութեան հիմք։ Պարսիկ հոգևորականութիւնը, միացած ազնուականութեան հետ, մի շատ ուժեղ տարր էր կազմում երկրի կառավարութեան մէջ։ Սասանեան թագաւորները պիտի ենթարկվէին այդ տարրին, եթէ կամենում էին հանգիստ մնալ իրանց գահի վրա, որովհետև գահ բարձրացնողները մոգերն ու ազնուականներն էին, և նրանց համար էլ ոչինչ դժուարութիւն չէր գահից զրկել այն թագաւորներին, որոնք չէին հնազանդվում նրանց։

Զրադաշտական քաղաքականութիւնը սկզբում բարեհաճ էր դէպի քրիստոնէութիւնը. հռոմէական պետութեան մէջ հալածվող քրիստոնեաները ապաստան էին գտնում Պարսկաստանում։ Բայց երբ քրիստոնէութիւնը պաշտօնապէս ընդունվեց Հռոմի պետութեան մէջ, Պարսկաստանի վերաբերմուն-

քը արմատապէս փոխվեց։ Քրիստոնեաները, ի հարկէ, սրտով ու մտքով հռոմայեցիների կողմն էին և այս բնական հանգամանքը դարձաւ Սասանեան թագաւորների համար մըշտական կասկածների աղբիւր։ Նրանք, ի հարկէ, չէին կարող թոյլ տալ որ իրանց պետութեան մէջ գտնվեն այնպիսի տարրեր, որոնք կրօնակցութեան պատճառով շարունակ հակված էին դէպի Հռոմը, Պարսկաստանի այդ վաղեմի թշնամին։ Այս պատճառով էլ Հայաստանի քրիստոնեայ դառնալը Պարսկաստանին մեծ անհանգստութիւն էր պատճառում և նա աշխատում էր որ նոր կրօնը չը հաստատվի հայերի մէջ։

Գանք երկրորդ խոշոր հանգամանքին։

Մի ժողովրդի ընդունել են տալիս քրիստոնէութեան նման մի բարդ—վերացական կրօն, որի շօշափած գաղափարները հասունացած մտքին են կարող մատչելի լինել։ Իսկ այդ ժողովուրդը անկիրթ ու խաւար էր։ Ագաթանգեղոսը, առանց այլեայլութեան, անուանում է հայ ամբոխը «գազանամիտ, վայրենադոյն, ճիւաղաբարոյ»։ Գրիգոր Լուսաւորիչը, ի հարկէ, շատ լաւ էր հասկանում մի այդպիսի ժողովրդի մէջ արմատական փոփոխութիւն մտցնելու դժուարութիւնները։ Եւ մի շարք միջոցներ է ձեռք առնում, որը հաշտեցնող, զիջող, որը բռնի։ Ոչ մի տեղ

դեռ օրինակ չէր եղել որ մի օտար, եկուոր տիրապետութիւն հաստատվելու աջողութիւն գտնէր առանց տեղական, բնիկ կարգերին զիջողութիւններ անելու։ Այսպէս արաւ և քրիստոնէութիւնը։ Նա նուիրագործեց Նաւասարդ ամսում կատարվող ազգային մեծ տօնը և քրիստոնեայ հայը ստացաւ մի քանի քրիստոնէացրած պատարիկներ իր հին, հեթանոսական կրօնից. այսպէս են մեռելների պաշտամունքը, զոհաբերութիւնը։

Մնացած միջոցները անհամբերողութեան և չափազանցութիւնների կնիքն էին կրում, թէև պէտք է ասել որ աւելի խիստ ու անողոք էին արևմտեան հոգևորականները, երբ պէտք էր հալածել հեթանոսութիւնը։ Նոր կրօնի ամենահզօր հակառակորդը դարաւոր անցեալն էր, և Գրիգոր Լուսաւորիչը, ինչպէս և նրա յաջորդները, ամեն խստութեամբ զինվեցին այդ անցեալի դէմ։ Նրանք քանդեցին և ոչնչացրին հեթանոսութեան բոլոր յիշատակարանները, ոչինչ չը խնայեցին, որպէս զի ժողովրդի աչքի առաջ չը մնայ անցեալը յիշեցնող մի շիւղ անգամ։ Երկիրը զրկվեց դարաւոր կեանքի և կուլտուրայի բոլոր նշաններից ու վկաներից, որոնք պիտի լուսաւորէին անցեալի կարևոր կենսական հարցերը, ազգի քաղաքական ու մտաւոր կացութեան հանգամանք-

ները։ Հայի անցեալը կորչում էր անդառնալի կերպով։

Այրել ու անհետացնել նիւթական մնացորդները հեշտ էր, բայց ժողովուրդը միայն դրանց միջոցով չէր կապված իր հին սրբութիւնների հետ։ Նա ունէր սիրտ։ Պէտք էր նրան փոփոխել, կրթել ուրիշ կերպ։ Գրիգոր Լուսաւորիչը այս էլ լաւ հասկացաւ, բայց ինչ արաւ։ Բերել տուեց բազմաթիւ յոյն և ասորի հոգևորականներ, նրանց յանձնեց ժողովրդի կրթութեան, վերածնութեան գործը։ Բացվեցին շատ դպրոցներ, ուր հայերը, իբրև սեփական դպրութիւն չունեցող ժողովուրդ, պիտի սովորէին ասորական և յունական լեզուները և դրանց միջոցով ծանօթանային քրիստոնէական գրքերի հետ։ Դա մի շատ անբնական գրութիւն էր։ Օտար ուսուցիչներ, օտար վարք ու բարք, խորթ ուսմունք, խորթ ու անհասկանալի լեզուներ։ Անհատներ կարող էին պատրաստվել այդտեղ, բայց մի ժողովուրդ չէր կարող հրաժարվել իր ազգային բոլոր նուիրական ստացուածքներից և յանկարծ հանդիսանալ մի նոր ազգ՝ օտար լեզուով և օտար պաշտամունքով։

Քրիստոնէութեան մուտքի պատմութեան մէջ առանձնապէս շեշտվում է մի այսպիսի փաստ։ Գրիգոր Լուսաւորիչը քուրմերի որդիներին տուեց իր բացած դպրոցները,

որպէս զի նրանցից քրիստոնեայ հոգևորա-կաններ պատրաստուէին։ Դա մի իմաստուն միջոց էր, բայց մի և նոյն ժամանակ և ապացոյց՝ որ համբերողութեան ոգի չը կար։ Հայաստանի մեծ վերանորոգիչը շրջում էր զինուորական գնդերի հետ և նրանց աջակցութեամբ էր քանդում հինը, հաստատում նորը։ Դարձը միանգամայն բռնի էր, նոր կրօնի ժողովրդականացման միջոցները, մանաւանդ կրթութեան գործը, արհեստական էին, մակերևոյթային։ Կային դպրոցներ, կային ուսուցիչներ և աշակերտներ, բայց մի ամբողջ դարի ընթացքում Հայաստանի մէջ մատենագրութիւն չառաջացաւ. իսկ ի՞նչ կարող էր անել քրիստոնէութիւնը առանց մատենագրութեան։ Նշանակում է որ ժողովուրդը, իբրև ստեղծագործող ոյժ, իր սրտի և մտքի կարողութեամբ չէր փարած իր ընդունած կրօնին։

Այս է պատճառը որ մեր չորրորդ դարը ամբողջովին ներկայացնում է հեթանոսութեան դանդաղ հոգեվարք և քրիստոնէութեան վերին աստիճանի վտանգաւոր ճգնաժամ։ Մենք տեսնում ենք մի պաշտօնական քրիստոնէութիւն, որ պահվում է արտաքուստ և չէ կարողանում խոր արմատներ տարածել ժողովրդի սրտի մէջ։ Այս դրութիւնը շատ պարզ և գեղեցիկ կերպով նկա-

*րագրում է ականատես պատմագիր Փաւստոս Բիւզանդացին։ Հայերը, ասում է նա, սկըզբից և եթ քրիստոնէութեան անուն ընդունեցին ոչ թէ ջերմեռանդ հաւատով, այլ հարկից ստիպված, իբրև մարդկային մի մոլորութիւն։ Չը կար գիտակցութիւն, յոյս հաւատ. մի քիչ բան գիտէին միայն նրանք, որոնք փոքր ի շատէ տեղեակ էին յոյն կամ ասորի լեզուներին։ Իսկ որոնք զուրկ էին այդ գիտութիւնից—ժողովրդի, նախարարների, գիւղացիների բազմութիւնը—դրանք, եթէ վարդապետները օր ու գիշեր նստէին և ամպերի պէս վարդապետութիւնների մի հեղեղ թափէին նրանց վրա, դարձեալ ոչինչ, «ոչ մի բան, ոչ կէս բան, ոչ մի չնչին յիշատակ ու նշոյլ անգամ» իրանց լսածից չէին կարող մտքի մէջ պահել։*

*Այսպիսի դրութիւնը շատ նպաստաւոր էր պարսկական կուսակցութեան համար։ Անունով միայն քրիստոնեայ ժողովուրդը շարունակ դէպի յետ էր նայում, դէպի իր հայրենի աստուածներն ու հերոսները և ամեն յարմար դէպքում հրապարակ էր հանում իր հեթանոսական ձգտումները։*

*Կար, վերջապէս, և մի* Եrrnrդ *խոշոր հանգամանք, որ մեծ նշանակութիւն ստացաւ մանաւանդ երկրի ներքին գործերի մէջ։ Գրիգոր Լուսաւորիչը, հաստատելով կաթո-*

դիկոսական աթոռ, իր ժառանգներին վերապահեց այդ հոգևոր բարձրագոյն իշխանութիւնը։ Հիմնվեց մի կրօնական ժառանգական միապետութիւն, որի նմանը չէք գտնի ոչ մի քրիստոնեայ եկեղեցու պատմութեան մէջ։ Դա մի ամբողջ դինաստիա էր իր յատուկ շահերով և աւանդութիւններով, որոնք սկսեցին ընդհարվել գոյութիւն ունեցող դինաստիայի, թագաւորական տան շահերի հետ։ Մի խօսքով, առաջացաւ այն դրութիւնը, որ ձևակերպվում է «պետութիւն պետութեան մէջ» խօսքերով։

Պէտք է միշտ յիշել Գրիգոր Լուսաւորչի և նրա տոհմի մեծ երախտիքները, կատարած անգին դերը։ Հայութեան լուսաւորիչը ոչ միայն մի նոր կեանքի հիմք դրեց այս ասիական երկրում, այլ և նախահայր եղաւ մի տաղանդաւոր, եռանդուն ու անխոնջ սերունդի, որ շարունակեց սկսածը, հսկայական ջանքեր գործ դրեց եկեղեցու գոյութիւնը պահպանելու այնպիսի ծանր հանգամանքների մէջ, երբ համարեա ամեն ինչ պատրաստ էր քրիստոնէութիւնը տապալելու։

Այս բոլորը չը պէտք է մոռանալ։ Բայց չը պէտք է մոռանալ և այն ճշմարտութիւնները, որոնք բղխում են պատմական փաստերից։ Լուսաւորչի դինաստիան խոշոր հետ-

քեր թողեց չորրորդ դարում թէ իր դրական կողմերով, որոնք բազմաթիւ էին և թէ իր մոլորութիւններով ու միակողմանի հայեացքներով, որոնք նոյնպէս կային։ Նա եղել է մի ամուր ժայռ, որ շատ գեղեցիկ գործեր է պաշտպանել, բայց և մի այնպիսի ժայռ, որին ընդհարվում էր աշխարհական միապետութիւնը։ Այդ ընդհարումները, կնքված նոյն իսկ երկու կողմերի արիւնով, Հայաստանի ներքին կեանքի ամենազօրեղ փաստերն էին և, տարաբախտաբար, թուլացնում ու անկում արագացնող փաստեր։

Ահա ինչ դրութիւն էր ստեղծվել քրիստոնէութեան մուտքի հետ։ Մեր յիշատակած երեք խոշոր հանգամանքները, խառնվելով իրար հետ, մրցումներ ու յուզմունքներ առաջացրին մեր ասիական ճահճացած կեանքի մէջ։ Հայաստանի ներքին կեանքը, որ մինչև այդ պատմական մի հանելուկ, մի անյայտութիւն էր, սկսում է եռալ, խոշոր երևոյթներ արտադրել ու այսպիսով մի առանձին հետաքրքրական կերպարանք է տալիս չորրորդ դարին, այն զարմանալի նշանաւոր դարին, երբ մեր ազգը մի կողմից մտաւոր վերածնութեան էր կոչվում, իսկ միւս կողմից՝ մեռնում էր քաղաքականապէս։

———

## Գ.

Գրիգոր Լուսաւորչի տոհմը իբրև խոշոր հողատէր ազնուականութիւն։—Դինաստիական շահեր և պարտաւորութիւններ։—Պատիւ և ազդեցութիւն։—Եկեղեցին ու պետութիւնը չը միացան իրար հետ։—Հայ սուլթանիզմը հնացած, ուժասպառ։—Կռիւ եկեղեցու դէմ։—Տիրանի անգթութիւնները։—Քաղաքական պատճառ։—Շապուհ երկրորդ, հալածանք յունական քրիստոնէութեան դէմ։—Ալբիանոսի կաթողիկոսական տոհմը իբրև հակադրութիւն Լուսաւորչի յունասէր տոհմի դէմ։—Դա պահպանողական-ազգային կուսակցութիւն է, հաւատարիմ արքունիքին։—Պարսկական կուսակցութեան զոհերը։—Նախարարների բաժանումը։

---

Տրդատ թագաւորը նուիրեց Գրիգոր Լուսաւորչին մեծ մեծ կալուածներ, նրա յաջորդները աւելացրին այդ հողային հարստութիւնները։ Փաւստոսի ասելով, ամբողջ տասն և հինգ գաւառներ էին պատկանում Լուսաւորչի տոհմին, և դրանք երկրի ամենագեղեցիկ տեղերն էին։ Ահա այն հիմքը, որի վրա հաստատուեց կրօնական դինաստիայի ույժը։ Կաթողիկոսական գահի վրա նստողը

մի նշանաւոր աշխարհական իշխան էր, մի խոշոր կալուածատէր, որ ազդում էր ոչ միայն իր սրբազան պաշտօնով, այլ և հարստութեամբ։

Պահպանել ժառանգական իշխանութիւնը՝ յայտնի պարտաւորութիւն էր ժառանգների համար։ Լուսաւորչի ժառանգները, գլխաւորապէս դինաստիական նկատումներով, ամուսնացող հոգևորականներ էին (սակաւ բացառութեամբ) և նրանց համար տոհմային առաջնակարգ հարց էր արու զաւակ ունենալը։ Լուսաւորչի յաջորդ Վրթանէսը մեծ մտատանջութեան մէջ էր, ինչպէս վկայում է Փաւստոսը. նա հասել էր ծերութեան հասակին, բայց դեռ ժառանգ չունէր։ Երկինքը լսում է ծերունու աղաչանքները և երկու արու զաւակ է շնորհում նրան։ Դրանցից մէկին, Յուսիկին, հայրը շտապում է, նոյն իսկ դեռ տղայ հասակում, ամուսնացնել Խոսրով թագաւորի թոռան հետ, և այդպիսով ստեղծվում է ազդելու մի նոր միջոց— խնամիութիւն արքունիքի հետ. այնուհետև հայոց կաթողիկոսը ոչ միայն Լուսաւորչի սերունդ պիտի լինէր, այլ և թագաւորական տոհմի ներկայացուցիչներից մէկը։ Աւելի բարձր և ազդեցիկ դիրք հազիւ կարելի լինէր գտնել հայոց իշխանական դասի մէջ։ Դինաստիական պարտաւորութիւնները այն-

քան զօրեղ էին, որ Յուսիկը, չը նայած որ զզուանք էր զգում դէպի ամուսնութիւնն ու իր կինը, հարկադրված եղաւ, ինչպէս պարտք է համարել արձանագրել Փաւստոսը, գոնէ մի անգամ ամուսնական պարտք կատարել. և երբ ծնվում են երկու որդիներ, նա միանգամայն հեռանում է կնոջից։

Նոյն իսկ անձնական յատկութիւնները նշանակութիւն չունէին ժառանգների համար։ Յուսիկի երկու որդիները փչացած և անբարոյական մարդիկ էին։ Նրանք հոգևոր կոչում չընտրեցին, այլ դարձան զինուորական, հարուստ կալուածատէրերին յատուկ կեանք էին վարում, հարճեր էին պահում, անառակ կանանց հետ զինեխմութեան էին տալիս իրանց։ Բայց և այդպէս, կային մարդիկ, որոնք հարկադրում էին դրանց ընդունել հոգևոր կոչումը, շարունակել կաթողիկոսութիւնը... Կարևորը այդ էր, կրօնական իշխանապետութեան անընդհատ շարունակութիւնը։

Հասկանալի է թէ որքան ծանր մտատանջութիւններով պիտի պաշարվէր այն մարդը, որին վիճակված էր Լուսաւորչի տոհմի վերջին ուղիղ ժառանգը լինել։ Դա ս. Սահակն էր։ Ղազար Փարպեցին պատմում է նոյն իսկ Սահակի խօսքերով թէ որքան անմխիթար ու տխուր էր մեծագործ ծերու-

նին, որովհետև մի հատ աղջիկ էր նրա ամուսնութիւնից ծնվել։ Աստուծուն աղաչում էի —ասում է նա,—«շնորհել ինձ արու որդի ինչպէս իմ նախնիքներին, որոնք ինձանից առաջ ամուսնացած էին՝ որդեծնութեան համար»։ Աղաչանքները անկատար են մնում, և ծերունի հայրապետը իր կեանքի վերջին օրերում իր տոհմային բոլոր կալուածները կտակում է ոչ թէ եկեղեցուն կամ ազգին, այլ իր աղջկան, որ Մամիկոնեան հարուստ տոհմի հարսն էր։

Հարուստ ու շքեղ իշխանապետութեան չէր պակասում, իհարկէ, և մեծ հեղինակութիւնը։ Եթէ չը հաշւենք Յուսիկի որդիներին, որոնք, բարեբախտաբար, չարատաւորեցին կաթողիկոսական աթոռը, Լուսաւորչի միւս բոլոր ժառանգները ահագին ազդեցութիւն և իշխանութիւն ունէին նոյն իսկ աշխարհական գործերի վրա։ Դրանք պարզ կրօնաւորներ չէին, այլ իշխող ազնուականներ, քաղաքական գործիչներ։ Վրթանէսը Խոսրով թագաւորի խորհրդակիցն ու բարձակիցն էր, Յուսիկը այնքան ոյժ ունէր իր մէջ, որ Տիրան թագաւորին մերժեց եկեղեցուց, իսկ Ներսէս Մեծը տնօրինում էր պետութեան ճակատագիրը. նա համարվում էր «աշխարհի գլուխ», Բիւզանդիայում անգամ գիտէին որ հայոց թագաւորը և Ներսէսը մի

և նոյն են։ Կարճ ասելով, կրօնական իշխանապետութիւնը Լուսաւորչի տոհմի ներկայացուցիչների միջոցով արտայայտեց մի թարմ և ուժեղ կազմակերպութեան ամբողջ կենսունակութիւնը և համարեա նսեմացրեց աշխարհական միապետութիւնը. բնական էր որ մի այդպիսի մարմին աւելի ժողովրդականութիւն վայելէր, աւելի հաւատ ու վըստահութիւն ներշնչէր, քան Արշակունիների տոհմը։

Չը մոռանանք որ մեր հին սուլթանիզմը անփոփոխ մնաց, որ դա արևելեան սկըզբունքերով ապրող մի անկարգ բռնապետութիւն էր։ Քրիստոնէութիւնը նրա համար օրհասական մի նորութիւն չէր լինի, եթէ նա տոգորվէր այդ մարդասէր, ռամկավարական կրօնի ոգով, յարմարվէր նրա պահանջներին, վերանորոգէր իրան։ Բայց մեր սուլթանիզմը անշարժ մնաց իր հին աւանդութիւնների մէջ, ուստի երկու իշխանապետութիւնները, փոխանակ իրար ձեռք տալու, միասին և համերաշխ գործելու երկրի բարեկարգութեան և առաջադիմութեան համար, հակառակորդի դիրք են բռնում իրար դիմաց։ Եկեղեցին մեզանում չը բռնեց այն դիրքը, ինչ ունէր, օրինակ, Բիւզանդիայում, ուր թագաւորը համարվում էր եկեղեցու գլուխ և նրա իշխանութիւնը եկեղեցակա-

նութեան համար մի այնպիսի սրբազան ա-
ւանդ էր, որ պէտք էր պաշտպանել նրան,
ինչպէս պաշտպանվում էր ինքը, քրիստոնէ-
ութիւնը։ Մեզանում այդպէս չէր։ Երկարա-
տև եղելութիւնները տրամադրում են մեզ
կարծելու, որ ընդհակառակն, Հայաստանում
եկեղեցին և պետութիւնը մրցում էին գեր-
իշխանութեան համար, մէկն ուզում էր միւ-
սին տապալել։ Ինչո՞ւ էր այսպէս։

Ղազար Փարպեցին Արշակունիների
թագաւորութիւնը նմանեցնում է հնացած
շորի։ Դա մի աչող համեմատութիւն է։ Հին
ժամանակներում էր կարված այդ հագուստը
և երբէք չէր վերանորոգված։ Եւ սակայն նրա
հին հիմքը—սորկութիւնը այժմ տապալված
էր, և տապալողը այն կրօնն էր, որ մուտք
էր գործել երկրի մէջ Գրիգոր Լուսաւորչի
ձեռքով։ Աւելոր սախականութիւնը իր սանձ-
արձակ կամայականութիւններով, իր բռն-
նակալ պաշտամունքներով կանգնած էր մի
կրօնի դիմաց, որ կոչված էր ազգերն ու
թագաւորութիւնները ուղղելու դէպի լոյս,
գաղափարականութիւն։ Նա համարձակ էր,
չէր քաշվում արգելքներից և իր ճանապար-
հի վրա նահատակներ էր փռում։ Իսկ հին
շորը, իբրև հնութիւն, թոյլ ու անկարող էր,
թէև դեռ կարող էր իր իրաւունքները պաշտ-
պանել՝ իր իմացած միջոցներով։

Ս. ՄԵՍՐՈՊ

Առաջին խիստ ընդհարումը տեղի ունեցաւ Յուսիկի կաթողիկոսութեան ժամանակ։ Տրդատն ու նրա որդի Խոսրովը հպատակված էին քրիստոնեայ առաջնորդներին և հանդիստ թագաւորեցին։ Այդպէս չէր Խոսրովի յաջորդ Տիրանը։ Նա կամեցաւ անկախ ու ազատակամ լինել իբրև արևելեան թագաւոր և վերանորոգեց մի անկարգ, օրէնքներից ու իրաւասութիւնից զուրկ բռնապետութեան կարգերը։ Յուսիկը դուրս եկաւ նրա դէմ։ Երիտասարդ, դեռ համարեա երեխայ կաթողիկոսը քննադատում էր Տիրանի և նրա արքունիքի գործերը, պահանջում էր կարգ և արդարութիւն։ Բայց Արևելքում քննադատութիւն չէ թոյլատրվում. սուլթանիզմը միայն ստրկական շողոքորթութիւններ կարող է ընդունել։ Իւրաքանչիւր բողոք, որ բարձրանում է բռնապետի դէմ, ոճիր է։ Տիրանի հրամանով Յուսիկը բարբարոսաբար սպանվեց եկեղեցու մէջ. յետոյ սպանվեց և ծերունի Դանիէլ եպիսկոպոսը, որ Յուսիկի նման բողոքող հանդիսացաւ։ Այդ արիւնը առաջին խրամատը բացեց եկեղեցու և պետութեան մէջ...

Պատմութիւնը մեզ այսպէս է աւանդում այդ առաջին ընդհարման պատճառները։ Բայց մեր պատմութիւնը տենդենցիօզ է, միակողմանի, քանի որ շարունակ հոգևո-

րականների ձեռքով է գրվել։ Մենք կարողութիւն ունենք պատմութեան հաղորդածից մի քանի քայլ առաջ գնալ։ Այդ պատմութիւնը, նկարագրելով Տիրանի մարդասպանութիւնները, չէ ասում թէ նա քրիստոնէութեան թշնամի էր և աշխատում էր ջնջել այդ կրօնը։ Ընդհակառակն, նա ինքը պատմում է թէ ինչ շքեղ հանդէսներով Տիրանը ուղարկեց Յուսիկին Կեսարիա կաթողիկոս ձեռնադրվելու և ինչ ընդունելութիւն ցոյց տուեց նրան վերադարձին։ Մենք տեսնում ենք և այն, որ Յուսիկին սպանել տալուց յետոյ Տիրանը աշխատում էր արժանաւոր յաջորդի ձեռքը յանձնել կաթողիկոսութիւնը և իր մօտ կանչեց ծերունի Դանիէլ եպիսկոպոսին։ Սրան էլ սպանել տալուց յետոյ կաթողիկոսութիւնը չը վերացաւ։ Նշանակում է որ չը կար հալածանք քրիստոնէութեան դէմ. հայոց թագաւորը ամեն յարմարութիւն ունէր նոր կրօնը վերացնելու, բայց չը վերացրեց։ Ինչո՞ւ։

Հայաստանի քաղաքական դրութիւնը չէր փոխվել։ Նա շարունակում էր մնալ կռուախնձոր երկու հզօր հարևանների — Պարսկաստանի և Յունաստանի մէջ։ Հայոց արքունիքը պիտի այդ իրողութիւնը միշտ աչքի առջև ունենար։ Միշտ մի ծանր հարց էր ճնշում նրան.—Ո՞ւմ պէտք է նախապատ-

ւութիւն տալ, որ ազդեցութիւնը պիտի գե-
րակշռող հանդիսանայ։ Երկրի շահերը պա-
հանջում էին որ երկու ազդեցութիւններն էլ
այնքան հաւասարակշռված լինեն, որ հզօր
հարևաններից ոչ մէկը առիթ չունենայ կաս-
կածելու։ Պարսկաստանն ու Բիւզանդիան
շարունակ ընդհարվում էին իրար հետ և
նրանց պատերազմների ամենագլխաւոր ա-
ռիթներից մէկն էր Հայաստանի վրա տի-
րապետելը։ Երկու թշնամի պետութիւնների
մէջ կռուախնձոր դարձած երկրի դրութիւնը,
իհարկէ, շատ դժուար պիտի լինէր, մանաւ-
անդ որ աջողութիւնը կամ մէկի կողմն էր
թեքվում, կամ միւսի։

Դեռ նոր էր քրիստոնէութիւնը մտել
Հայաստան, դեռ Գրիգոր Լուսաւորիչը կեն-
դանի էր, երբ Պարսկաստանի գահը բարձ-
րացաւ Շապուհ երկրորդը, այն սարսափելի
մարդը, որ քրիստոնեաների պատուհասը
դարձաւ։ Շապուհը դեռ շատ երիտասարդ
էր, բայց գտնվում էր պարսիկ հոգևորակա-
նութեան ձեռքին, որ սկսեց գործ ածել նը-
րան՝ իր ֆանատիկոսական ձգտումները ի-
րագործելու համար։ Զրադաշտականութիւնը
ահաւոր պատերազմ յայտարարեց քրիստո-
նէութեան դէմ։ Պարսկաստանի մէջ գտնվող
քրիստոնեաները կոտորածի ենթարկվեցին,
Շապուհը յարձակվեց իր արևմտեան հարևա-

նի վրա և սկսեց մի պատերազմ, որ ընդհատումներով շարունակվեց քսան և հինգ տարի (338—363)։

Բայց պէտք է նկատի ունենալ, որ Շապուհը լոկ մոլեռանդութիւնից և անհամբերողութիւնից դրդված չէր հալածում քրիստոնեաներին։ Աւելի ծանրակշիռ էին քաղաքական նկատումները։ Նա տեսնում էր որ իր հպատակ քրիստոնեաները բացարձակ համակրում են Բիւզանդիային, նա ձեռքի տակ փաստեր ունէր։ Նոյն իսկ իր մայրաքաղաքում Սիմէօն անունով քրիստոնեայ եպիսկոպոսը այնպիսի մի ժամանակ, երբ Պարսկաստանը պատերազմ էր յայտնել Բիւզանդիային, չափազանց խիստ լեզուով խօսեց Շապուհի պէս մի արեւելեան միապետի դէմ։ Այդ էր պատճառը, որ Շապուհը, պատերազմ սկսելուն հետ միասին, սոսկալի հալածանքներ յարուցեց քրիստոնեաների դէմ։ Ցունասէր քրիստոնէութիւնը նրան ատելի էր նրա ամբողջ կեանքի ընթացքում։ Իսկ այդ կեանքը շատ երկարատեւ էր. Շապուհը թագաւորեց 69 տարի (310—379)։

Եւ ահա այսպիսի մի թագաւորի ժամանակ Հայաստանում գերակշռող է հանդիսանում յունական ազդեցութիւնը։ Պէտք է իմանանք որ Գրիգոր Լուսաւորչի տոհմը բացարձակ, չափազանց յունասիրութեան

ներկայացուցիչն էր։ Ճիշտ է, Հայաստանը այդ ժամանակ դեռ բաւական անկախութիւն ունէր, բայց և այդպէս, արհամարհել Պարսկաստանը, որ Բիւզանդիայի համար անգամ մի անհարկու թշնամի էր, կը լինէր մի թոյլ ու անպաշտպան երկրի իսկական շահերը չը հասկանալ։ Տիրանը աշխատում էր հզօր Սասանեանի աչքի առաջ ազատել Հայաստանը կասկածներից։ Դրա համար հարկաւոր չէր վերացնել քրիստոնէութիւնը. բաւական կը լինէր և յունական ազդեցութեան թուլացումը։ Եւ մենք տեսնում ենք մի շատ հետաքրքրական հանգամանք։

Գրիգոր Լուսաւորչի տոհմը ներկայացուցիչ չունէր կաթողիկոսութեան համար, ուստի առաջ եկաւ մի նոր կաթողիկոսական տոհմ—Ալբիանոսի տոհմը։ Ալբիանոսը մէկն էր այն քրմերից, որոնք Գրիգոր Լուսաւորչի ձեռքով մտցրվեցին քրիստոնեայ հոգևորականութեան կարգը։ Կարելի է ենթադրել որ դա հեթանոսական Հայաստանում նշանաւոր տոհմի ներկայացուցիչ էր, որովհետև Լուսաւորչի տոհմից դուրս Ալբիանոսի սերունդն էր միայն, որ ժառանգական կաթողիկոսութիւն ստեղծեց։ Իբրև քրիստոնեայ հոգևորականներ, Ալբիանոսի ժառանգները միանգամայն արժանի էին իրանց կոչման։ Փաւստոսը, խօսելով նրանցից մի քանիսի մասին,

գովում է նրանց վարքն ու բարքը և միայն մի պակասութիւն է գտնում նրանց մէջ—այն, որ նրանք չէին բողոքում արքունիքի դէմ։ Եւ իրաւ, սա նշանաւոր մի հանգամանք է։ Թէ Ալբիանոսի ժառանգներից և թէ ուրիշ հոգևորականներից նրանք, որոնք հասնում էին կաթողիկոսութեան, հաշտ էին ապրում արքունիքի հետ, ոչինչ դժուարութիւններ չէին յարուցանում։ Հետաքրքրական է մանաւանդ այն, որ այդ կաթողիկոսներից մէկը նոյն իսկ հոգևորականների զգեստը փոխեց, տալով նրան ազգային, գուցէ նոյն իսկ հին քրմական տարազ։

Այս հանգամանքները թոյլ են տալիս ենթադրելու, որ Ալբիանոսի տոհմը ներկայացուցիչ էր աւելի մեղմ, տեղական հայեացքների, մինչդեռ Լուսաւորչի տոհմը, իբրև ջերմ յունասէր, աշխատում էր աւելի մեծ փոփոխութիւններ մտցնել կեանքի մէջ։ Կողմնակից ունենալով Հայաստանում գործող յոյն հոգևորականութիւնը, նա արևմտեան քրիստոնէութեան կուսակցութիւնն էր, որ աւելի լայն քաղաքակրթական հայեացքներ ունէր, ուստի և աւելի շատ պակասութիւններ էր տեսնում հայկական կեանքի մէջ և աւելի եռանդով էր գործում՝ այդ կեանքը արևմտեան գաղափարներով բարեկարգելու համար։ Ալբիանոսի տոհմը և առհասարակ

ներկայացուցիչն էր։ Ճիշտ է, Հայաստանը այդ ժամանակ դեռ բաւական անկախութիւն ունէր, բայց և այդպէս, արհամարհել Պարսկաստանը, որ Բիւզանդիայի համար անգամ մի ահարկու թշնամի էր, կը լինէր մի թոյլ ու անպաշտպան երկրի իսկական շահերը չը հասկանալ։ Տիրանը աշխատում էր հզօր Սասանեանի աչքի առաջ ազատել Հայաստանը կասկածներից։ Դրա համար հարկաւոր չէր վերացնել քրիստոնէութիւնը. բաւական կը լինէր և յունական ազդեցութեան թուլացումը։ Եւ մենք տեսնում ենք մի շատ հետաքրքրական հանգամանք։

Գրիգոր Լուսաւորչի տոհմը ներկայացուցիչ չունէր կաթողիկոսութեան համար, ուստի առաջ եկաւ մի նոր կաթողիկոսական տոհմ—Ալբիանոսի տոհմը։ Ալբիանոսը մէկն էր այն քրմերից, որոնք Գրիգոր Լուսաւորչի ձեռքով մտցրվեցին քրիստոնեայ հոգևորականութեան կարգը։ Կարելի է ենթադրել որ դա հեթանոսական Հայաստանում նշանաւոր տոհմի ներկայացուցիչ էր, որովհետև Լուսաւորչի տոհմից դուրս Ալբիանոսի սերունդն էր միայն, որ ժառանգական կաթողիկոսութիւն ստեղծեց։ Իբրև քրիստոնեայ հոգևորականներ, Ալբիանոսի ժառանգները միանգամայն արժանի էին իրանց կոչման։ Փաւստոսը, խօսելով նրանցից մի քանիսի մասին,

գովում է նրանց վարքն ու բարքը և միայն մի պակասութիւն է գտնում նրանց մէջ— այն, որ նրանք չէին բողոքում արքունիքի դէմ։ Եւ իրաւ, սա նշանաւոր մի հանգամանք է։ Թէ Ալբիանոսի ժառանգներից և թէ ուրիշ հոգևորականներից նրանք, որոնք հասնում էին կաթողիկոսութեան, հաշտ էին ապրում արքունիքի հետ, ոչինչ դժուարութիւններ չէին յարուցանում։ Հետաքրքրական է մանաւանդ այն, որ այդ կաթողիկոսներից մէկը նոյն իսկ հոգևորականների զգեստը փոխեց, տալով նրան ազգային, գուցէ նոյն իսկ հին քրմական տարազ։

Այս հանգամանքները թոյլ են տալիս ենթադրելու, որ Ալբիանոսի տոհմը ներկայացուցիչ էր աւելի մեղմ, տեղական հայեացքների, մինչդեռ Լուսաւորչի տոհմը, իբրև ջերմ յունասէր, աշխատում էր աւելի մեծ փոփոխութիւններ մտցնել կեանքի մէջ։ Կողմնակից ունենալով Հայաստանում գործող յոյն հոգևորականութիւնը, նա արևմտեան քրիստոնէութեան կուսակցութիւնն էր, որ աւելի լայն քաղաքակրթական հայեացքներ ունէր, ուստի և աւելի շատ պակասութիւններ էր տեսնում հայկական կեանքի մէջ և աւելի եռանդով էր գործում՝ այդ կեանքը արևմտեան գաղափարներով բարեկարգելու համար։ Ալբիանոսի տոհմը և առհասարակ

այն կաթողիկոսները, որոնք Լուսաւորչի տանից չէին, կազմում էին տեղական, պահպանողական կուսակցութիւն, որ ոչ միայն չէր ուզում վերանորոգչական ցնցումներ առաջացնել երկրի մէջ, այլ և ձգտում էր հակակշիռ կազմել չափազանց յունասիրութեան դէմ, ազգային բնաւորութիւն տալով քրիստոնէութեան և հաշտ մնալով աշխարհական իշխանութեան հետ։ Այսպիսով այդ կուսակցութիւնը աւելի մօտիկ էր պետական շահերին, և ուժեղ ու ստուար պարսկական կուսակցութիւնը կարող էր գոհ լինել նրանով։

Եկեղեցական այդ քաղաքականութիւնը հաճելի պիտի լինէր և Շապուհի համար, որ հալածում էր ոչ այնքան քրիստոնէութիւնը, որքան նրա տարածած յունասիրութիւնը։ Եւ իրաւ, մենք տեսնում ենք որ ամեն անգամ, երբ Հայաստանը ենթարկվում էր յունական կուսակցութեան, պարսիկները սկսում էին շարժվել, վնասներ հասցնել հայերին։ Խոսրովը, Վրթանէսին իր բարձակից դարձնողը, մի քանի անգամ Հայաստանի վրա պարսկական արշաւանքներ բերել տուեց, թէև խաղաղասէր էր և չար միտք չունէր պարսիկների դէմ, մինչդեռ Տիրանը, Յուսիկին սպանողը, Պարսկաստանից աջակցութիւն ստացաւ՝ հիւսիսային ցեղերի արշաւանքը յետ մղելու համար։ Յունական ազդեցութիւ-

նը գագաթնակէտին հասաւ Արշակ երկրորդի ժամանակ. Պարսկաստանը այդ ժամանակ էլ ամենախիստ հարուածները հասցրեց Հայաստանին։

Եւ այսպէս, ամբողջ հարցն այն էր, թէ կաջողվի՞ տապալել, ընդ միշտ լռեցնել Լուսաւորչի խիզախ ու խիստ ազդեցիկ տոհմը։ Հայ-պահպանողական կուսակցութիւնը, որ բաղկացած էր, ինչպէս ասացինք, Ալբիանոսի ժառանգներից և այլ կաթողիկոսներից, անմիջական կռիւ չը սկսեց Լուսաւորչի տոհմի դէմ։ Եւ աւելորդ էլ էր նրա կռիւը, քանի որ պարսկական կուսակցութիւնը, արքունիքը անում էին ամեն ինչ։ Բացի դրանից, մենք չենք տեսնում որ այդ կաթողիկոսների մէջ եղած լինի առանձնապէս աչքի ընկնող եռանդ, մեծ. ընդունակութիւն։ Դրանք բարեխիղճ մարդիկ էին, և ուրիշ ոչինչ։ Գոնէ այս կարելի է եզրակացնել այն տեղեկութիւններից, որ տալիս է Փաւստոսը, իսկ այս պատմագիրը, չը մոռանանք ասել, յունական կուսակցութեան ջերմեռանդ երկրպագու է։ Յունասէրները մի առանձին վտանգ չէին տեսնում այդ կարգի կաթողիկոսներից, արհամարհում էին նրանց՝ «ստըրուկ ի ստրկաց արքունի» կոչումով, մի շատ բնորոշ և պերճախօս անուն, որ տալիս է Փաւստոսը պահպանողական կուսակցութեան

ներկայացուցիչներից մէկին։

Ո՛չ, Լուսաւորչի տոհմը գիտէր թէ ում դէմ պէտք է կռուել, ով է իր վտանգաւոր թշնամին։ Նա ունէր բաւական փորձ, ճանաչում էր այն կուսակցութիւնը, որ գործում էր Շապուհի աջակցութեամբ քրիստոնէութիւնը մտցնելու օրից։ Դա այն կուսակցութիւնն էր, որը մենք անուանեցինք պարսկական, կամ հեթանոսութեան կողմնակից։ Նա երբէք հանդարտ չէր նստում, անտարբեր ականատես չէր, այլ գործում էր և միջոցների խտրութիւն չը գիտէր։

Նրա առաջին գործը կազմակերպվեց այն օրից, երբ Տրդատը մի քաջ թագաւորից դարձաւ ճգնաւոր, եկեղեցու սուրբ։ Տրդատին, ինչպէս ասում է Խորենացին, սպանեցին հայերը, թոյն խմեցնելով։ Մի ուրիշ, թէև անյայտ, բայց հին գրուածք պարզապէս ասում է թէ սպանողները մի խումբ մարդիկ էին, որոնք Շապուհի հովանաւորութիւնն էին վայելում և որոնց միտքն էր նորից հեթանոսութիւն հաստատել Հայաստանում։ Տրդատը պարսկական կուսակցութեան առաջին զոհն էր։

Երկրորդ փորձը ուղղված էր Գրիգոր Լուսաւորչի որդու դէմ։ Աշտիշատում բացվեց մի մեծ դաւադրութիւն, որին, Փաւստոսի ասելով, մասնակցում էին երկու հազար

մարդիկ։ Դաւադրութեան գլուխ էր կանգնած հայոց թագուհին, Խոսրովի կինը։ Սպանութեան փորձը աջողութիւն չունեցաւ, բայց կուսակցութիւնը իր զէնքը ցած չը դրեց։ Վրթանէսը ազատվեց սպանողի սրից, բայց նրա որդի Յուսիկը արդէն դարանամուտ դաւադրութեան զոհ չը գնաց, այլ ուղղակի եկեղեցում սպանվեց։

Արշակ երկրորդի ժամանակ պարսկական կուսակցութիւնը աւելի ևս ուժեղացաւ։ Նշանաւոր նախարարները բացարձակապէս անցան Շապուհի կողմը։ Ինչպէս տեսանք Փաւստոսի վկայութիւնից, հայ իշխաններն էլ քրիստոնէութեան վերաբերմամբ ոչնչով չէին զանազանվում հասարակ ժողովրդից. բնական էր, ուրեմն, որ նրանք պարսկական կուսակցութեան շարքերում գտնվէին։ Բայց սա չէ նշանակում թէ յունական կուսակցութիւնը բոլորովին մենակ էր և անզօր։ Նա էլ ունէր կողմնակից նախարարներ, որոնց մէջ հռչակված են մանաւանդ Մամիկոնեանները, որոնք քրիստոնէութեան գլխաւոր նեցուկը հանդիսացան, իրանց արիւնն ու հարստութիւնը զոհեցին։ Եւ չէ կարելի ասել թէ այս կուսակցութիւնը միշտ մաքուր միջոցներով էր դիմադրում իր հակառակորդներին։ Փաւստոսը պատմում է մի այսպիսի դէպք։ Հայր մարդպետը գնում է Ներսէս

Մեծի տոհմային կալուածները, տեսնում հի-անում է և ասում է թէ Տրդատն ու նրա որդին մեծ սխալ են գործել, երկրի ամենա-գեղեցիկ տեղերը նուիրելով կանանցազգեստ մարդկանց (հոգևորականներին)։ Նա սպառ-նում է այդ մասին հարց բարձրացնել, բայց վերադարձին սպանվում է անտառում մի հայ ազնուականի ձեռքով։ Միամիտ պատ-միչը ասում է թէ այդպէս պատահեց այն պատճառով, որ Ներսէսը անիծել էր Հայր մարդպետին։

Ահա ինչ իրարանցումներ մտցրեց քրիս-տոնէութիւնը Հայաստանի մէջ, այն էլ այն քրիստոնէութիւնը, որ հաստատվել էր Լու-սաւորչի ձեռքով և նեցուկ ունէր նրա յու-նասէր, վերանորոգչական եռանդով լցված տոհմը։

---

## Դ.

Վտանգաւոր ժամանակ յունական քրիստոնէութեան համար։—Ներսէս Մեծ։—Բարեկարգութիւնների շրջան. ապարդիւն ջանքեր։—Հայաստանը՝ վանական միաբանութիւն։—Բարեգործական դրախտ։—Ներսէսի հզօր ազդեցութիւնը։—Ի՞նչ էր Արշակ երկրորդը։—Բարեգործութիւնների միւս երեսը։—Խիստ րէակցիա յունական ազդեցութեան դէմ. Մեհրուժան և պարսկական կուսակցութեան աջողութիւնները։—Ներսէսի վերաբերմունքը դէպի Արշակ թագաւորը։—Պապ. նրա զգոյշ քաղաքականութիւնը։—Գործողութիւններ Ներսէսի դէմ։—Ներսէսի թունաւորման առասպելը։—Եկեղեցական անկախութիւն։—Ներսէսի մահը ցոյց է տալիս որ քրիստոնէութիւնը արհեստական էր։—Մեղաւո՞ր էր ժողովուրդը։

---

Ի՞նչ պիտի դուրս գար այս իրարանցումից, հակառակ հոսանքների, կուսակցութիւնների, շահերի այս կռուից։

Ըստ երևոյթին, յաղթող պիտի հանդիսանար ասիականութիւնը, որովհետև նա աւելի մօտ էր ազգաբնակութեան սրտին ու մտքին, աւելի շատ կողմնակիցներ ունէր։ Պարսկաստանը իր գործողութիւններով, հայ-

Մեծի տոհմային կալուածները, տեսնում հիանում է և ասում է թէ Տրդատն ու նրա որդին մեծ սխալ են գործել, երկրի ամենագեղեցիկ տեղերը նուիրելով կանանցազգեստ մարդկանց (հոգևորականներին)։ Նա սպառնում է այդ մասին հարց բարձրացնել, բայց վերադարձին սպանվում է անտառում մի հայ ազնուականի ձեռքով։ Միամիտ պատմիչը ասում է թէ այդպէս պատահեց այն պատճառով, որ Ներսէսը անիծել էր Հայր մարդպետին։

Ահա ինչ իրարանցումներ մտցրեց քրիստոնէութիւնը Հայաստանի մէջ, այն էլ այն քրիստոնէութիւնը, որ հաստատվել էր Լուսաւորչի ձեռքով և նեցուկ ունէր նրա յունասէր, վերանորոգչական եռանդով լցված տոհմը։

## Դ.

Վտանգաւոր ժամանակ յունական քրիստոնէութեան համար։—Ներսէս Մեծ։—Բարեկարգութիւնների շրջան. ապարդիւն ջանքեր։—Հայաստանը՝ վանական միաբանութիւն։—Բարեգործական դրախտ։—Ներսէսի հզօր ազդեցութիւնը։—Ի՞նչ էր Արշակ երկրորդը։—Բարեգործութիւնների միւս երեսը։—Խիստ ռէակցիա յունական ազդեցութեան դէմ. Մեհրուժան և պարսկական կուսակցութեան աջողութիւնները։—Ներսէսի վերաբերմունքը դէպի Արշակ թագաւորը։—Պապ. նրա զգոյշ քաղաքականութիւնը։—Գործողութիւններ Ներսէսի դէմ։—Ներսէսի թունաւորման առասպելը։—Եկեղեցական անկախութիւն։—Ներսէսի մահը ցոյց է տալիս որ քրիստոնէութիւնը արհեստական էր։—Մեղաւո՞ր էր ժողովուրդը։

---

Ի՞նչ պիտի դուրս գար այս իրարանցումից, հակառակ հոսանքների, կուսակցութիւնների, շահերի այս կռւից։

Ըստ երեւոյթին, յաղթող պիտի հանդիսանար ասիականութիւնը, որովհետև նա աւելի մօտ էր ազգաբնակութեան սրտին ու մտքին, աւելի շատ կողմնակիցներ ունէր։ Պարսկաստանը իր գործողութիւններով, հայ-

ւոց արքունիքը, պահպանողական կուսակցութիւնը հայ հոգևորականութեան մէջ, վերջապէս անունով քրիստոնեայ, բայց հոգով հեթանոս ժողովուրդը—այսքան ուժեղ գործօններ կային՝ նոր մտցրած քրիստոնէութիւնը եթէ ոչ խպառ արմատախիլ անելու, գոնէ այլակերպելու, անպտուղ դարձնելու, սախականացնելու համար։

Չորրորդ դարի կէսին բոլոր հանգամանքները այս էին ցոյց տալիս։ Բայց ահա Լուսաւորչի տոհմը մի անգամ էլ հանդէս է բերում իր կարողութիւնը. կաթողիկոս է դառնում Ներսէսը, որին երախտապարտ եկեղեցին յատկացրել է «Մեծ» տիտղոսը։

Դա ահագին եռանդի տէր մի մարդ էր, թողեց զինուորական ծառայութիւնը և իր երկաթի կամքը, իր անսպառ ոյժը նուիրեց իր պապերի հիմնած գործին։ Ներսէսը ստացաւ անունով գոյութիւն ունեցող մի եկեղեցի, մի քրիստոնէութիւն, որ աւելի հեթանոսութիւն էր։ Եւ նրա ամբողջ կեանքի նպատակը դարձաւ կենդանացնել քրիստոնէութիւնը, հասկանալի դարձնել ամենքին, մտցնել ընդհանրութեան արիւնի մէջ։

Բարեկարգութիւնների մի հարուստ դարագլուխ բացվեց եկեղեցու համար։ Ներսէսը հասկացել էր վտանգաւոր դրութեան բուն պատճառը, ոչինչ չէր խնայում իր

նկատածը վերացնելու համար: Բայց որքան նպատակայարմար էին նրա գործադրած միջոցները, որքան խոր էր նրա ըմբռնողութիւնը:

Տեսնում ենք գործադրված մեծամեծ ջանքերը, տեսնում ենք թէ ինչ ահագին նիւթական զոհաբերութիւններ արաւ երկիրը, տեսնում ենք և այն, թէ ինչ հետևանքներ տուեց այդ բոլորը: Սխալը առաջին իսկ քայլերից երևան եկաւ, բայց տաղանդաւոր վերանորոգիչը չը նկատեց նրան: Գրիգոր Լուսաւորչի պէս Ներսէսն էլ զգաց որ ժողովրդին հարկաւոր է դաստիարակութիւն, որ քրիստոնէութիւնը դպրոցներից պիտի դուրս գայ: Բայց նա մնաց լոկ նմանվող իր մեծ պապին. նա էլ յունական և ասորական դպրոցներ բաց արաւ: Ուրեմն, դարձեալ նոյն ապարդիւն ջանքերը:

Ներսէսի միտքը ուրիշ, աւելի բարդ ծրագրով էր զբաղված: Անկիրթ ժողովրդին նա ուրիշ հիմնարկութիւններ տուեց: Ոչ մի ջանք ու միջոց չը խնայելով, նա զարգացրեց վանականութիւնը Հայաստանի մէջ: Արևմուտքում այդ հիմնարկութիւնը արդէն մեծ օգուտներ էր տալիս եկեղեցուն: Վանքերը բազմանում էին, պատրաստելով իրանց մէջ մի ստուար բանակ եկեղեցու համար: Այդտեղ երկու սեռի աշխատողները

ենթարկվում էին խիստ կանոնների, որոնց հիմքը եկեղեցու հեղինակությունն ու կրոնի պայծառությունը պահպանելն էր։ Վանքը տիրում էր իբրև աշխարհի ուսուցիչ և իբրև տնտեսական ույժ։ Հոգու փրկության գործը նա կապել էր նյութական գոհաբերություններ հետ և ամեն ունևոր, թագավորներից ու իշխաններից սկսած, նուիրում էր նրան ինչ ունէր — կալուածներ, ոսկի, արծաթ, թանգագին քարեր։ Զարգանում էր կուսակրօնութիւնը, զարգանում էին ժողովրդի վրա ազդելու միջոցները—ճգնաւորութիւնը ամենախիստ ձևերով, մասունքների պաշտամունքը, հրաշքները, նախապաշարմունքները, ֆանատիկոսութիւնը։

«Ամբողջ ժողովուրդը վանական միաբանութեան նման մի բան դարձրին», ասում է Փաւստոսը, նկարագրելով Ներսէսի և նրա օգնականների գործունէութիւնը։ Աշխարհական կարգերից միայն ամուսնութիւնն էր մնում։ Վանքեր և կուսանոցներ հիմնվեցին։ Դրա հետ միասին ամենալայն չափերով հրապարակ հանվեց քրիստոնէութեան վեհագոյն գաղափարներից մէկը — գթասրտութիւնը։ Այստեղ էլ Ներսէսը օրինակ էր վերցնում Բիւզանդիայից, ուր աղքատանոցները, անկելանոցները և այլ այս տեսակ հիմնարկութիւնները փոխարինել էին հին աշխարհի

*փիլիսոփայական դպրոցները և, գտնվելով եկեղեցու խնամքի տակ, բարձրացնում էին նրա հեղինակութիւնը։ Հայոց երկիրն էլ ծածկվեց հիւանդանոցներով, աղքատանոցներով, որբանոցներով, անկելանոցներով, ճանապարհորդներին և օտարներին պատսպարող օթևաններով։ Վճռված էր որ մուրացկանութիւն չը լինի երկրում, և Փաւստոսը հաւատացնում է թէ մուրացկաններ այլ ևս չէին երևում։*

*Երևակայելու արժանի տեսարան։ Հիւանդները, ընկնաւորները, անդամալոյծները, ծերութիւնից ուժասպառ դարձածները, որբերն ու այրիները կանոնաւոր խնամք են գտնում, հասարակական հիմնարկութիւնների հոգածութեան առարկայ են դառնում։ Եկեղեցին լուծել է մարդկութեան չափ հին սոցիալական հարցերից մէկը—աղքատութիւնը, որ արմատախիլ չէ դառնում, այլ ծածկվում է քրիստոնէական բարեգործութեան յարկի տակ։ Եւ այս բոլոր զարմանալի գործերը տեղի են ունենում ուր։—Մի երկրի մէջ, որ դեռ մի քանի տարի առաջ «գազանամիտ, վայրենի, ճիւաղաբարոյ»էր,—Ասիայի խորքում, ուր անսահման բռնապետութիւնը, կոպիտ ույժի իրաւունքը ամուր հիմնված էր ամբոխը ճնշելու, հարստահարելու սկզբունքի վրա։*

Դիւթական մի գաւազան էր շարժվել հայոց աշխարհի վրայով և այսպէս գեղեցիկ կերպով փոխվել էր ամեն ինչ։ Այդ գաւազանը մի հատ մարդու կամքն էր։ Հայկական լեռնաստանում հաստատված այդ բարեգործական դրախտը անշուշտ մի մեծ վկայութիւն էր երկրի մասին։ Բայց ի՞նչ վկայութիւն։ Արդեօք երկիրը այնքան առաջադիմե՞լ էր, որ հասկանար մարդկայնութեան ամենաբարձր խորհուրդը և անհրաժեշտութիւն համարէր նրան մարմնացնել հասարակական հիմնարկութիւնների մէջ։ Արդեօք ժողովուրդը ձեռք էր բերել այնքան գիտակցութիւն, որ պահպանէր այդ բոլորը, տար ստեղծված հիմնարկութիւններին յարատեւութիւն կամ ըմբռնէր նրանց իսկական նպատակը։ Ո՛չ։ Շուրջը ոչինչ չէր փոխվել. նոյն երկիրն էր, նոյն խաւարն ու վայրենութիւնը։ Եւ եթէ այդ ասիական քաոսի մէջ իրանց գլուխները բարձրացրել էին մի լուսաւոր մարդկութեան պատիւ բերող այդքան գործեր, դա միայն այն էր ցոյց տալիս որ մի հատ մարդու անշէջ, հսկայական եռանդը կարող է հրաշքներ գործել։

Հրաշագործութեան համար Ներսէսը շատ աջող հանգամանքներից էր օգտվում։ Նա ուժեղ էր, հասկացող, իր ձեռքը հաւաքեց երկրի կառավարութիւնը, քաղաքական

բանակցութիւններ էր վարում Բիւզանդիայի հետ, նրա կամքից էր կախված Արշակունի թագաւորութեան լինելու կամ չը լինելու հարցը։ Արշակ թագաւորը չափազանց փոքր ու թոյլ էր այդ կրօնաւորի խելքի և կարողութեան առաջ։ Արևելեան փոքրիկ բռնակալի հաճոյքները նա որոնում էր ոչ թէ պետական նշանակութիւն ունեցող գործերի մէջ, այլ զանազան մանր-մունր հարեմական զուարճութիւնների մէջ։ Ներսէսին ոչ հակադրել էր կարող, ոչ նմանվել։ Իր եղբօրորդուց մի գեղեցիկ Փառանձեմ խլելու համար նա մի շարք զզուելի սպանութիւններ կատարեց, իսկ նրա աշխարհաշինութեան նմուշն էր այլանդակ Արշակաւանը, գողերի, մարդասպանների և ամեն տեսակ չարագործների համար շինված այդ քաղաքը, որ հասարակական կարգի, իրաւունքի և ամեն մի օրինական հասկացողութեան քայքայում էր։

Փաւստոսը Արշակին դուրս է բերում մի հզօր թագաւոր և նկարագրում է թէ ինչպէս նա երեսուն տարի շարունակ կռւում էր Պարսկաստանի դէմ և ամեն անգամ ջարդում, բնաջինջ էր անում պարսից բանակները։ Ապացուցանելու կարիք չը կայ որ այդ երեսնամեայ պատերազմը, այն էլ Շապուհի նման մի թագաւորի դէմ, կարող է միայն առասպել լինել. Նոյն իսկ բիւզանդական ա-

հագին պետութիւնը այդպիսի բախտ չէ ունեցել պարսկական պատերազմների մէջ։ Ընդհակառակն, յայտնի է, որ Շապուհը այնքան նեղը գցեց բիւզանդական զօրքը, որ Յոբիանոս կայսրը հարկադրված եղաւ հաշտութիւն խնդրել նրանից ու ստորագրել մի ստորացուցիչ դաշնագիր, որի ամենախայտառակ պայմաններից մէկը Արշակին էր վերաբերվում։ Արշակը բիւզանդացիների կողմըն էր բռնել. ուրիշ կերպ չէր էլ կարող լինել, քանի որ Ներսէսը յունական կուսակցութեան կատարեալ յաղթանակն էր։ Եւ ահա բիւզանդացիները իրանց այդ պայմանագրով պարտաւորվում էին այլ ևս չը պաշտպանել իրանց դաշնակից Արշակին, այլ պիտի յանձնէին նրան Շապուհին։

Փաւստոսի հաղորդածները Արշակի քաջութեան և ահեղ զօրութեան մասին առաջին անգամ գնահատել է մեզանում Մովսէս Խորենացին։ Կարդալով Փաւստոսի նկարագրութիւնը, նա իրան յատուկ քննադատական նրբութեամբ հասկացել է որ գործ ունի առասպելի հետ և իր կողմից այսպէս է բնորոշել Արշակին. «Ինքնահաւանութեամբ միշտ պարծենում էր խնջոյքների մէջ և երգիչ կանանց մօտ Աքիլլէսից աւելի քաջ և արի ցոյց տալով իրան, նա իսկապէս նման էր կաղ և սրագլուխ Թերսիդէսին»։

Իսկ թէ որքան լաւ էր հասկանում Արշակը պետութեան շահերը, երևում է այն անսահման ազատութիւնից, որ վայելում էր Ներսէսը իր գործերի մէջ։ Նրա ստեղծած բարեսիրական բազմաթիւ հաստատութիւնները ահագին նիւթական զոհողութիւններով կարող էին պահվել։ Եւ այդ միջոցները ծանրացան պետական տնտեսութեան վրա։ Ներսէսը հողեր յատկացրեց իր հիմնարկութիւններին. դա մի ծանր բեռ էր, որ բարձվում էր մի փոքրիկ ու աղքատ երկրի վզին. հարկատու ժողովուրդը մի կողմից էլ այդ լուծը պիտի կրէր։ Քաղաքական այն հանգամանքների մէջ, որոնցով շրջապատված էր Հայաստանը, միայն ամենակարող իշխանաւորը իր անսահման ոգևորութեան մէջ կարող էր մոռանալ որ չէ կարելի այդ աստիճան զարգացնել պետական բարեգործութիւնը՝ առանց ժողովրդի էական շահերը վտանգելու։ Մէջ տեղ վնասվողը պետական գաղափարն էր, որի պաշտպանը պիտի լինէր Արշակը։ Անպատիժ չէ կարող մնալ մի թոյլ, կազմալուծվող պետութիւն, երբ իր միջոցների մեծ մասը, իր նիւթական ապահովութիւնը զոհ բերէ բարեգործութեան։

Ներսէսը, անշուշտ, ոգևորված էր աշխարհի վրա. աւետարանական մի դրախտ տնկելու մտքով։ Բուն քրիստոնեայ գործիչի

համար այդ ոգևորութիւնը այնքան օրինական և հասկանալի է, որ Ներսէսի ձեռնարկութիւնները միայն հիացմունք կը պատճառէին, եթէ այդ փայլուն գործունէութեան հետ զուգընթացաբար պետութիւնն էլ առաջադիմէր, ուժեղանար գեղեցիկ կարգ ու կանոնով, կենսունակ հիմնարկութիւններով։ Տարաբախտաբար այդպէս չէր․ Ներսէսը հընացած շորի վրա կարկատաններ էր միայն դրել, բարեգործութիւնը աճում և զարգանում էր ի հաշիւ և ի վնաս պետութեան։ Երկիրը, տալով խոշոր միջոցներ վանքերին, անկելանոցներին, փոխարէնը ոչինչ չէր ստանում․ ասիականութեան մէջ կոշտացած մի ժողովրդի համար չէր կարող փրկարար լինել այն հանգամանքը, որ մարդ դժբախտութեան դէպքում պատրաստ կը գտնէ մի կտոր հասարակական հաց․ ընդհակառակն, այդ հանգամանքը աւելի ծուլութիւն և ձրիակերութիւն պիտի սովորեցնէր ժողովրդին։

Ներսէսը, այո՛, նշանաւոր գործիչ էր, բայց և միակողմանի։ Լինելով հայոց աշխարհի միակ հեղինակաւոր, բարենորոգիչ ոյժը, նա կարծեց թէ պարսկական և բիւզանդական ազդեցութիւնների մրցման այդ դաշտում կարելի է և նպատակայարմար է ամբողջ երկիրը մի վանք դարձնել․ Նա չիմացաւ, որ

այդ երկրին պարտաճանաչ քաղաքացիներ աւելի հարկաւոր են, քան անկելանոցներ։ Այդպէս պահանջում էր նոյն իսկ քրիստոնէութեան շահը։ Տգիտութիւնն էր, որ շարունակում էր մնալ իբրև անհաշտ թշնամի ամեն մի նորութեան, ամեն մի բարենորոգված կարգի։ Դառն փորձեր էին կանգնում Ներսէսի առջև, փորձեր, որոնք ակներև ցոյց էին տալիս թէ բարեգործական օթևանները չեն փրկութիւնը, բայց Ներսէսը անզօր էր իր արածից աւելին անել և հարկադրված էր տգիտութեան աղէտների դիմաց զոհել նոյն իսկ քրիստոնէութեան սկզբունքները։

Աղէտներից ամենամեծը պարսկական կուսակցութիւնն էր բերում։ Քրիստոնէութեան արտաքին, ձևական բարգաւաճումը, բնականաբար, մեծ անհանգստութիւն պիտի պատճառէր նրան։ Յունական ազդեցութիւնը չափազանց զօրեղացել էր, նրա դէմ պահանջվում էր կռիւ՝ արդէն անհագին չափերով։ Եւ ահա մեր պատմութեան մէջ դուրս է գալիս առաջին հայը, որ սեփական հայրենիքի աւերիչ է հանդիսանում։ Դա Մեհրուժանն է, մի անձնաւորութիւն, որի մէջ խտացած են պարսկասէր կուսակցութեան բոլոր բնորոշ հայեացքները։ Մեհրուժանը դէն է գցել քրիստոնէութիւնը և ուզում է ոյժով հարկադրել որ ամենքն այդպէս անեն։

Պարսից բանակը պատրաստ է նրան օգնելու։ Պատերազմ և կոտորած է մտցնվում հայոց աշխարհի մէջ։ Բարբարոսական արշաւանքը բերում է իր հետ պարսկական ատրուշաններ՝ եկեղեցիների և վանքերի տեղ հաստատելու համար։ Պարսկական կուսակցութիւնը շատ լաւ գիտէր թէ ուր է թաղնված իր իսկական թշնամին. Մեհրուժանը քանդում էր յունաց դպրոցները, այրում էր յունարէն գրքերը և հրամայում էր որ ամենքը պարսկերէն սովորեն։ Ահա որքան ստեղի էին դարձել արևմտեան ազդեցութիւնն ու արևմտեան գիտութիւնը։ Ամբողջ երկրի ճակատագիրը երկու լեզուների մրցութեան յաղթանակից էր կախված։ Աղէտը ծանր կերպարանք էր ստանում մանաւանդ այն պատճառով, որ հայ ժողովրդի համար երկու հզօր մրցակիցներն էլ խորթ էին…

Եւ Մեհրուժանը մենակ չէր. պարսկական կուսակցութիւնը սաստիկ ուժեղանում էր այդ ճգնաժամին, երբ Արևելքի այդ խուլ անկիւնում վճռվում էր լոյսի և խաւարի հարցը։ Փաւստոսի նկարագրութեան նայելով, մենք տեսնում ենք մի ընդհանուր դասալքութիւն, բարոյական անկում։ Հայոց զօրքը ամենից առաջ է վարակվում. զինուորները խմբերով անցնում են պարսից կողմը, Հայաստանի ծայրերը կառավարող կու-

տակաները նոյնպէս անձնատուր են լինում պարսից թագաւորին։ «Հայերի թիւը պակասեց», ասում է պատմիչը և այս կարճ խօսքերը վկայում են որ դրութիւնը յուսահատական կերպարանք էր ընդունել։ Կարծես ամենքն էին ձանձրացել այն նոր կեանքից, որ հազիւ կէս դար էր, ինչ եկել էր նրանց խլելու ասխականութեան գրկից։

Հայաստանում մնացած հայ իշխանները հաւաքվում են Ներսէսի մօտ։ Նրանք քրիստոնեայ են, բայց տգիտութիւնն են մարմնացնում իրանց մէջ։ Արշակի արատներն ու ոճրագործութիւնները զզուեցրել էին նրանց։ Այս դեռ հասկանալի է, բնական։ Բայց տգիտութիւնը կարծել էր տալիս նրանց թէ երբ մի թագաւոր վատ է, չը պէտք է նրան հեռացնել և ազգային անկախութիւնը ապահովել աւելի լաւ միջոցներով, այլ պէտք է գնալ, պարսիկներին տէր կանչել, հայրենի ազատութեան փոխարէն՝ օտարի շղթաների մէջ փաթաթվել։ Այս ցանկութիւնն են յայտնում իշխանները Ներսէսին։ Արևելեան բռնապետութիւնը երբէք չէ զարգացրել հայրենիքի, ընդհանուրի այդ սրբազան սեփականութեան, հասկացողութիւնը, այլ միշտ ամփոփված է եղել այն դաւանանքի մէջ, թէ պետութիւնը թագաւորն է, թէ այդ թագաւորի անձը միայն պէտք է

տեսնել և նրան միայն երկրպագել։ Հայ իշխանների հասկացողութիւնը այդքանն էր։ Եւ Ներսէսը զէնք չունէր այդ տգիտութեան դէմ. ոչ նրա աղքատանոցները, ոչ երկիրը մի մեծ վանական հիմնարկութիւն դարձնելու միտքը չէին ուսուցել այդ մարդկանց թէ ինչն է լաւ հայրենիքի շահերի համար և ինչն է վատ...

Ներսէսը միայն խրատում է այդ բողոքաւոր իշխաններին, որ նրանք հաւատարիմ մնան իրանց սեփական բարձր իշխանութեան։ Բայց ի՞նչպէս է ապացուցանում այդ անհրաժեշտութիւնը։ «Թէպէտ և Արշակ թագաւորը մեղաւոր է Աստուծու առաջ—ասում է նա ի միջի այլոց,—սակայն Աստուած իր անչափ մարդասիրութեամբ խնայում է նրան։ Եթէ Արշակը բիւրապատիկ էլ չար լինի, բայց աստուածապաշտ է. և եթէ մեղաւոր էլ լինի, սակայն ձեր թագաւորն է»։ Արդարացնել արատները, յանցանքները աստուածային հովանու տակ առնել—ահա ինչ կարողացաւ անել հայոց մեծագործ կաթողիկոսը ճգնաժամի րոպէին։ Քրիստոնէութեան ոգին այդ չէր թելադրում. աւետարանական այն սկզբունքը, որ պատուիրում է հանել աչքն անգամ, երբ նա գայթակղութիւն է պատճառում, պիտի հարկադրէր Ներսէսին աւելի իրական միջոցներ գտնել

մի քրիստոնեայ թագաւորութեան կենսական շահերը պաշտպանելու համար։ Արշակը նրա խօսքերից աւելի պիտի խրախուսվէր, աւելի ոյժ պիտի ստանար իր ընթացքը շարունակելու համար։ Վնասվողը դարձեալ պետական գաղափարն էր. ի՞նչ հեղինակութիւն կարող է ունենալ մի բարձր իշխանութիւն, որի ներկայացուցիչը ազատ պիտի լինի իր կամայականութիւնների մէջ լոկ այն պատճառով, որ քրիստոնեայ է մկրտված...

Արշակունեաց թագաւորութիւնը միայն հին զգեստ չէր. նա սկսեց ցնցոտիներ դառնալ, պատառ-պատառ լինել այն ժամանակից, երբ քրիստոնէութիւնը մտաւ Հայաստան և սկսեց քայլ առ քայլ, բայց շատ դանդաղ կերպով կրթել մտքերը։ Թուցէ և Ներսէսը զգում էր թէ Արշակի պէս մարդուն չէ կարելի Աստուծու հովանաւորութեան տակ դնել, բայց ուրիշ կերպ վարվել չէր կարողանում, քանի որ Արշակը հոգևոր գործերի մէջ չէր խառնվում և ազատութիւն էր տուել Ներսէսին գործել այնպէս, ինչպէս ինքն էր կամենում։ Արդեօք մի ուրիշն էլ այդպէ՞ս կը լինէր։

Այս հարցը իր լուծումն ստացաւ Արշակի մահից յետոյ, երբ նրա տեղ թագաւորեց նրա որդի Պապը։ Դեռ երիտասարդ էր այս թագաւորը, երբ յանձն առաւ երկրի

կառավարութիւնը, բայց հասակը չը խանգարեց որ նա ցոյց տայ թէ ինչպէս լաւ է հասկանում իր գահի շահերը։

Պապը Բիւզանդիայից եկաւ Հայաստան. նա բաւական ժամանակ ապրել էր յունաց արքունիքում, որի օգնութեամբ էլ ստացել էր իր հայրենի գահը։ Բայց այս բոլոր հանգամանքները նրան միակողմանի յունասէր չը դարձրին։ Գալով իր երկիրը, նա կարճ միջոցում հասկացաւ որ Հայաստանը չէ կարող, առանց իր ամենակենսական շահերը վտանգելու, բացառապէս բիւզանդական ազդեցութեան ենթարկվել։ Նա ի նկատի առաւ և պարսկական կուսակցութեան ոյժն ու նշանակութիւնը և երկու հզօր հարևանների ազդեցութիւնը հաւասարակշռելու համար՝ դաշնակցութիւն կապեց պարսից թագաւորի հետ։ Մի և նոյն ժամանակ նա, պետութեան շահերը աչքի առաջ ունենալով, ձեռք բարձրացրեց Ներսէսի բարեսիրական հիմնարկութիւնների դէմ. յետ խլեց վանքերին, անկելանոցներին յատկացրած հողերը, փակեց կուսանոցները, որոնց մէջ պատսպարված կանանց հրամայեց մարդու գնալ։ Մի խօսքով, Պապը աշխատում էր նորից վերականգնել աշխարհական իշխանութեան վարկը, միջոցներ ձեռք առնելով հո-

գևոր միապետութեան չափազանց ազդեցութեան դէմ։

Նորից լարվեցին կաթողիկոսարանի և աթքունիքի յարաբերութիւնները։ Նորից Լուսաւորչի տոհմը բողոքողի, դիմադրողի դերի մէջ մտաւ։ Բայց Ներսէսը չը կարողացաւ աջողութեան հասնել իր վէճերի մէջ. մահը վերջ դրեց այդ եռանդոտ իշխանաւորի կեանքին։ Մեր պատմութիւնը աւանդում է թէ Պապը թունաւորեց Ներսէսին, բայց քննադատութիւնը այժմ համարեա ապացուցել է թէ դա առասպել է, որի մէջ ճշմարտութիւն չը կայ։ Ներսէսի մահվան հանգամանքները ցոյց են տալիս որ թոյն չէ եղել այդ տխուր դէպքի մէջ։

Սարսափելի մեղադրանքը, որի տակ ճնշված է եղել Պապի յիշատակը այսքան դարեր, յունական կուսակցութեան կողմից է հնարվել։ Այդ կուսակցութիւնը շատ ծանր հարուած կրեց Պապի քաղաքականութիւնից և նրան մնում էր իր այդ թշնամուն հրէշաւոր կերպարանքի մէջ ներկայացնել։ Ժամանակակից քննադատութիւնը չէր կարող կրկնել այն ամենը, ինչ սարքել է բարեպաշտ կղերականների երևակայութիւնը Պապի վերաբերմամբ։ Փաւստոսը, յունական կուսակցութեան այդ ամենաջերմեռանդ ներկայացուցիչը, ոչինչ չէ խնայել մեր լաւագոյն

թագաւորներից մէկին սևացնելու համար։ Նա ասում է թէ Պապը մանկութիւնից դևերին էր նուիրված. այդ դևերը բնակվում էին նրա ծոցում օձերի կերպարանքով։ Օձերը համարձակ դուրս էին սողում Պապի ծոցից և ամենքը տեսնում էին նրանց. միմիայն այն ժամանակն էին նրանք թագնվում իրանց տեղը, երբ ներս էր մտնում Ներսէսը։

Յունական կուսակցութիւնը վատաբանում էր իր չը սիրած թագաւորին և այն պատճառով, որ նա մի շատ նշանաւոր և գեղեցիկ գործ կատարեց։ Հայաստանը Գրիգոր Լուսաւորչի ժամանակից Կեսարիայի մի թեմըն էր, հայոց կաթողիկոսները պիտի Կեսարիայի յոյն հոգևորականութիւնից ընդունէին իրանց ձեռնադրութիւնը և այդ պատճառով հարկադրված էին գնալ Կեսարիա։ Ներսէսի մահից յետոյ Պապը վերացրեց այդ կարգը. հայոց կաթողիկոսը իր երկրում, իր հոգևորականների ձեռքով օծվեց։ Հասկանալի է թէ ինչ վրդովմունք պիտի գցէր այդ քայլը Կեսարիայի յոյն կղերականութեան մէջ։ Այնտեղից յանդիմանութեան թուղթ են գրում Պապին, բանադրում են նրան և նոր կաթողիկոսին, և Փաւստոսը, պատմելով յունական կղերի այդ արարքը մեծ երկիւղածութեամբ, իր կողմից էլ ազգային դժբախտութիւն է համարում Պապի այդ գործը։

Բայց հէնց այդ տեսակ վերաբերմունքը ցոյց է տալիս թէ որքան անարդար էր յունական կուսակցութիւնը։ Պապը կատարեալ անկախութիւն տուեց հայոց եկեղեցուն, առաջին քայլն արաւ որ այդ եկեղեցին զուտ ազգային հիմնարկութիւն դառնայ։ Սրանով Պապը կամենում էր փոքր ինչ ինքնուրոյնութիւն տալ իր երկրին, որ մինչև այդ օտար ազդեցութիւնների խաղալիք էր միայն։ Իսկ այսպիսի մի միտք նրան կարող էր միայն պատիւ բերել։

Կարելի՞ է ափսոսալ որ Պապի ձեռքով տապալվեցին Հայաստանի բարեսիրական հիմնարկութիւնները։ Ներսէսի մահը ցոյց տուեց թէ որքան ապարդիւն են եղել նրա հսկայական ջանքերը։ Բոլոր այդ հիւանդանոցներն ու աղքատանոցները, կլանելով պետութեան միջոցների խոշոր մասը, ոչինչ չէին կարողացել անել հայոց երկրում իբրև քրիստոնէութեան արտաքին նշաններ, և Ներսէսի նպատակը մնացել էր անիրագործելի։ Քրիստոնէութիւնը ձրի հացի միջոցով էլ չէր ժողովրդականացել, հաստատ արմատներ չէր դրել ազգաբնակութեան մէջ։ Միշտ կրկնվել էին միսիօնարական այն ջանքերը, որոնք նիւթական շահերի ոյժի վրա են հիմնում քրիստոնէութեան տարածումը։ Բաւական էր որ հող իջնէր ձրի հացի հեղինակը, և հայ-

ոց աշխարհը շտապեց իր նախնիքների մօտ։ Փաւստոսը դառնագին գանգատներ է անում։ Հեթանոսութիւնը վերանորոգվեց, ասում է նա. մարդիկ ոչ միայն հեթանոսական արգելված արարողութիւններ էին կատարում, այլ և իրանց հին աստուածներին էին երկրպագում։ Ներսէսի գործունէութիւնը անհետ կորաւ...

Կղերական պատմիչը ուզում է մեզ բացատրել այդ երևոյթի պատճառները և ամենից առաջ, ի հարկէ, մեղադրում է Պապ թագաւորին, որ, նրա ասելով, թոյլ տուեց վերանորոգել հեթանոսութիւնը։ Այս մեղադրանքի մէջ նախ և առաջ դուրս է գալիս այն իրողութիւնը, որ քրիստոնէութիւնը Հայաստանի մէջ արհեստական միջոցներով էր պահվում, աւելի իշխանաւորների հրամանով, քան ժողովրդի համոզմունքով։ Երկրորդ՝ Պապի համբերողութիւնը նրա ամենալաւ յատկութիւններից մէկը պիտի համարել։ Չէ կարելի ասել թէ նա մի Յուլիան Ուրացողի պէս ատում էր քրիստոնէութիւնը և ամեն կերպ աշխատում էր որ հեթանոսութիւնը յաղթանակէ։ Այն հանգամանքը, որ Պապը անկախութիւն հաստատեց հայոց եկեղեցու համար, մի շատ ուժեղ ապացոյց է որ նրա մտքում չը կար քրիստոնէութիւնը վե-

*բացնելը։ Նա միայն համբերող էր, և ուրիշ ոչինչ։*

*Պակաս անմեղադրելի է և ժողովուրդը, որի վրա կշտամբանքներ է թափում Փաւստոսը, ասելով թէ ժողովուրդը վատ էր և այդ պատճառով մոռացաւ քրիստոնեաների Աստուծուն։ Մեղաւորը նա չէր, որ այդ Աստուծուց աւելի լաւ ճանաչում էր իր հին ազգային աստուածներին։ Ցոյն և ասորի հոգևորականների բազմութիւնը, որ դաստիարակ և առաջնորդ պիտի հանդիսանար մի այդպիսի ժողովրդի մէջ, աչքի ընկնող հեղինակութիւն չը կարողացաւ ձեռք բերել, մընաց մեծ մասամբ խորթ ու օտար։ Գեղեցիկ բացառութիւններ բոլոր երևոյթների մէջ են լինում, բայց մենք ունենք այդ օտար կրօնաւորներից երկուսի—Բրքիշոյի և Շմուէլի պատկերները, որոնք ցոյց են տալիս թէ Հայաստանը եկուոր հոգևորականների համար անշահասէր գործունէութեան ասպարէզ չէր միշտ, այլ և պիտի յագեցնէր շատերի փառասիրական և ընչասիրական հակումները։*

---

# Ե.

*Պապը յունական կուսակցութեան զոհն է դառնում։—Երկու ազդեցութիւնների կռիւը սաստկանում է։—Հայաստանի բաժանումը յոյների և պարսիկների մէջ։ — Բիւզանդականութիւն և քրիստոնէութիւն։—Հայաստանի երկու բաժինները.—Որտեղ էր լաւ։—Պարսիկների միջոցները հայերի յունական քրիստոնէութեան դէմ։*

*Չորրորդ դարի յուսահատական վերջը։—Ի՞նչ էր սպառնում ճգնաժամը։—Զգացվում է մեծ անհրաժեշտութիւնը։*

---

Պապ Թագաւորի համարձակ և անվախ քաղաքականութիւնը չէր կարող անվնաս լինել և նրա անձի համար։ Հայաստանը այնպիսի երկիր չէր, որին թոյլ տային լինել ինքնուրոյն, տնօրինել իր վիճակը ինչպէս ինքն էր կամենում։ Տեսանք որ այդպէս վարվել հայերի հետ չէր ուզում պարսից արքունիքը։ Այժմ երբ պարսկական կուսակցութիւնը մի յայտնի չափով բաւարարու-

թիւն էր ստացել, գլուխ բարձրացրեց նրա հակառակորդը—յունական կուսակցութիւնը։ Իր ստացած հարուածները նա մոռանալ չէր կարող, ինչպէս և չէր կարող տեսնել իր այնքան մեծ ազդեցութեան խորտակումը։

Եւ նա սկսեց եռանդով գործել։ Թշնամին աչքի առջև էր—Պապը։ Նա էր կրօնական համբերողութիւն ցոյց տուել, նա էր զրկել վանականութիւնը կալուածներից և հեղինակութիւնից և ի վերջոյ՝ հանել էր հայոց եկեղեցին կեսարիայի հպատակութիւնից։ Տասնեակ տարիների ջանքերը կորչում էին. յունական ազդեցութիւնը սաստիկ վտանգված էր։ Բիւզանդիան, ականջ դնելով Հայաստանից գնացած լուրերին, շտապեց վերացնել քաղաքական և կրօնական տիրապետութեան առջև կանգնած խոչընդոտը։ Պապը զոհ գնաց մի մեծ դաւադրութեան։ Բիւզանդիայից արձակված հրամանով Հայաստանում գտնվող յոյն զօրապետները ամենաստոր և զզուելի կերպով սպանեցին հայոց թագաւորին, հրաւիրելով նրան ճաշի և սեղանի վրա խառնելով նրա արիւնը հիւրասիրութեան գինու հետ։

Միայն Լուսաւորչի տոհմը չէր զոհեր տուողը։ Արշակունիներն էլ իրանց արիւնով ոռոգեցին այն դաշտը, ուր Արևելքն ու Արևմուտքը մրցում էին իրար հետ։ Քրիստոնեայ

Բիւզանդիան հեթանոս Պարսկաստանից պակաս կատաղի ու անգութ չէր այդ դաշտում, երբ պէտք էր պաշտպանել սեփական օգուտները: Կամաց-կամաց յայտնի էր դառնում որ քրիստոնէութիւնը չէ բիւզանդական արքունիքի հոգսերի առարկան...

Պապի սպանութիւնը բիւզանդական գործ էր: Բայց արդեօք հայերը մասնակցութիւն չունէ՞ն այդ եղեռնագործութեան մէջ: Մենք վերևում տեսանք որ նախարարական տներից Գրիգոր Լուսաւորչի տոհմին նուիրված էին մանաւանդ Մամիկոնեանները: Պապի և Ներսէսի ժամանակ այդ տան ամենանշանաւոր ներկայացուցիչն էր քաջ Մուշեղ Մամիկոնեանը, հայոց զօրքերի հրամանատարը: Երբ Պապին յաջորդում է Վարազդատ թագաւորը, այն Մուշեղի դէմ մի քանի ամբաստանութիւններ են կազմվում, որոնցից մէկն էլ այն էր, որ «յունաց զօրավարները դրա հրամանով և խորհրդով սպանեցին Պապ թագաւորին. դա էր որ թշնամացրեց և գրգռեց յունաց թագաւորին Պապի դէմ, մինչև որ սպանել տուեց նրան»: Փաւստոսի պատմութեան մէջ մնացած այս վկայութիւնը բաւական հաստատ հիմք է ենթադրելու, որ Պապը Հայաստանում գործող յունական կուսակցութեան զոհն էր: Ներսէսի վրէժը յոյն զօրավարների ձեռքով հանվում

էր Պապից։ Մուշեղի վրա բարդած մեղադրանքները այնքան համոզիչ են երևում Վարազդատին, որ նա սպանել է տալիս քաջ սպարապետին և այդպիսով հայոց աշխարհը զրկվում է մի քաջ զորավարից, որ այնքան յաղթութիւններ էր տարել թշնամիների դէմ մղած պատերազմներում։

Որ յունական կուսակցութիւնը առանձին պատճառներ չունէր տխրելու Պապի սպանութեան առիթով, երևում է այն խորհրդակցութիւնից, որ տեղի ունեցաւ հայ իշխանների մէջ, Մուշեղ սպարապետի գլխաւորութեամբ։ Հարց եղաւ՝ թէ պէ՞տք է յոյներից վրէժխնդիր լինել թագաւորի սպանութեան համար։ Եւ պատասխան տրվեց թէ պէտք չէ։ Յունական կուսակցութիւնը չէր կարող պարսից հեթանոս թագաւորի աջակցութիւնը խնդրել, իսկ իր սեփական միջոցներով անկարող էր յոյների դէմ պայքար մղել։ Ուստի վճռվեց. «Ինչ եղաւ, եղաւ. ծառայենք յունաց թագաւորին, յունաց իշխանութեան հնազանդվենք, ինչպէս յունական թագաւորութեան կամքն է, թող այսպէս էլ վարվեն մեզ հետ»։

Բայց այդպէս անելն էլ հեշտ չէր։ Հրապարակ իջաւ պարսկական կուսակցութիւնը և երկիրը դարձեալ քարուքանդ եղաւ պարսկական պատերազմներից։ Դարձեալ պարս-

կական ազդեցութիւնը դերակշռող հանդիսացաւ։ Յոյները, չը կարողանալով հաշտվել այդ իրողութեան հետ, համաձայնութիւն կայացրին պարսիկների հետ և Հայաստանը, այդ փոքրիկ, անհանգիստ, ուժասպառ երկիրը, բաժանվեց երկու հզօր հարևանների մէջ։ Արշակունի թագաւորութեան խղճուկ մնացորդը Հայաստանի պարսկական մասում կարող էր շարունակել իր գոյութիւնը։ Հաւատարիմ մնալով հին արևելեան բռնապետների սովորութեան, Սասանեանները թոյլ տուին որ հայերը պահպանեն իրանց ինքնավարութեան ձևը, հպատակվելով պարսից իշխանութեան։ Այդպէս չարին յոյները։ Յունական Հայաստանը դարձաւ բիւզանդական մի գաւառ և այդտեղ սկսեցին հայերին յունացնել։ Քրիստոնէութիւնը յունական կառավարութեան համար քաղաքական գործիք էր. նա չը կարողացաւ իր իսկական շահերը բարձրացնել քաղաքական հաշիւներից։ Եւրոպական կուլտուրայի տեսակէտից հարկաւոր էր որ քրիստոնեայ Հայաստանը ուժեղացվի, դառնայ մի տոկուն պատուար ասիականութեան դէմ։ Բայց դրա փոխարէն նա բաժան-բաժան դարձաւ, աւելի ևս թուլացաւ և իր մեծ ու կարևոր մասով պարսկականութեան սեփականութիւն եղաւ։

Յունական ծրագիրը մեծ աղէտ էր Հայ-

տատանք համար։ Ունենալով յայտնի չափով միաձոյլ մի ամբողջութիւն, նա հազիւ էր կարողանում պահպանել քաղաքական ինքն-ուրոյնութիւն, օգուտ քաղելով մանաւանդ այն հանգամանքից, որ երկու հակասական, իրար անհաշտ ազդեցութիւններ, մէկը Ա-րեւմուտքից, իսկ միւսը՝ Արեւելքից, միշտ ընդհարվում էին նրա հողի վրա և մշտական մրցութիւնը չէր թոյլ տալիս որ դրանցից մէկն ու մէկը հաստատվի վերջնականապէս և ջնջէ տեղական անկախութիւնը։ Այժմ այդ թշուառ, բայց միակ փրկարար հանգամանքն էլ վերացաւ։ Բաժանված երկու մասի, ո-րոնցից իւրաքանչիւրի մէջ հաստատվում էր մի մշտական ազդեցութիւն, երկիրը հեշտու-թեամբ պիտի կորցնէր իր ինքնուրոյն դէմ-քը եւ պատմական մարմին։ Իւրաքանչիւր բաժին պիտի ձուլվէր այն պետութեան հետ, որի սեփականութիւնն էր դարձել։

Կարևորը պարսկական բաժինն էր, այնպէս որ կարելի է ասել թէ այդ բաժա-նումով ասիականութիւնն էր յաղթանակ տանում արևմտեան քրիստոնէութեան աջակ-ցութեամբ։ Պարսկական բաժնումն էր Արաք-սի հովիտը, հայութեան սիրտը և ոյժի գըլ-խաւոր աղբիւրը։ Իր այդ սրտի մէջ Հայաս-տանը զօրաւոր հարուածի ենթարկվեց։ Հայ-ոց Արշակ թագաւորը, որի ժամանակ տեղի

ունեցաւ աղետաբեր բաժանումը, մեծ մտատանջութեամբ էր նայում, ինչպէս պատմում է Ղազար Փարպեցին, Հայաստանի վրա ծանրացած երկու օտար լուծերին և երկար կշռում էր թէ դրանցից ո՞րը պիտի ընդունել։ Յունաց ամբողջ բաժինը, չը նայած որ բազմաթիւ գաւառներից էր բաղկացած, հազիւ թէ մի հատ Այրարատ արժէնար, որ պատկանում էր պարսիկներին։ Հեռանալ Արաքսի գեղեցիկ, առատ հովտից շատ ծանր էր Թագաւորի համար, բայց ի՞նչ անել, երբ այդտեղ կախվել էր պարսկական խեղդուկ մթնոլորդը։ Պարսիկը այժմ առաջվանը չէր։ Նա խրոխտ արհամարհանքով էր նայում հային, որ առաջ իր քրիստոնէութեամբ դեռ փոքր ի շատէ վտանգաւոր կարող էր լինել, միանալով Բիւզանդիայի հետ։ Այժմ չը կար այդ երկիւղը, գոնէ պարսիկները կատարեալ տէր էին իրանց բաժնում և կարող էին ապագայ վտանգները հեռացնել, իրանց ուզածի պէս դաստիարակելով հայերին։

Արշակը չը կարողացաւ հաշտվել արհամարհվող Թագաւորի դրութեան հետ և աւելի լաւ համարեց կամովին աքսորութեան մէջ ապրել, քան միայլ թշնամի տարրի ստրկութեան մէջ, ուստի տեղափոխվեց յունաց բաժինը։ Անհատների համար երբէք դժուար չէ այսպիսի ծանր հարցեր լուծել։ Այն, ինչ

սրաւ Արշակը, չէր կարող անել Արարատեան ամբողջ աշխարհը։ Եւ մեծ հարց է՝ արդեօք յունական բաժինը կարո՞ղ էր աւելի ուեաց երկիր դառնալ հայութեան համար։ Արշակից հարիւրաւոր տարիներ յետոյ Վասպուրականի, Կարսի թագաւորները և իշխանները թողին իրանց կալուածները յոյներին և անցան բիւզանդական հողը, որպէս զի կարողանան ապրել Արևելքից արշաւող մօնգօլական ցեղերի ձեռքից։ Բայց չապրեցին նրանք, իսկ նրանց թողած երկիրները շարունակեցին անտէր ապրել օտար լուծի տակ։ Կան հարցեր, որոնց լուծողը միայն հայրենիքը կարող է լինել։

Պարսիկները իսկոյն չը յարձակվեցին հայկական քրիստոնէութեան վրա, այլ նախ միջոցներ ձեռք առան որ անխիաս դարձնեն նրան, հեռացնելով արևմտեան ազդեցութիւնից։ Յունական լեզուն, որ Սասանեանների համար քաղաքական մեծ վտանգ էր, արգելվեց պարսկական բաժնում և կրօնական պէտքերի համար թոյլատրվում էր միայն ասորական լեզուն, իսկ ուրիշ դէպքերում պարտաւորականը, իհարկէ, պարսկերէն լեզուն պիտի լինէր։ Ասորիները պարսիկների համար վտանգաւոր չէին կարող լինել, քանի որ մեծ մասամբ պարսկահպատակներ էին։

Մենք շատ անգամ տեսանք որ ասորի-

ները յոյների հետ գործում էին Հայաստանում իբրև հոգևորականներ և ուսուցիչներ։ Քրիստոնէութեան տարածման գործում ասորիները հանդիսացան շատ եռանդոտ ու տոկուն քարոզիչներ և հասան մինչև Միջին Ասիա և Հնդկաստան, ուր տնկեցին աւետարանական վարդապետութեան առաջին սերմերը։ Բայց ասորական ազգը առանձին ընդունակութիւն ցոյց չը տուեց մտաւոր գործունէութեան մէջ։ Անկասկած, ասորի հոգևորականութեան ազդեցութիւնը մեծ էր Հայաստանում, որովհետև նա, այնուամենայնիւ, անհամեմատ բարձր էր հայ հոգևորականութիւնից իր զարգացմամբ։ Եւ այդ ազդեցութիւնը նշանաւոր հետքեր է թողել հայերի քրիստոնէական կրթութեան վրա, մանաւանդ այն շրջանում, երբ հայերը սեփական ոչինչ չունէին և պիտի ուրիշներից սովորէին ամեն ինչ։ Որքան էլ չորրորդ դարում քրիստոնեայ եկեղեցին մի էր ամենքի համար և յոյն ու ասորի հոգևորականների մէջ տարբերութիւն չէր կարող լինել դաւանաբանական կողմից, բայց բոլորովին հասանական է, որ այդ երկուսի մէջ մրցութիւն կար Հայաստանում բացարձակ ազդեցութիւն ձեռք բերելու համար։ Ասորիները լաւ օգտվում էին իրանց քաղաքական դրութիւնից, այն հանգամանքից, որ իրանք յոյների պէս

վտանգաւոր մի տարր չէին պարսից կառավարութեան աչքում։ Բացի բարոյական նըշանակութիւնից, Հայաստանում տիրապետելը սարքինների համար ունէր և նիւթական մեծ շահ։

Եւ ահա, երբ Հայաստանի պարսկական բաժնում վերացաւ յունարէնը, սարքական լեզուի և հոգևորականութեան կատարեալ տիրապետութիւնը եկաւ։ Այնպէս որ հայերը արևմտեան քրիստոնեայ աշխարհի հետ հաղորդակցութիւն կարող էին ունենալ սարքինների նման մի սարացի խեղճ, ընդհանրապէս յետամնաց ազգի միջոցով։ Պարսկական համբերողութեան արժանացած սարքի քրիստոնէութիւնը, զրկված լինելով յունական կենդանացնող աղբիւրներից, չէր կարող հայերի մէջ պահպանել նոյն իսկ այն արտաքին պաշտօնական կերպարանքը, որ ունէր մինչև այդ. հետզհետէ նա պիտի աւելի էլ տկարանար, չոր ու անպտուղ դառնար։

---

Այսքան յուսահատական էր դրութիւնը չորրորդ դարի վերջերում։ Հայ ժողովուրդը զրկվում էր իր հին ազգային ստացուածքներից. նա ունէր մի հին, ծակծակած, մաշված քաղաքական իշխանութիւն, որի գոյութիւնը

ամբողջապէս պարսից Շահերի կամքից էր կախված։ Ներքին մրցութիւններից թուլացած, հեղինակութիւն և ոյժ կորցրած թագաւորութիւնը հետզհետէ ստուերային էր դառնում մաս-մաս ծուատված, կուսակցութիւնների բաժանված երկրի մէջ։ Քրիստոնէութիւնը ճնշել էր հին ազգային կրօնը և դեռ շարունակում էր կռուել նրա մնացորդների հետ, բայց ինքն էլ միշտ մնում էր ինչ-որ պաշտօնական կեղև, խորթ ու անհասկանալի մի ուսմունք։ Համարեա մի ամբողջ դար տևած մրցութիւններն ու զոհերը չէին կարողացել նրա համար գոնէ մի անձուկ ճանապարհ հարթել դէպի ժողովրդի գիտակցութիւնը։ Հայաստանը կոխկռտվել, ոտի տակ էր ընկել ասիականութեան և եւրոպականութեան պայքարի մէջ և այժմ, երբ թուլացած, ուժասպառ տարածված էր, պատմութիւնը կարծես պատրաստվում էր իր ահեղ դատավճիռը կարդալ այդ դիակի վրա։

Դա ութ դարերի մի պատմութիւն էր։ Ութ երկար ու միանման դարեր անցել էին Հայաստանի գլխով, ամփոփել էին նրան ասիականութեան ծոցում։ Բայց նրանց ծանր ու անհեթեթ ծալքերը յանկարծ տակն ու վրա դարձան, հանդիպելով մի նոր հոսանքի, որ ուղում էր կանգնեցնել, յետ մղել նրանց,

դուրս նետել սովորական ընթացքի ճանապարհից։

Անպատիժ չէր կարող անցնել այդ հսկայական յեղաշրջումը։ Ասիան անհաւոր ճիգեր էր թափում իր ստացուածքը ձեռքից չը տալու համար։ Եւ ահա հայ աշխարհի վրա բարձրագլուխ արշաւում էր իրանականութիւնը իր խաւար ոյժի ամբողջ թափով։ Ի՞նչը պիտի դիմադրէր նրան։—Հայաստանի քրիստոնէութիւնը, օտար լեզուով խօսող, Ներսէսի բարեգործութիւններով միայն յայտնագործված քրիստոնէութիւնը։ Հնարաւո՞ր բան էր։

Ճգնաժամը մեծ էր, բայց—աւելացնենք—ոչ օրհասական։ Նրան զգալ սկսեցին Հայաստանում—ահա ինչու չէր նա օրհասական։ Զգալը կենդանութիւն է։ Կային մարդիկ—անհատներ միայն,—որոնց մտքի մէջ ձեւակերպվում էր փրկութեան զէնքը։ Օդի մէջ տարածվել էր և ըմբռնելի էր դառնում մի մեծ անհրաժեշտութիւն—կենդանացնել ժողովրդի ներքին ոյժերը, տալ նրանց ստեղծագործելու, դուրս թափվելու միջոցներ։ Փորձերը և փորձանքները անօգուտ չէին անցել։ Լուսաւորչի տոհմի մեծ ջանքերը, վերջապէս, մերկացրին թէ ինչն է պակասում։

Երկրի չարչարանքների, ճգնաժամի մէջ

ծնվեց համեստ միտքը, որ գնաց ամբակամանութեան սպառնանքների դէմ և յայտարարեց թէ այդ երկիրը պիտի ապրէ։

Այդ միտքը մի քանի առաջաւոր մարդկանց մէջ էր ապրում։ Բայց նրան իրականացնողը, կեանքի հրաւիրողը մի մարդ էր միայն, և այդ մարդը ս. Մեսրոպն էր...

---

## Ա.

*Կորիւն վարդապետ։—Նրա գրած կենսագրութեան արժէքը։—Հարուստ տեղեկութիւններ չունենք։—Մեսրոպ թէ Մաշտոց։*

---

Մեծ անձնաւորութիւնները այնքան աւելի հասկանալի են լինում հեռաւոր սերունդներին, որքան շատ յիշատակութիւններ են մնում նրանց մասին։ Մեսրոպը իր կատարած գործով ամենամեծն է մեր պատմական հերոսների մէջ։ Իր այդ անուան համապատասխան էլ մի բացառիկ, գոնէ մեզանում չեղած, բախտի է նա արժանացել. —առաջին հայ գործիչն է նա, որ ականատեսի ձեռքով գրված առանձին կենսագրութիւն ունի։

Այդ ականատեսը Կորիւն վարդապետն է, Մեսրոպի աշակերտներից մէկը։ Ուրեմն, մի շատ մօտիկ, բարեբարված մարդու վկայութիւն։ Ուրիշ անկախ և ինքնուրոյն ադ-

բիւրներ չը կան. Թէև Մեսրոպի մասին խօսում են մեր ուրիշ մատենագիրներն էլ, բայց Կորիւնի տուածից աւելի բան ոչ ոք համարեա չը գիտէ. ամենքի համար աղբիւրը Կորիւնն է։ Այստեղից պարզ է այն կարևոր նշանակութիւնը, որ ունի Կորիւնի գործը՝ հայոց պատմութեան ամենանշանաւոր, նմանը չունեցող մի շրջանի լուսաբանութեան համար։ Մենք նրան պիտի լսենք, նրանից պիտի սպասենք մեզ յուզող բազմաթիւ հարցերի լուծումը։

Կարդում ենք այդ պատմութիւնը, տեղեկութիւններ իմանում ենք, բայց, դժբախտաբար, իմանում ենք և այն, որ Կորիւնը մեզ բոլորովին չէ գոհացնում, որ նա շատ քիչ բան է տալիս մեզ։ Իբրև պատմական երկասիրութիւն, շատ խեղճ գործ է դա։ Շատ համառօտ, փաստերի կողմից վերին աստիճանի սակաւախօս, իսկ դատողութիւնների կողմից չափից դուրս շատախօս մի կենսագրութիւն, որի մէջ ամեն քայլում երևում է հիացած աշակերտը, բայց չը կայ պատմաբանը, որ ներկայացնէր իր տեսած մարդու և նրա կատարած գործի ամբողջ պատկերը։

Իզուր չէ Կորիւնի գործը առաջին ինքնուրոյն պատմագրութիւնը հայերէն լեզուով։ Երբ հայի լեզուն բացվեց, երբ նա մի խա-

ւար ժողովրդից դարձաւ գիր ու մտածութիւն ունեցող ժողովուրդ, Նրա առաջին գործը եղաւ պատմել թէ ով էր, որ այդպիսի մի հրաշք ստեղծեց։ Իբրև մեր ինքնուրոյն պատմագրութեան երախայրիք, այդ առաջին պտուղը, բնականաբար, այնքան խակ պիտի լինէր, որ չը համապատասխանէր իր ահագին նշանակութեան։ Աշակերտը շատ աղքատիկ փաստեր է հաղորդում իր մեծ ուսուցչի կեանքից, բայց ո՜րպիսի հաճութեամբ անձնատուր է լինում կրօնական—բարեպաշտական խոհերին։

Մեսրոպի առաջնորդութեամբ հայը նոր նոր է սկսում ըմբռնել թէ ինչ է եղել այն կրօնը, որ հարիւր տարի առաջ մտցրել էր Գրիգոր Լուսաւորիչը։ Նոր բացվում են նրա առաջ քրիստոնէութեան պարզ ու լայն հորիզօնները և նա, իբրև արդէն գիտակցող հաւատացեալ, ջերմեռանդութեամբ փարում է այդ կրօնին, մոռանալով ամեն ինչ։ Մեսրոպը անապատական էր և նրա աշակերտներն էլ նոյն ոգով կրթվեցին։ Ամեն ինչ քրիստոնէութեան համար—այս էր նշանաբանը։ Եւ Կորիւնը անկարող էր, իհարկէ, լայն հայեացքների տէր մի պատմիչ լինել։ Եկեղեցին մեծ եռանդով տարածում էր սրբերի վկայաբանութիւնները, որոնք պատմում էին քրիստոնէութեան համար նահատակվածների

կեանքը, հրաշագործութիւնները, առաքինութիւնները։ Այդպիսի գրականութեան վրա կրթված Կորիւնը իր ուսուցչի մասին էլ գրել է վկայաբանութեան նման մի բան, որի մէջ Մեսրոպը ամենից առաջ մի սուրբ է, որի կեանքը այս և այն նմանութիւնն ունի հին մեծ սուրբերի հետ, որի գործերը համապատասխանում են ս. Գրքի այս կամ այն տեղին։ Այս նմանութիւնները, այս համեմատութիւններն են գրաւում նրան, մոռացութեան տալով կեանքի շատ փաստեր, բաւականանալով ընդհանուր խօսքերով, սեղմ և շատ տեղերում անհասկանալի բացատրութիւններով։

Աւելացրէք և այն, որ Կորիւնի փոքրիկ աշխատութիւնը թէ հեղինակի տարօրինակ ոճի և թէ արտագրողների տգիտութեան պատճառով դարերի ընթացքում մութ ու անհասկանալի է դարձել շատ կէտերում։ Իսկ այս բոլոր ցաւալի պակասութիւնների շնորհիւ մեր մեծ հերոսի կեանքը լիակատար չէ ներկայանում մեզ, շատ բան անդառնալի կերպով կորել է դարերի խաւարի մէջ։ Ըստ երևոյթին, Կորիւնը գլխաւորապէս ուշադրութիւն դարձրած պիտի լինէր Մեսրոպի այն գործի վրա, որ հիացմունք է պատճառել նրան և նրա ժամանակակիցներին, այսինքն տառերի գիւտի վրա։ Բայց այդտեղ էլ Կոր-

իւնը մի աններելի սակաւախօսութիւն է պահպանել, երկու-երեք մութ բացատրութիւններով է բաւականացել, այնպէս որ ստացվում է մի այնպիսի տպաւորութիւն՝ կարծես թէ նա ականատես չէ եղել, լսել է տարերի գիւտը հեռու մի տեղ, հեռաւոր մի ժամանակում, և ինքն էլ չը գիտէ թէ ինչպէս է տեղի ունեցել և ինչ բան է այդ գիւտը։ Մենք նոյն իսկ չը գիտենք հաստատապէս՝ ի՞նչ է արել Մեսրոպը. արդեօք հնարե՞լ է նոր տառեր թէ կարգի է բերել եղածները։

Կայ նոյն իսկ աւելի ցաւալի մի պակասութիւն։ Իր ուսուցչին Կորիւնը ամեն տեղ անուանում է Մաշտոց, մինչդեռ Մովսէս Խորենացու պատմութեան մէջ նա անուանված է և Մեսրոպ։ Հայ ազգը դարերի ընթացքում ընդունել և նուիրագործել է այս վերջին անունը *), որ, ինարկէ, չէ կարող Խորենացու հնարածը լինել։ Այս անուններից ո՞րն է իսկականը,—չը գիտենք։ Եւ սա էլ մի փաստ է, որ ցոյց է տալիս թէ մեր մեծ հերոսի կեանքը լաւ յայտնի չէ մեզ։

---

*) Այդ իսկ պատճառով մենք էլ մեր այս աշխատութեան մէջ գործ ենք ածում Մեսրոպ անունը, իբրև ընդհանրութեան ծանօթ և սիրելի մի անուն։

## Բ.

*Արքունի դիւանագպիրը։—Սահակ կաթողիկոս։—Մեսրոպի ճգնաւորական կեանքը։—Միսիօնարական գործունէութիւն։—Գողթան գաւառում։—Հեթանոս հայերի դիմադրութիւնը։—Բռնութիւնը հանճարեղ միտք է ծնեցնում։*

---

Հայոց Խոսրով երրորդ թագաւորի օրով (396—399) արքունիքում ծառայում էր մի գիւղացի հայ։ Նա ծնվել էր Տարօն գաւառի Հացեկաց գիւղում (թւականը յայտնի չէ) և Վարդան անունով բարեպաշտ մարդու որդին էր։ Մանկութեան հասակում նա լաւ կրթութիւն ստացաւ. սովորեց պարսկերէն և ասորական լեզուները, ծանօթացաւ և յունարէնի հետ։ Հաւանական է, որ նա Ներսէս Մեծի բացած դպրոցներից մէկի սանն էր։

Վերջացնելով ուսումը, նա թողեց իր ծննդավայրը, գնաց Արարատեան նահանգը, ուր հայոց արքունիքում զինուորական ծառայութեան մէջ մտաւ։ Լեզուագէտ, ընթեր-

ցասէր տարօնացին չը կորաւ զինուորական գնդերի մէջ. զօրքը և պատերազմական արուեստը չը խեղդեցին նրա մէջ գրասիրութիւնը, և նա դարձաւ թագաւորական դիւանի գրագիր։ Արքունիքը ծանօթացրեց նըրան աշխարհական կարգերի հետ, իսկ դիւանական գրագրի պաշտօնը բաց արեց նրա առջև վարչական աշխարհը։ Մեսրոպը—սա էր տարօնացի գեղջուկ հայը — մեծ փորձ ձեռք բերելու, երկրի քաղաքական և ներքին հանգամանքները լաւ ուսումնասիրելու գեղեցիկ յարմարութիւններ ունէր։

Բայց փայլուն արքունիքը, հրամայող, կարգադրող իշխանութիւնը մինչև վերջը չը գրաւեցին նրան։ Նոյն Խոսրով թագաւորի ժամանակ Լուսաւորչի տոհմը նորից իր դերի մէջ մտաւ, կաթողիկոսական աթոռի վրա նստեց Ներսէս Մեծի որդին, Սահակը։

Հանգամանքները այնքան փոխված էին, որ նա չէր կարող հետևել իր հռչակաւոր հօր քաղաքականութեան։ Ստացած լինելով յունական գեղեցիկ կրթութիւն, Սահակը մնաց յունասէր, բայց այդ յունասիրութիւնը լայն ու կտրուկ միջոցներով արտայայտելու կարողութիւնից զրկված էր։ Հօր և որդու մէջ կար արդէն այն մեծ տարբերութիւնը, որ որդին պարսկահպատակ էր և կաթողիկոսութիւն էր անում Հայաստանի այն մասում,

ուր պարսիկները բացարձակ տէրեր էին։ Եւ Սահակը ստիպված էր հաշտ ապրել պարսից կառավարութեան հետ։ Ներսէսը անվախ գործում էր պարսկական կուսակցութեան դէմ, մինչդեռ նրա որդին պարտաւոր եղաւ գնալ Պարսկաստան, ներկայանալ թագաւորին, խնդրել նրա բարեհաճութիւնը զանազան հարցերի վերաբերմամբ։ Հայաստանի բաժանումը ոկարացրել էր ոչ միայն թագաւորական իշխանութիւնը, այլ և հայոց կաթողիկոսի քաղաքական նշանակութիւնը։ Բանը այն տեղ հասաւ, որ պարսից արքունիքը նոյն իսկ խառնվում էր կաթողիկոսական գործերի մէջ։

Այլ ես անհնարին էր Ներսէս Մեծի և նրա նախորդների խրոխտ ու բարձրագլուխ քաղաքականութիւնը։ Եւ Սահակը չունէր էլ իր հօր անազին եռանդը։ Նա մրցող, պահանջող չէր, այլ մի խաղաղասէր քրիստոնեայ հովուապետ, որ աշխատում էր այնքան, որքան թոյլ էին տալիս հանգամանքները։ Լուռ ու հանդարտ ջանքեր էր գործ դնում եկեղեցին բարեկարգելու համար, այդ ջանքերի մէջ էլ նրա համար պահված էր իսկական մեծութիւնը։

Եկեղեցական բարեկարգութիւնը և քրիստոնէութեան տարածումը ապահովելու համար Սահակն էլ ոյժ առուեց վանականու-

թեան։ Նա ինքն էլ անձամբ սիրում էր ճըգնաւորական կեանքը և հինգից անապատականների մի առանձին կարգ, որի հետ ինքն էլ ենթարկում էր իր անձը խիստ պահեցողութիւնների և զրկանքների։ Եւ նրա օրինակը, դուցէ և առաջարկութիւնը, երևի, մեծ ազդեցութիւն արաւ արքունի դիւանադպրի վրա։ Մեսրոպը թողեց իր պաշտօնը, հոգևորական կոչում ստացաւ, ապա անցաւ անապատական կրօնաւորների կարգը, դարձաւ մշտական աղօթքների և զրկանքերի մէջ ապրող մի ճգնաւոր։

Բայց մենք չը պէտք է երևակայենք Մեսրոպին մի այնպիսի ճգնաւոր, որ ընդմիշտ հեռանում է աշխարհից, կտրվում է մարդկութիւնից և անապատի ու անյայտութեան մէջ կատարեալ ինքնամոռացութեան հասնելով՝ իր հոգու փրկութեան համար է տանջվում։ Մեսրոպը մարդկանցից չը հեռացաւ. հաւաքելով աշակերտներ, նա սկսեց ման գալ մարդկանց միտքը լուսաւորելու, քրիստոնէութիւն քարոզելու համար։ Չը գիտենք, նրանից առաջ եղե՞լ են հայ հոգևորականներ, որոնք կատարում էին այսպիսի առաքելութիւններ, թէ ոչ։ Կարելի է յամենայն դէպս ասել որ Մեսրոպի պէս տաղանդաւոր միսիօնար դեռ չէր եղել հայերի մէջ։ Նա զինված էր թէ անշէջ եռանդով և թէ հազուա-

դիւտ գիտութեամբ։ Ամենագլխաւորն այն էր, որ նա կարողանում էր խօսքը հասկանալի դարձնել։ Խորենացին պատմում է որ Մեսրոպը եկեղեցում նախ կարդում էր գրքերը ասորերէն լեզուով, ապա թարգմանում էր հայերէն, ուստի ամեն տեղ նրան հասկանում էր ժողովուրդը. մինչդեռ երբ Մեսրոպը չէր լինում, երբ կարդացածի թարգմանութիւնը չէր տրվում, ոչ ոք ոչինչ չէր հասկանում։

Աւելորդ է ասել որ այս դրութիւնը հանճարեղ տարօնացու սրտի մէջ խոր արձագանք էր տալիս։ Եւ նրա առջև հետզհետէ բացվում էր մեծ անհրաժեշտութիւնը։ Հասկանալի խօսքի հզօր ազդեցութիւնը աւելի շեշտվում, աւելի շօշափելի, տանջող էր դառնում մանաւանդ այն պատճառով, որ Մեսրոպը գործում էր Հայաստանի արևելեան ծայրերում։

Արարատեան դաշտից դէպի արևելք և հիւսիս-արևելք ընկնող երկիրները Մեսրոպի ժամանակ սարսափելի համբաւ ունէին. Կորիւնը անուանում է այդ տեղերը «անկարգ, անդարման, գազանամիտ, վայրենագոյն, ճիւաղաբարոյ»։ Այդ համբաւը, ի հարկէ, իր հիմքն ունէր։ Սիւնիքը և Արցախը վայրենի լեռնաշխարհներ են. անմատչելի բարձրութիւններն ու խորխորատները, կլիմայական

դաժան պայմանները, հաղորդակցութեան ճանապարհների բացակայութիւնը ստեղծում են ազգաբնակութեան համար մի առանձնացած կացութիւն, խիստ հնապաշտ աւանդապահութիւն, բարքերի կոպտութիւն։ Կտրըված լինելով դրսի աշխարհից, լեռները միշտ յետամնաց են, անհիւրընկալ. այնտեղ ապրող մարդը շարունակ զբաղված է վայրենի, անհեղ բնութեան հետ կռւելով, որպէս զի կարողանայ իր ապրուստը հայթայթել. մտաւոր-իմացական կեանքի համար ոչ տրամադրութիւն կայ, ոչ պահանջ, ոչ նոյն իսկ յարմարութիւն։ Այդ պատճառով էլ Հայաստանի այդ լեռնաշխարհում հեթանոսութիւնը պահվում էր մի յամառութեամբ, որ, ըստ երևոյթին, անընկճելի էր։

Ահա այդ դժուար մատչելի տեղերն էր Մեսրոպը ընտրել քարոզչութեան ասպարէզ։ Նա սկսեց Գողթան գաւառից։

Բայց այս գաւառը Սիւնիքի և Արցախի լեռնաստանների պէս մի անլոյս աշխարհ չէր։ Այստեղ մարդկային միտքը գործում էր։ Եւ եթէ Գողթանը մինչև Մեսրոպի ժամանակը մնացել էր հեթանոսութեան մէջ, պատճառն այն էր, որ նա մի առանձին նշանաւոր դեր էր կատարում հայկական հին աշխարհի մէջ։ Ազգային հին աստուածների, հին հերոսների աւանդապահն էր նա և հե-

թանոս հայութիւնը ոգևորողը։ Յայտնի են Գողթանի երգերը։ Յայտնի է որ գինով առատ այդ գաւառում ժողովրդական հանճարը բանաստեղծութեան մէջ պատկերացնում էր հին հայերի աշխարհայեցողութիւնները, գաղափարները, նախնիքների պաշտամունքը։ Այնտեղ, ուր կեանքը ժամանակի ընթացքում հզօր աւանդութիւն է դառնում և այդ աւանդութիւնը ժողովրդի սրտի մէջ գեղեցիկ բանահիւսութեան, առօրեայ հնչուն երգի է փոխվում,—այնտեղ չէ կարող հեշտութեամբ և շուտով մոռացվել պաշտամունքը։ Երգը չէր թողնում որ մեռնէ, անհետանայ անցեալը, նա այդ անցեալի ձայնն էր և անուշիկ ելևէջներով, սրտին հարազատ հնչիւններով միշտ կենդանի էր մնում։ Կա՞ր Հայաստանի մէջ մի ուրիշ Գողթան,—չը գիտենք։ Եւ եթէ միայն Գողթանն է կարողացել երկար ժամանակ պահել իր երգերի պատառիկները ու անմահացնել նրանց մեր գրականութեան մէջ, դա ապացոյց է այն բանի, որ նա ամենքից շատ պինդ էր կպած իր հնութեան։

Մեսրոպը այստեղ առանձին դժուարութեան հանդիպեց։ Քարոզչութիւնն անզօր էր, և նա դիմեց տեղական իշխանի աջակցութեան։ Նորից քրիստոնէութիւնը յենվում էր հրամանի, իշխող գաւազանի վրա։ Կրկնվում են Տրդատի ժամանակները։ Կորիւնը պարզ

չէ խօսում, բայց Ագաթանգեղոսի նման ասում է. «Մեծամեծ նշաններ էին երևում, դևերը զանազան նմանութեամբ փախստական լինելով, ընկնում էին Մարաց կողմերը»: Այդ դևերը, ինչպէս և Գրիգոր Լուսաւորչի ժամանակ, հեթանոսութեան պաշտօնեաններն ու կողմնակիցներն էին, որոնք տեղի տուին բռնութեան ոյժին և փախան:

Բռնութիւն, դիմադրութիւն, տանջանք: Նրանք յաղթանակով վերջացան, բայց ի՜նչպէս պիտի լինէր այն ճգնաւորի դրութիւնը, որ շարունակ մաշում էր իր մարմինը երկնքի սիրոյ համար: Գուցէ մի ուրիշը հանգիստ խղճով շարունակէր իր գործը, ուրախ լինելով որ Աստուծու գործը հաստատուեց հեթանոսութեան բոյնի մէջ: Բայց Մեսրոպը մեծ, զգայուն սրտի տէր մարդ էր: Նա չուրախացաւ, ընդհակառակն, յաղթութիւնը դառն տրտմութիւն էր նրա համար. յաղթողը նոյն իսկ լաց էր լինում և ասում. «Տրտմութիւն է ինձ և իմ սրտի ցաւերը անպակաս են իմ եղբայրների և ազգականների համար»: Ո՞վ գիտէ, գուցէ մի քանդված մեհեան կամ մի արիւնաթաթախ դիակ փորփորում էին նրա լուսաւոր միտքը և տանջում նրան իբրև լուռ, արիւնոտ հարցեր. ինչո՞ւ այս անգթութիւնը, ինչո՞ւ այս հարկադրանքը: Մի՞թէ մարդը մեղաւոր է որ պաշտում է իր լաւ հասկացածը,

այն, ինչ հարազատ է իր համար։

Ստածութիւնները ծովանում են և իր սրտի ու զգացմունքների հետ տառանձնացած մարդը գտնում է նրանց մէջ յաւիտենական ճշմարտութեան գաղտնիքը։ Նա զգում է որ մարդը գաւազանից չէ կրթութիւն ստանում, համոզմունք կազմում, որ նրան պէտք է սովորեցնել, նրա սրտում պէտք է մշակութիւն անել, սերմեր տնկել։ Բարողչութիւնը չէ օգնում, նրշանակում է որ պատահարար լսած խօսքը անզօր է խախտելու այն, ինչ հաստատվել է սրտի մէջ մանկութիւնից։ Պէտք է, ուրեմն, այդ սրտի մէջ մանկութիւնից էլ պատուաստել նոր հասկացողութիւններ, պէտք է տալ նրան հեշտը, հարազատը և ոչ թէ օտարինը փաթաթել նրա վզին։

Տրտում ու տխուր, մտքերի մէջ խորասուզված, Մեսրոպը շատ օրեր որոնում էր մի ելք։ Հրաշալի՛ երկունք։ Գողթան գաւառը մեր պատմութեան մէջ պէտք է հռչակվի ոչ միայն իբրև հին երգերի հայրենիք, այլ և իբրև մի տեղ, ուր առաջին անգամ ծնվեց հայ գրականութեան միտքը։ Այնտեղ, ուր դարերի ընթացքում ժողովուրդը բերանացի գրականութիւն էր պահպանում քամբրիոների ձայնակցութեամբ, նոյն այդ հողի վրա, նոյն այդ ձայների մէջ պարզվեց, ան-

հրաժեշտութիւն դարձաւ տառեր գտնելու, գրով գրականութիւնստեղծելու միտքը։

Մեսրոպը գտել էր ելքը։ Եւ նա այլ ևս չը մնաց Գողթանում. թողեց ամեն ինչ, թողեց իր սկսած գործը կիսատ և շտապով ճանապարհ ընկաւ դէպի Արարատեան երկիրը։ Առաջ գիրք, յետոյ միայն գիտակցական քրիստոնէութիւն։

Ահա ինչն էր նրան Վաղարշապատ տանում։

## Գ.

*Գրերի և գրականութեան համար հոգսեր։— Նպաստաւոր ժամանակ. Վռամշապուհը Հայաստանում, Յազկերտ առաջինը Պարսկաստանում։—Որոնում են հայկական տառեր։—Դանիէլի տառերը, առաջին դպրոցներ, անաջողութիւն։—Մեսրոպի ճանապարհորդութիւնը Միջագետք։ — Հայկական տառերի գիւտը։—Ի՞նչ էր այդ գիւտը հների համար և ի՞նչ պիտի լինի մեզ համար։—Այբուբենի առաջին գիւտը։ —Ազգերը միմեանցից փոխ առան տառերը։—Երկու կարծիք հայկական այբուբենի մասին։—Ի՞նչն էր դժուարը Մեսրոպի համար։—Լեզուի տարրալուծումը։*

---

Ո՞ւմ պիտի դիմէր Մեսրոպը իր սրտի խոհերն ու ցանկութիւնները յայտնելու համար, եթէ ոչ հայոց կաթողիկոսին։ Բացի իր բարձր պաշտօնից, ս. Սահակը ունէր այն մեծ առաւելութիւնն էլ, որ ամենազարգացած մարդն էր այն ժամանակվայ Հայաստանում։ Եւ նա գրկաբաց ընդունեց Մեսրոպին, որովհետև ինքն էլ մի և նոյն մտածութեան մէջ էր, ինքն էլ մի և նոյն եզրակացութեան էր հասել։ Մեսրոպը իր առա-

ջին խսկ քայլերից մի հզօր և հեղինակաւոր աջակից ու հովանաւոր ունէր։ Այդ բաւական չէ, հայոց Թագաւորն էլ միացաւ նոյն մտքին, նա էլ նոյնպէս զգացել էր ժամանակի մեծ պահանջը։ Դա Վռամշապուհ Թագաւորն էր։

Չորրորդ դարի վերջերում և հինգերորդի սկզբում կայ մի փոքրիկ շրջան, երբ Հայաստանը մի անսովոր տեսարան էր ներկայացնում։ Դա Վռամշապուհի Թագաւորութեան շրջանն է։ Երկիրը խաղաղվեց, այլ ևս ներքին խռովութիւնների և պատերազմների դաշտ չէր ներկայացնում։ Ի՞նչ հրաշք էր դա։—Անշուշտ, շատ բան կախված էր Թագաւորի անձնաւորութիւնից, նրա կառավարչական կարողութիւնից։ Բայց այդպիսի հանդամանքները վճռական կարող են լինել միայն մի բոլորովին անկախ, ինքնուրոյն երկրում։ Հայաստանում Թագաւորը ամեն ինչ չէր, և հրաշքը հասկանալու համար մենք պիտի աչքներս դարձնենք դէպի Հայաստանի տէրը, դէպի Պարսկաստան։

Շապուհ երկրորդի մահից յետոյ Սասանեանների քաղաքականութիւնը ուրիշ կերպարանք ստացաւ։ Գահ բարձրացան այնպիսի Թագաւորներ, որոնք չէին ուզում հպատակվել մոգերի և ազնուականների ազդեցութեան։ Դա նշանակում էր Թէ մէջ տե-

դից պիտի վերանայ անհաշտ, կրօնամոլ հայ-
եացքը պետական հարցերի,մանաւանդ քրիս-
տոնեաների վերաբերմամբ։ Արքունիքը մըր-
ցութեան դաշտ էր ներկայացնում. մի կող-
մից Թագաւորը, որ չէր ուզում կամ քիչ էր
ուզում իր շրջապատողների ցուցմունքներով
շարժվել, միւս կողմից՝ մոգերը, որոնք ու-
զում էին իրանց դիրքի մէջ մնալ։ Այդ մըր-
ցութիւնները պալատական դրամաներ էին
առաջացնում. Շապուհի մի քանի յաջորդնե-
րը սպանվեցին, բայց դրսի աշխարհը՝ դրա
փոխարէն՝ հանգստութիւն էր վայելում.
Պարսկաստանի գլուխը խառնված էր և կրօ-
ներն ու յունականութիւնը հալածողներ չու-
նէին։

Վռամշապուհի ժամանակ Թագաւորում
էր Յազկերտ առաջինը, որ Մեղաւոր անունն
էր ստացել։ Մեղաւոր էր նա զուտ պարս-
կական տեսակէտից, այն պատճառով, որ
զրադաշտականութեան և մոգութեան փառ-
քի համար չէր հալածում քրիստոնեաներին,
չէր պատերազմում Բիւզանդիայի դէմ. ընդ-
հակառակն, հալածում էր մոգերին և ազ-
նուականներին, երբ նրանք ուզում էին կա-
ռավարողի, կարգադրողի դերի մէջ մտնել։
Ահա այդ Մեղաւորի Թագաւորութեան մի-
ջոցին էլ խաղաղ էր հայոց աշխարհը, պարս-
կական կուսակցութիւնը չէր կարող աղէ-

տալի շարժումներ սկսել Թագաւորի դէմ։ Այդպիսի մեծագործութիւնների համար ամենայարմար ժամանակը երկրի այսպիսի դրութիւնն էր։ Մեսրոպին հովանաւորում էին և քաղաքական հանգամանքները։

Մեծ վերանորոգումը ոչինչ արգելքներ չունէր իր առջև։ Վռամշապուհը նախավերջինն էր Արշակունի թագաւորների մէջ։ Կարծես բնազդով նա գիտէր որ մօտենում է վերջը, ուստի պէտք է տալ ժողովրդին ապրելու, գոյութիւն պահպանելու մի այնպիսի միջոց, որ խախուտ չէ գահերի պէս, քանի որ ապրում է սրտերի և մտքերի մէջ։ Եւ նա իր իշխանութիւնն ու ամբողջ բարի կամեցողութիւնը դնում է Մեսրոպի և Սահակի տրամադրութեան տակ՝ բարի գործը աջողեցնելու համար։

Կաթողիկոսարանում սկսվում են մի շարք խորհրդածութիւններ և այդտեղ յայտնի է դառնում թէ որքան դժուար է պահանջվող գործը։ Խորհրդակցութիւններին մասնակցում էին ձեռնհաս հոգևորականներ էլ, բայց ոչ ոք չը կարողացաւ մի գործնական միջոց առաջարկել։ Օգնութեան է հասնում Վռամշապուհը։ Նա լսել էր որ Միջագետքում կայ Դանիէլ անունով մի ասորի եպիսկոպոս, որ ունի հայերէն տառեր։ Մեր պատմագիրները շատ մութ կերպով են պատ-

ղից պիտի վերանայ անհաշտ, կրօնամոլ հայ-
եացքը պետական հարցերի, մանաւանդ քրիս-
տոնեաների վերաբերմամբ։ Արքունիքը մըր-
ցութեան դաշտ էր ներկայացնում. մի կող-
մից Թագաւորը, որ չէր ուզում կամ քիչ էր
ուզում իր շրջապատողների ցուցմունքներով
շարժվել, միւս կողմից՝ մոգերը, որոնք ու-
զում էին իրանց գիրքի մէջ մնալ։ Այդ մըր-
ցութիւնները պալատական դրամաներ էին
առաջացնում. Շապուհի մի քանի յաջորդնե-
րը սպանվեցին, բայց դրսի աշխարհը՝ դրա
փոխարէն՝ հանգստութիւն էր վայելում.
Պարսկաստանի գլուխը խառնված էր և կրօն-
ներին ու յունականութիւնը հալածողներ չու-
նէին։

Վռամշապուհի ժամանակ Թագաւորում
էր Յազկերտ առաջինը, որ Մեղաւոր անունն
էր ստացել։ Մեղաւոր էր նա զուտ պարս-
կական տեսակէտից, այն պատճառով, որ
զրադաշտականութեան և մոգութեան փառ-
քի համար չէր հալածում քրիստոնեաներին,
չէր պատերազմում Բիւզանդիայի դէմ. ընդ-
հակառակն, հալածում էր մոգերին և ազ-
նուականներին, երբ նրանք ուզում էին կա-
ռավարողի, կարգադրողի դերի մէջ մտնել։
Ահա այդ Մեղաւորի Թագաւորութեան մի-
ջոցին էլ խաղաղ էր հայոց աշխարհը, պարս-
կական կուսակցութիւնը չէր կարող աղէ-

տալի շարժումներ սկսել Թագաւորի դէմ։ Խաղաղ մեծագործութիւնների համար ամենայարմար ժամանակը երկրի այսպիսի դրութիւնն էր։ Մեսրոպին հովանաւորում էին և քաղաքական հանդամանքները։

Մեծ վերանորոգումը ոչինչ արգելքներ չունէր իր առջև։ Վռամշապուհը նախավերջինն էր Արշակունի Թագաւորների մէջ։ Կարծես ընազդով նա գիտէր որ մօտենում է վերջը, ուստի պէտք է տալ ժողովրդին ապրելու, գոյութիւն պահպանելու մի այնպիսի միջոց, որ խախուտ չէ գահերի պէս, քանի որ ապրում է սրտերի և մտքերի մէջ։ Եւ նա իր իշխանութիւնն ու ամբողջ բարի կամեցողութիւնը դնում է Մեսրոպի և Սահակի տրամադրութեան տակ՝ բարի գործը աջողեցնելու համար։

Կաթողիկոսարանում սկսվում են մի շարք խորհրդածութիւններ և այդտեղ յայտնի է դառնում թէ որքան դժուար է պահանջվող գործը։ Խորհրդակցութիւններին մասնակցում էին ձեռնհաս հոգևորականներ էլ, բայց ոչ ոք չը կարողացաւ մի գործնական միջոց առաջարկել։ Օգնութեան է հասնում Վռամշապուհը։ Նա լսել էր որ Միջագետքում կայ Դանիէլ անունով մի ասորի եպիսկոպոս, որ ունի հայերէն տառեր։ Մեր պատմագիրները շատ մութ կերպով են պատ-

մում այս բանը, այնպէս որ բոլորովին պարզ չէ թէ կա՞ր մինչև Մեսրոպը հայերէն կանոնաւոր այբուբեն։ Շատ են խօսել այս հարցի առիթով։ Մեր բանասիրութիւնը, հիմնւելով պատմագիրների տառացի իմաստի վրա, ընդունում է որ հին ժամանակներից գոյութիւն ունէին տառեր, բայց մի և նոյն ժամանակ հաստատապէս պնդում է որ Մեսրոպից առաջ հայերէն գրականութիւն չէ եղել։ Եթէ այսպէս է, պէտք է, ուրեմն, ընդունել և այն, որ այդ տառերը անպէտք ընկած էին, նրանք չէին գործ ածվում նոյն իսկ արքունի և դիւանական գրագրութիւնների մէջ, որովհետև յայտնի է և այն, որ գրագրութիւնները լինում էին յունական, պարսկական և ասորական լեզուներով։

Մենք չենք մտնի այդ հարցերի մանրամասնութեան մէջ։ Պատմական հանելուկներ կան, որոնց լուծելու համար դրական փաստեր են հարկաւոր։ Երբ չը կան այդ փաստերը, ամեն մի հարց լուծելու ձգտումը կը մնայ հաւանականութիւնների շրջանում։ Եւ բացի դրանից Դանիէլեան տառերի հարցը, որքան էլ մասնագիտական հետաքրքրութիւն ներկայացնէ, մեզ համար երկրորդական նշանակութիւն ունի, քանի որ, ինչպէս կը տեսնենք յետոյ, Մեսրոպի ամենամեծ գործը տառեր հնարելը, այսինքն հնչիւններ պատկե-

րացնող նշանների գծագրութիւնը չէ։

Սահակի և Մեսրոպի խնդիրքով թագաւորը մարդ է ուղարկում Դանիէլի մօտ և բերել է տալիս նրա տառերը։ Մեծ ուրախութեամբ է ընդունվում ասորի եպիսկոպոսի այդ պարգևը։ Իսկոյն երեխաներ են հաւաքում և Մեսրոպը դառնում է վարդապետ, որ, ինչպէս գիտէք, վարժապետ բառի նշանակութիւնն ունի, բայց եկեղեցական պաշտօն էլ է։

Բացված է առաջին հայ դպրոցը, առաջին հայ ուսուցիչը սկսում է երեխաներին մայրենի լեզու սովորեցնել։ Սակայն փորձը ցոյց է տալիս Մեսրոպին որ Դանիէլի ուղարկած տառերը շատ անկատար ու պակասաւոր են և նրանցով չէ կարելի լեզու աւանդել։ Երկու տարի յամառում է առաջին հայ ուսուցիչը, բայց ոչինչ չէ դուրս գալիս։ Դարձեալ մտատանջութիւններ, դարձեալ որոնումներ։ Ինքը, Մեսրոպը, ոչինչ չէ կարողանում անել այդ դժուարութեան դէմ. անզօր է հանդիսանում և Սահակ կաթողիկոսը, և առհասարակ ոչ ոք հայոց մայրաքաղաքում չէ կարողանում օգնել։ Բայց Մեսրոպը կանգ չէ առնում այդ անյաղթելի արգելքի առաջ։ Մի անգամ սկսած գործը նա ձեռքից չը տուեց. եթէ աջողութիւն չը կայ տանը, պէտք է նրան որոնել դրսում, օտար,

աւելի կարող և հմուտ մարդկանց մոտ։

Վերցնելով իր հետ մի քանի աշակերտներ, Մեսրոպը ճանապարհվում է արտասահման։ Վռամշապուհը և Սահակը ճանապարհ են դնում նրան բարեմաղթութիւններով, «սուրբ համբոյրներով», ինչպէս ասում է Կորիւնը։ Եւ իրաւ, դրա պէս մի սուրբ առաքելութիւն առաջին անգամն էր դուրս գալիս հայոց աշխարհից։ Խաւար ու դժբախտ մի երկիր մարդիկ էր ուղարկում լոյս որոնելու։

Այդ լոյսը Մեսրոպը յոյս ունէր գտնել ասորոց երկրում։ Նա գնում է Եդեսիա, Ամիդ քաղաքները, տեսնվում է այնտեղի նշանաւոր հոգևորականների հետ, գեղեցիկ ընդունելութիւն է գտնում, բայց տխրութեամբ տեսնում է որ ոչ ոք չէր պիտի կարողանայ օգնական և ղեկավար դառնալ։ Ծարահատված՝ իր աշակերտներին բաժանում է երկու մասի․ մի մասը թողնում է Եդեսիայում՝ ասորերէն լեզուն սովորելու, իսկ միւս մասը տանում է Սամոսատ քաղաքը՝ յունական դպրոցներ մտցնելու համար։

Իսկ ինքը մնում է օտար երկնքի տակ, խորասուզված իր մտքերի մէջ։ Սակաւախօս Կորիւնը մի քանի նախադասութիւններ է դնում, որոնք ցոյց են տալիս թէ ո՞ր աստիճան լարված դրութեան էր հասել այդ միջոցին նրա ուսուցիչը։ Ամբողջապէս յափշ-

տակված իր գաղափարով, այդ մարդը, ճըգ-նաւորին յատուկ խորին ջերմեռանդութեամբ, արտասուքներով, հեծեծանքներով էր պաղատում երկնքի օգնութիւնը։ Նա յիշում էր մարգարէի խօսքերը. «Երբ հեծեծես, այն ժամանակ կապրես», մի գեղեցիկ ասացուածք, որ ցոյց է տալիս թէ դաժան աշխատանքն է կեանք ստեղծում։ Այդ ճգնութիւնները, այդ անդադար հոգածութիւնը մի նոր երկունք են առաջ բերում։ Միտքը գործում է տենդային արագութեամբ, գաղափարները տեսիլների ձև են ստանում և հոգու լարված կարողութիւնը, վերջապէս, ամփոփում է տարիների մտածմունքները, ձուլում է նըրանց տեսանելի, զգալի կերպարանքների մէջ։ Երկունքը վերջացաւ, այս անգամ հայկական տառերի ձևերը արդէն տպաւորված էին մեծ մարդու սրտում։

Ստեղծագործութեան այդքան բուռն, մրրկալից թափ շատ քիչ է իջնում մարդու վրա, դարեր, տասնեակ դարեր մի անգամ։ Շատ բնական է որ Մեսրոպը կրօնական յափշտակութեան գագաթնակէտին հասած լինէր այդ մեծ, ահաւոր ժամերին։ Նա կատարում էր մի հրաշալի խորհուրդ, որ նրան և նրա ժամանակակիցներին ներկայանում էր իբրև զուտ հոգևոր մեծագործութիւն։ Տառերը հարկաւոր էին յատկապէս քրիստո-

նէութեան տարածման համար. ունենալ հայերէն գիր՝ նշանակում էր հայոց ամբողջ աշխարհը ճշմարիտ աստուածպաշտութեան դարձնել։ Այդ մեծագործութիւնը նոյնքան յափշտակիչ էր, որքան այն վեհ զգացմունքը, որ տանում է նահատակին դէպի կախաղան և խարոյկ՝ զոհվելու Աստուծու փառքի, եկեղեցու յաղթանակի համար։

Դեռ համարեա իր կենդանութեան ժամանակ Մեսրոպը սուրբերի կարգն անցաւ ինչպէս մի մարդ, որ արժանացել էր Աստուծու այցելութեան։ Նրա մասին խօսող մեր բոլոր մատենագիրները, սկսած Կորիւնից, ներկայացնում են տառերի գիւտը իբրև մի երկնային հրաշք. յայտնի է յետոյ կազմված այն աւանդութիւնը, որ ասում է: թէ մի աներևոյթ ձեռք Մեսրոպի աչքի առջև գծագրեց քարի վրա հայերէն ձայնաւոր տառերի ձևերը։

Մեզ չը պիտի զարմացնէ այսպիսի վերաբերմունքը դէպի տառերի գիւտը։ Ստեղծագործութիւնը պարունակում է իր մէջ մի վեհ, տարերային, գերմարդկային երևոյթ։ Ամեն ժամանակ նա պաշտելի է եղել։ Իսկ հին աշխարհը ամեն մի արտասովոր, չափազանց խոշոր ու ապշեցնող գործ համարում էր երկնքի կատարած հրաշք։ Մանաւորապէս գիրը միշտ մարդկութեան հիացմունքն

է գրգռել. այսօր էլ ռամիկ ամբոխը սրբութիւն է համարում ամեն մի գրութիւն։ Նոյն իսկ հնութեան այնպիսի մեծ խելքը, ինչպիսին Պլատոնն էր, մարդու ամենահրաշալի գործերից մէկը տառերի գիւտն էր համարում և ասում էր որ դա այնպիսի մի մեծագործութիւն է, որ տառեր գտնողին պէտք է աստուած համարել կամ աստուծու նման մարդ։

Այս բոլորը, կրկնում ենք, միանգամայն հասկանալի է։ Բայց ի՞նչ կարող ենք ասել մենք. այսօրվայ մարդիկս, Մեսրոպի գործի մասին։ Հրաշքները վաղուց են վռնդված մեր աշխարհից. այսօր ամեն ինչ պէտք է բացատրել բանականութեան տեսակէտից, պէտք է նայել ամեն մի մեծագործութեան վրա ինչպէս մարդկային աշխատանքի վրա, որ ամեն ժամանակ և ամեն տեղ կատարվել է բնական հանգամանքների, սովորական միջավայրի մէջ։ Իսկապէս ի՞նչ է Մեսրոպի արածը, ի՞նչ տուեց նա մեզ։

Տառերի գիւտը, իսկ որ, մարդկային հանճարի ամենահրաշալի նուաճումներից մէկն է, որ ահագին զարկ տուեց քաղաքակրթութեան և առաջադիմութեան։ Առանց այդ գիւտի նոյն իսկ անկարելի է երևակայել քաղաքակրթութիւն։ Բայց տառերի գիւտին մարդկութիւնը միանգամից, յանկարծակի չը հասաւ։ Մինչև այդ նա երկար, շատ երկար

փորձեր էր արել իր միտքը դրոշմելու, կերպարանաւորելու մի միջոց գտնելու վրա։ Տառերը այդ դարաւոր որոնումների վերջին, ամենաաջող փորձն էին։ Տառերից առաջ, հազարաւոր տարիների ընթացքում, մարդկութիւնը գրելու զանազան ձեւեր ունէր. յայտնի են եգիպտական հերիօգլիֆները, նշանագրերը, Ասորեստանի և Բաբիլօնի սեպագրութիւնները։ Դրանք դեռ շատ կատարելագործված միջոցներ էին, եթէ համեմատենք այն խեղճ ու կոպիտ փորձերի հետ, որ գործադրում էր աւելի հին, նախապատմական մարդկութիւնը։ Աստիճանաբար առաջ գալով մի անկատար ձեւից դէպի միւս, աւելի կատարեալ ձեւը, դարերի ընթացքում փոփոխութիւններ և բարենորոգումներ կատարելով, մարդկութիւնը հասաւ տառերին, որոնցից աւելի կատարեալ միջոց նա մինչև այսօր դեռ չէ գտել։ Բայց տառերն էլ մի նոր, անկախ, բոլորովին ինքնուրոյն գիւտ չէին. երկար ժամանակի ընթացքում նրանք կազմվեցին հին նշանագրերից։ Ամբողջ ժամանակ ձեւերի փոփոխութիւններ էին տեղի ունենում, մինչև որ փորձով հասան ամենակատարեալ ձեւին, այն է՝ իւրաքանչիւր տառով մի լեզուի մէջ գոյութիւն ունեցող ձայները նշանագրելու։

Ո՞վ էր, որ առաջին անգամ այդպէս

արաւ։ Ո՞վ էր տառերի առաջին հնարողը։

Ինկապէս միայն մէկն էր, որ տառեր հնարող եղաւ ամբողջ աշխարհի համար։ Եւ որովհետև, ինչպէս տեսանք, այդ գործը կատարվեց երկար ժամանակի ընթացքում, ուստի խօսք չէ կարող լինել մի անհատի մասին։ Այբուբենական սիստեմը գտնողը մի անհատ չէր, մեր Մեսրոպի նման, այլ ամբողջ ազգը, սերունդներ միմեանց եաեւից։ Ժամանակակից գիտութիւնը տրամադիր է հաւանական համարելու որ այդ մեծ գիւտը պատկանում է հրէաներին։ Հրէական ազգից այբուբենը անցաւ Փիւնիկիա և այստեղից արդէն սկսեց տարածվել դէպի արևմուտք և արևելք։ Արևմուտքում ամենից առաջ այբուբենը մուտք գործեց Յունաստան, որտեղից անցաւ Իտալիա և ծնունդ տուեց հռոմէական կամ լատինական այբուբենին։ Այժմեան եւրոպական այբուբենները լատինականից են առաջ եկել, իսկ սլաւօնական ազգերի գրերը վերցրված են յունական գրերից։ Նոյնպէս յաղթական և արագաշարժ էր առաջին այբուբենի արշաւանքը դէպի արևելք։ Այստեղ նրան իւրացրին սեմական ցեղին պատկանող զանազան ազգեր, ինչպէս նաև իրանական ցեղերը. այբուբենը նոյն իսկ էլ առաջ գնաց և մտաւ մօնգօլական ցեղի մէջ։

Չը պէտք է կարծել թէ այդքան երկար

ու հեռու թափառումների մէջ հրէա-փիւնի-կեան նախատիպ այբուբենը անփոփոխ մնաց։ Մեր հերոսի նման դիւրաթեք, հեշտ փոփոխ-վող բան շատ քիչ կը գտնվի։ Ամեն տեղ նա յարմարվում էր այս կամ այն ազգի բնաւո-րութեան, լեզուին, հնչիւններին և դրա հա-մեմատ կերպարանափոխվում էր արմատա-պէս, բոլորովին ուրիշ գծագրութիւն էր ըն-դունում։ Նայում էք բազմաթիւ այբուբեն-ներին, տեսնում էք որ դրանք առանձին-առանձին բաներ են։ Բայց այդպէս երևում է. գիտութիւնը տարրալուծում է այդ բոլոր գծերը, բերում է համեմատութիւններ և ցոյց է տալիս որ ծագումը մէկ է, որ բոլոր այ-բուբենները մի աղբիւրից դուրս եկած եղ-բայրներ են։ Մէկը միւսից փոխ է առել, կոկել է ինչպէս ինքն է կամեցել, աւելացրել, պակասեցրել է, մի խօսքով ազգայնացրել է։

Այս այսպէս լինելուց յետոյ, ոչ մի հիմք և արդարութիւն չը կայ սպասելու որ հայե-րը ընդհանուր համաշխարհային օրէնքից մի առանձին, չը տեսնված բացառութիւն կազ-մէին։ Մեսրոպը պարզապէս վերցրել է իր ժա-մանակ գոյութիւն ունեցած այբուբեններից մէկը կամ մի քանիսը և նրանց օգնութեամբ տառեր է կազմել հայոց լեզուի համար։

Առաջին հարցը, որ ծագում է այս հան-գամանքից, այն է՝ թէ ինչ այբուբեն ունէր

Մեսրոպը իր աչքի առաջ: Այս մասին զանազան կարծիքներ են յայտնված, բայց մենք կը վերցնենք երկուսը, որոնք գիտնական հիմքերի վրա են դրված: Մի քանիսներն ասում են թէ հայոց (նոյնպէս և վրաց) այբուբենի համար նախատիպ եղել է յունականը, բայց կան և այնպիսիները, որոնք պնդում են թէ պարսից կամ, աւելի ճիշտ ասած, զէնդական և փէհլէվի գրերից են ծնվել մեր (և վրաց) տառերը: Երկու կողմերն էլ բերում են իրանց ապացոյցները, համեմատելով մեր տառերի ձևերը յունական և իրանական տառերի հետ, ցոյց տալով թէ ինչ տառից ինչ կերպարանաւորութիւն է առաջացել և դարձել մեսրոպեան տառ:

Թողնելով որ գիտնական հարցը վճռվի ապագայ քննութիւններով, մենք մեր կողմից կարելի ենք համարում աւելացնել, որ նայած երկու կողմերի բերած փաստերին, հաւանականութիւնը աւելի առաջինի կողմն է: Ահա ինչ ապացոյցներ կան: Նախ՝ մեր այբուբենի մէջ տառերը դասաւորված են ճիշտ այնպէս, ինչպէս յունական այբուբենի մէջ, մինչդեռ զէնդական այբուբենը բոլորովին ուրիշ դասաւորութիւն ունի: Երկրորդ՝ Մեսրոպը ընդունեց ձախ ձեռքից դէպի աջը գրելու սովորութիւնը, որ եւրոպական ազգերի մէջ ընդունված է. այս ուղղութեամբ գրված մեր տա-

ները ունեն նմանութիւն յունական տառերի հետ։ Իսկ գէնդերէնը կարդացվում և գրվում է աջից դէպի ձախ, և մեր տառերը գէնդ-փէհլէվեան տիպին մօտենում են միայն այն ժամանակ, երբ նրանց էլ գրում ենք աջից դէպի ձախ, այժմեան ուղղութիւնը շուռ ենք տալիս դէպի յետ *)։ Եթէ ճիշտ համարենք գէնդական թէօրիան, այն ժամանակ պէտք է ասենք և այն, որ ինքը, Մեսրոպը, չէր կարող կատարել այդ յեղաշրջումը միանգամից, պէտք է ենթադրենք, որ ազգի մէջ վաղուց մշակված էր աջից դէպի ձախ ուղղութիւն ունեցող տառերի ձևը և Մեսրոպը միայն փոփոխեց նրան, դարձնելով ձախից դէպի աջ։ Իսկ եթէ ընդունենք վաղուց հայացրած գէնդական տառեր, այն ժամանակ պիտի ընդունենք և հայկական գրութեան գոյութիւնը մինչև Մեսրոպ, մի բան, որ չէ ընդունում մեր բանասիրութեան լրջամիտ մասը։

Սակայն այս բոլորը դեռ չէ ցոյց տալիս թէ Մեսրոպի գործը հեշտերից էր։ Առաջին հայեացքից կարելի է կարծել թէ Մեսրոպը մի պարզ ընդօրինակող էր, հետևաբար և անհասկանալի է թէ ինչու պիտի նա այնքան չարչարվէր, դէս ու դէն ընկնէր։ Մես-

*) Համեմատութեան համար վերցնվում են ոչ թէ մեր այժմեան տառերը, այլ Մեսրոպի գրերը, որոնք կոչվում են երկաթագիր։

բոպի գործի ամբողջ վեհմութիւնը չէ պակասում այն հանգամանքից, որ մեր այբուբենի տառերը նմանութիւն ունեն օտար ազգերի տառերի հետ, մի բան, որ համաշխարհային երևոյթ է։ Չարչարվելու, երկար մըտածելու, իսկական հանճարեղ ստեղծագործութեան երկունքով տանջվելու անհրաժեշտութիւն կար Մեսրոպի համար, եթէ նրա առջև դրված լինէին նոյն իսկ աշխարհի բոլոր այբուբեններըՙ Մի՞թէ տառերի գիւտի մէջ գլխաւորը պայմանական նշաններ գծագրելն է։—Իհարկէ, ո՛չ։

Հայոց աշխարհում կար մի կենդանի լեզու, բաժանված բազմաթիւ բարբառներիՙ Իւրաքանչիւր հայաբնակ գաւառ, ինչպէս յայտնի է, ունի իր առանձին բառակազմական և հնչիւնական ձևերը։ Պէտք էր գտնել հայոց լեզուի էական, ամեն տեղի համար ընդհանուր յատկութիւնները. պէտք էր տարրալուծել այդ լեզուն, գտնել նրա բոլոր ձայները, հնչիւնները, յարմարեցնել իւրաքանչիւր տառանշան մի յայտնի հնչիւնի, բայց այնպէս որ լեզուն չըր զրկվի իր զարդերից, որոնք նրբութիւնների, նիւանսների մէջ են։ Պէտք էր այնպէս անել, որ լեզուն ամբողջովին հանդէս գար գրերի մէջ, առանց պակասութիւնների, առանց խեղաթիւրումներիՙ Ահա իսկապէս վիթխարի աշխատանքը, ահա

մտատանջությունների մի կոյտ, որի մէջ հանճարը միայն կարող է գլուխ հր կորցնել։ Տառերի արտաքին ձևը երկրորդական հարց է. գլխաւորը ներքինն է, հոգին է։ Լեզուն տարրալուծելով, Մեսրոպը գտաւ բազմաթիւ տեղական տարրեր, այսինքն այնպիսի հընչիւններ, որոնք հայերէն լեզուին էին յատուկ։ Ահա այդ հնչիւնների համար նա արդէն իրանից հնարեց տառեր և այսպիսով լրացրեց ու ճոխացրեց իր այբուբենը *)։

Գործի արտաքին, տեխնիկական կողմը, այսինքն բարեձևութեան և գեղեցկութեան հարցը Մեսրոպը իր վրա հր վերցրեց։ Սամոսատում նա գտնում է Հռոփանոս անունով մի ճարտար յոյն գծագրող և նրա հետ միասին վերջնական ձև է տալիս իր տառերին։ Առաջին անգամ նա, ի հարկէ, ինքը փորձեց իր գիւտը։ Բաց արաւ Աստուածաշունչը, վերցրեց Սողոմոնի Առակների առաջին գլխի առաջին տողը և թարգմանելով գրեց. «Ճանաչել զիմաստութիւն և զխրատ, իմանալ զբանս հանճարոյ»։ Սրանք են հայերէն այն խօսքերը, որոնք առաջին անգամ թղթի վրա դրոշմվելու բախտն ունեցան։

---

*) Մեսրոպի հնարած են համարվում հետևեալ 14 տառերը. ը, ժ, լ, խ, ծ, հ, ձ, ճ, յ, չ, ջ, վ, ր, ց։

*Այնուհետև Մեսրոպը ցոյց տուեց իր գիւտը այն հոգևորականներին, որոնց օգնութեանն էր դիմել և ամեն տեղ ուրախութիւն և հիացում գտաւ։*

*Մեր տառերի գիւտը տեղի ունեցաւ* 404 *թուականին, այսօրվանից ճիշտ* 1500 *տարի առաջ։*

---

մտատանջութիւնների մի կոյտ, որի մէջ հանճարը միայն կարող է գլուխ չը կորցնել։ Տառերի արտաքին ձևը երկրորդական հարց է․ գլխաւորը ներքինն է, հոգին է։ Լեզուն տարրալուծելով, Մեսրոպը գտաւ բազմաթիւ տեղական տարրեր, այսինքն այնպիսի հընչիւններ, որոնք հայերէն լեզուին էին յատուկ։ Ահա այդ հնչիւնների համար նա արդէն իրանից հնարեց տառեր և այսպիսով լրացրեց ու ճոխացրեց իր այբուբենը *)։

Գործի արտաքին, տեխնիկական կողմը, այսինքն բարեձևութեան և գեղեցկութեան հարցը Մեսրոպը իր վրա չը վերցրեց։ Սամոսատում նա գտնում է Հռոփանոս անունով մի ճարտար յոյն գծագրող և նրա հետ միասին վերջնական ձև է տալիս իր տառերին։ Առաջին անգամ նա, ի հարկէ, ինքը փորձեց իր գիւտը։ Բաց արաւ Աստուածաշունչը, վերցրեց Սողոմոնի Առակների առաջին գլխի առաջին տողը և թարգմանելով գրեց․ «Ճանաչել զիմաստութիւն և զխրատ, իմանալ զբանս հանճարոյ»։ Սրանք են հայերէն այն խօսքերը, որոնք առաջին անգամ թղթի վրա դրոշմվելու բախտն ունեցան։

---

*) Մեսրոպի հնարած են համարվում հետևեալ 14 տառերը․ ը, ժ, լ, խ, ծ, հ, ձ, ճ, յ, չ, ջ, վ, ր, ց։

*Այնուհետև Մեսրոպը ցոյց տուեց իր գիւտը այն հոգևորականներին, որոնց օգնութեամն էր դիմել և ամէն տեղ ուրախութիւն և հիացում գտաւ։*

*Մեր տառերի գիւտը տեղի ունեցաւ* 404 *թուականին, այսօրվանից ճիշտ* 1500 *տարի առաջ։*

---

## Գ.

Հանդէս Վաղարշապատում։—Ընդհանուրին էր պատկանում նոր գիւտը։—Գոյութեան կռիւը Մեսրոպի տառերի համար։—Դպրոցական մեծ շարժում։—Երկրի բոլոր տարրերը առաջ են քաշվում։—Լուսաւորութեան գործիք։—Անգիր ժողովրդի դրութիւնը։—Մեսրոպը իբրև դպրոցներ կառավարող։—Հոգսեր յունական Հայաստանի համար։—Մեսրոպը Կ. Պօլսում։

---

Մեծ իրարանցման մէջ է հայոց մայրաքաղաք Վաղարշապատը։ Կատարվում են ինչ որ ոչ-առօրեայ, տօնական պատրաստութիւններ։ Քաղաքը գլրդալով դուրս է թափվում իր դռներից։ Արևելքը գիտէ առանձին աղմկալի հանդիսաւորութիւն տալ ուխտագնացութիւններին. բայց այս հանդէսը սովորական ուխտագնացութիւն չէ։ Երկրի ամբողջ փայլը նրա հետ է։ Այդտեղ են քաղաքում գտնվող նախարարները, որոնք մի ամբողջ գունդ են կազմում. այդտեղ է և Սահակ կաթողիկոսը եկեղեցական դասի հետ։

Վերջապէս ինքը, Թագաւորն էլ, դուրս է ելել պալատից և գնում է ժողովրդի հետ։

Մեծ բազմութիւնը շարժվում է Արարատեան դաշտի վրա. Նրա մէջ է այն ամենը, ինչ երկրի պատիւը, իշխանութիւնը, հարստութիւնն է մարմնացնում։ Նա դիմում է դէպի Ոսկի գետը՝ դիմաւորելու Ասորիքի ճանապարհորդին, որ եկել, կանգ էր առել գետի ափին։ Երկիրը գնում էր պաշտօնապէս ընդունելու, վաւերացնելու նրա գիւտը։ Ուրախութեան աղաղակները, որոնք թնդում էին օդի մէջ, վկայում էին որ այդ ընդունելութիւնը, վաւերացումը սրտագին է, որ ամենքը հասկանում են թէ ինչ է ճանապարհորդ վարդապետի բերածը։

Մեծամեծները—Թագաւորը, կաթողիկոսը, նախարարները ողջագուրվեցին Մեսրոպի հետ։ Եւ ամբողջ բազմութիւնը, աւելի էլ հանդիսաւորութիւն հաղորդելով իր գնացքին, սկսեց վերադառնալ դէպի Վաղարշապատ։ Ճանապարհին եկեղեցական դասը երգում էր, ցնծութեան աղաղակները անընդհատ բարձրանում էին ամբոխի միջից։ Հայոց մայրաքաղաքը հրճուանքով ընդունեց իր մէջ այդպիսի հանդէսով և օրհնութիւններով բերված գանձը, տօնեց այդ վերադարձը։ Ժողովրդական բուռն համակրանքները միանգամայն համապատասխա-

նում էին այն գործի ոգուն, որ կատարել էր Մեսրոպը։ Մի բոլորովին ժողովրդական գործ, որ կատարվել էր ամենքի համար— թէ թագաւորի, թէ նախարարի, թէ վերջին նախրարածի համար։ Ամենքը պիտի վայելէին մեծ բարիքը։

Կորիւնը իր ուսուցչի վերադարձը նըմանեցնում է Մովսէսի իջման Սինայ սարից, երբ հրեաների հայրենասէր մարգարէն տանում էր Եհովայի տասը պատգամները։ Այդ նմանութիւնը բերված է այն մտքով, որ ցոյց տրվի թէ Մեսրոպն էլ Մովսէսի նման հաղորդակցութիւն ունեցաւ աստուածութեան հետ։ Ուրիշ տեսակ նմանութիւն չը կայ։ Ամենից առաջ յիշենք այն, որ Մովսէսի ճանապարհը Սինայից մինչև հրէական վրանները նման չէր այն ոգևորված ընդունելութեան, որ ցոյց տուեց հայոց աշխարհը իր տառերին։ Այնտեղ ժողովրդի ուրացութիւնն ու յանցանքներն էին Մովսէսի առաջ, այստեղ մի յաղթական գնացք էր, որ մինչև երկինք էր բարձրացնում Մեսրոպի յաղթութիւնը։ Մեր ամբողջ պատմութեան ընթացքում սա առաջին մեծ դէպքն է, երբ հայ ժողովուրդը մի ճշմարիտ, նշանաւոր յաղթութիւն տարաւ։ Նոյն իսկ եթէ Տիգրանները աւելի սովորական երևոյթներ լինէին մեր պատմութեան մէջ, դարձեալ նը-

նրանց յաղթութիւնները չէին կարող համեմատվել այս համեստ վարդապետի գործի հետ։ Զէնքերն ու անթիւ գնդերը չեն կազմում մի երկրի բախտը, այլ ժողովրդի միտքը լուսաւորող հիմնարկութիւնները։ Առանց լուսաւորութեան չէ կարող լինել ուժեղ, ինքնուրոյն, կենսունակ ազգ։ Տիգրանների յաղթութիւններից մեզ ոչինչ ժառանգութիւն չը մնաց, մինչդեռ ամբողջ 15 դար է, ինչ հայը ունի հաստատ ու անկողոպտելի մնացած մի ժառանգութիւն, և դա Մեսրոպի այդ աննման յաղթութիւնից է մնացել։

Սակայն այբուբեն կատարելագործելը, հնարելը դեռ ամէն ինչ չէ։ Ընդհանուր պատմութիւնը մեզ աւանդում է, որ շատ այբուբեններ, երկար ապրելուց յետոյ, անհետացան, շատերը նոյն իսկ երկար կեանք էլ չունեցան։ Ազգերը կային, մնում էին, բայց նրանց գրերը կորչում էին։ Պարսկաստանը կորցրեց նախ փէհլէվերէն այբուբենը, ապա ընդունեց զէնդերէնը, բայց նրան պահել չը կարողացաւ և հրաժարվելով իր բուն ազգային ստացուածքներից, գործածութեան մէջ մտցրեց արաբական տառերը։ Նոյն իսկ Ասորիքում, ուր Մեսրոպը օգնութիւն էր որոնում, մի քանի անգամ փոխվել են այբուբենները. ընկել, ոչնչացել են հները, կեանք են ստացել նորերը։ Այսպիսի օրինակներ

շատ կան. էլ չենք խօսում այն ազգերի մասին, որոնք անհետացել են աշխարհից իրանց գրերի և լեզուի հետ։

Ի՞նչ է ցոյց տալիս այս տեսարանը։— Միշտ մի և նոյնը, յաւիտենականը, անփոփոխելին։ Այբուբենն էլ, ինչպէս մարդը, ինչպէս մարդկային ամեն մի գործ, ենթարկված է գոյութեան կռւի անողոք օրէնքին։ Ինչպէս գիտէք, այդ օրէնքը ասում է որ կռւի մէջ գոյութիւն պահպանում են նրանք, որոնք աւելի կատարեալ և լաւ պատրաստված են։ Մեսրոպի գիւտը 15 դարերի ընթացքում գտնվում էր գոյութեան ամենակատաղի կռւի դաշտում. և այսօր էլ նա կայ, ապրում է։ Այս գեղեցիկ երևոյթը ամենից առաջ, իհարկէ, Մեսրոպի հանճարին է պատիւ բերում, որ տուեց հնար եղածին չափ ամենակատարեալը, այնպիսի մի գործիք, որից աւելի լաւը հային հարկաւոր չեղաւ այդքան երկար ժամանակ։ Հայոց լեզուն պակասութիւն չէ զգացել, չէ ճնշվել Մեսրոպեան տառերի շրջանում։ Եւ այսօր էլ, բարդ պահանջների և մրցութիւնների մեր ժամանակում, տեսնում ենք թէ որքան լիակատար ու անպակաս է 1500 տարի առաջ եղած գիւտը։

Սակայն տառերը ինքն ըստ ինքեան, որքան էլ հարուստ ու կատարեալ գործիք

լինեն, որքան էլ հանճարի կնիք կրեն իրանց վրա, դեռ բաւական չեն մի ժողովրդի մտաւոր առաջադիմութիւնը ապահովելու համար։ Կարելի է տառեր գտնել, բայց չը գործադրել նրանց կամ գործադրել միմիայն մի քանի դէպքերում։ Այսպէս եղած ժամանակ հետևանքը նոյնը կը լինէր, ինչ տառեր չունեցած ժամանակը։ Տառերը գրականութեան համար էին, իսկ գրականութիւն չը կար Հայաստանում։ Տառերը ուսուցանելու համար էին, բայց նրանց միջոցով ինչ կարելի էր սովորեցնել, երբ չը կար ոչինչ գրաւոր վաստակ։

Ահա թէ ինչ գործեր էին դեռ մնում։ Պահանջվում էր աւելի մեծ գործ, տառերը ցոյց էին տալիս անհրաժեշտութիւն աւելի շատ եռանդ, աւելի յամառ, երկարատև աշխատութիւն գործ դնելու։ Եւ այս մեծագործութեան համար էլ պատրաստ հող կար Հայաստանում։ Մեսրոպի հետ միանում է Սահակը։ Երկուսը մի հոգի, մի միտք դառած, անբաժանելի զուգակիցներ են հանդիսանում մտաւոր գործունէութեան մէջ. այստեղից այլ ևս չէ կարելի այդ երկու անուններ միմեանց կողքից հեռացնել։ Առաջին, նախապատրաստական շրջանն անցել էր— դա տառերի գիւտն էր։ Այժմ սկսվում էր երկրորդ, աւելի լայնարձակ շրջանը։

Երկրի զանազան կողմերում բացվում են դպրոցներ և միաժամանակ պատրաստվում են գրքեր։ Հասկանալի է, որ հայերը նախ պէտք է ամեն ինչ փոխ առնէին ուրիշներից։ Սկսվում է վերին աստիճանի եռանդոտ Թարգմանչական գործունէութիւն. դա Թարգմանիչների մի ամբողջ դարագլուխ է և մեր առաջին գրական գործիչները երախտապարտ սերունդների կողմից ստացել են «Թարգմանիչ» պատուանունը։

Ամենից առաջ հարկաւոր էին, ի հարկէ, եկեղեցական գրքեր։ Եւ տառերի գիւտից յետոյ անմիջապէս սկսվում է Աստուածաշունչի Թարգմանութիւնը։ Այս հսկայական գործը երկար տարիների աշխատանք էր պահանջում և նրան նուիրվեց գլխաւորապէս Սահակը, մինչդեռ Մեսրոպը աւելի շատ ճանապարհորդում էր զանազան տեղեր, կատարելով բոլոր նոր բացված դպրոցների վերաբերմամբ վերահսկողի պաշտօն։ Եթէ այդ էլ չը լինէր, եթէ Մեսրոպը Սահակի հետ միշտ աշխատէր, դարձեալ երկուսի ոյժերը, լեզուագիտութիւնը բաւական չէին լինի զգացվող մեծ կարիքը լրացնելու համար։ Գրական գործեր շատ էին հարկաւոր, և ահա ս. Սահակն ու ս. Մեսրոպը յղանում են մի գեղեցիկ միտք—պատրաստել զարգացած մարդիկ, աշխատակիցներ։ Նրանց դըպ-

րոցների առաջին գործն այդ է լինում. նը-
րանք ընտրում են ընդունակ, աշխույժ պա-
տանիներ, դաստիարակում են մայրենի լե-
զուի գիտութեան մէջ և ապա ուղարկում են
արտասահման։

Բայց Սահակ-Մեսրոպեան դպրոցները
միայն հոգևորականներ և հոգևոր գրքեր
թարգմանողներ պատրաստելու նեղ ու սահ-
մանափակ նպատակին չէին ծառայում։ Ճիշտ
է, ամենից առաջ և ամենից շատ եկեղեցու
հոգսերն էին նկատի առնվում և Մեսրոպը
իր աշակերտներին սովորեցնում էր և ճգնա-
ւորական խիստ կեանքի զրկանքներին, որ-
պէս զի նրանք տոկուն ու չարքաշ գործիչ-
ներ դառնան,—բայց և այդպէս, պարզ կղե-
րանոցներ չէին այդ դպրոցները. նրանց մէջ
պատրաստվում էին և աշխարհական մար-
դիկ։ Բոլոր դասակարգերը, սկսած արքու-
նիքից մինչև գիւղացի երկրագործը, աշա-
կերտներ էին ուղարկում այդ դպրոցները։
Նոյն իսկ հայ կինը, հեթանոսական հասկա-
ցողութիւնների ժամանակ տնային մի սըր-
կուհի, մօտենում էր գրքին, ժամանակի լու-
սաւորութիւնից բաժին էր տանում։ Մայ-
րենի լեզուն այդ անխօս արարածներից
պատրաստում էր հասարակական ոյժ, որ
շուտով հրապարակ եկաւ իբրև մի նոր, հրա-
շալի երևոյթ։ Ս. Սահակը իր ձեռքով դպրոց

մացրեց իր երեք Թոռներին—Վարդան Մամիկոնեանին և նրա երկու եղբայրներին. ուրիշ նախարարական տոհմերն էլ աշակերտներ էին տալիս. դրանցից մէկն էր մեր ծանօթ Վահան Ամատունին: Բայց զարմանալին այս չէ: Խուլ, կորած գիւղերից մարդիկ են դուրս գալիս, որոնք հռչակում են թէ իրանց և թէ իրանց գիւղի անունները. Յովսէփ Հողոցիմք գիւղից, Ղևոնդ երէց Իջաւանք գիւղից, Աբրահամ սարկաւագ Արած գիւղից և այլն: Զարմանալին ահա այս է. բուն ժողովրդական տարրը, որ մինչև այդ հարկատու էր միայն և այս կամ այն իշխանի հպատակ, գործիչներ է հանում իր միջից և ազդում է երկրի ընդհանուր ճակատագրի վրա:

Այս համատարած եռանդուն կրթական գործունէութիւնը հրճուանք է պատճառում Կորիւնին, որ ասում է. «Այդ ժամանակ հայոց երանելի և ցանկալի աշխարհը անպայման սքանչելի դարձաւ»: Սքանչացնում էր այն, որ հայ երկիրը, որ մինչև անգամ լսած էլ չէր այն կողմերի անունը, ուր քարոզվել էր քրիստոնէութիւնը, այժմ տեղեկացաւ այն ամենին, ինչ կատարվել էր այնտեղ: Իբրև կրօնական մարդ, որ իր ժամանակը միայն աչքի առաջ ունէր, Կորիւնը կարծում էր թէ միայն այդ օգուտն ունեցաւ հայ ժողովուրդը: Բայց տառերի գիւտը միայն Հրէաստա-

նը չէր մոռացնում հայ ազգի մտքին և սըր-
տին, այլ աւելի լայն և անսահման մի շըր-
ջան—ամբողջ մտածող մարդկութիւնը։ Այ-
նուհետև հայերի սեփականութիւն էր դառ-
նում համաշխարհային մտքի գանձարանը։

Կար աւելին. հայ ազգն էլ կոչվում էր
մտնել այդ գանձարանի մէջ, մասնակցել նը-
րան իր ինքնուրոյն ընդունակութիւններով։
Մի անյայտ միջնադարեան հայ հեղինակ,
Մեսրոպի ժամանակը նկարագրելիս, ասում
է. «Լուծվեց բերանի կապը, փարատվեց խա-
ւարը, ամպի սիւնը լուսաւորում է, հոգևոր
ծիծը կաթ է տալիս»։ Եւ իրաւ։ Մեսրոպը
իր գիւտով նախ և առաջ բաց էր անում դա-
րերով կապկապված լեզուն, դուրս էր կան-
չում ժողովրդի մէջ թաքնված ստեղծագոր-
ծական ոյժերը և տալիս էր նրանց գործա-
դրութեան լայն ասպարէզ։

Մի անգիր ժողովրդի համար ոչ ժա-
մանակ կարող է գոյութիւն ունենալ, ոչ
մարդկային ցեղի դարաւոր փորձը, ոչ սե-
րունդների անընդհատ աշխատանքը։ Միշտ
երեխայ է այդպիսի ժողովուրդը. մեծանում
է մի որոշ շրջանում,փորձով և աւանդու-
թիւններով հասնում է մի յայտնի աստիճա-
նի ու կանգ առնում։ Նրա մտքին մի յայտնի
չափով մատչելի է միայն այն, ինչ երևում
է բնութեան մէջ և ինչ հասնում է նրա ա-

կանոնին աւանդութեան կերպարանքով, ինչ սերունդները կարողանում են իրար տալ բերանացի։ Եւ այդ պատճառով անգիր ժողովրդի աշխարհայեացքները շատ փոքր ու սեղմված են, պարփակված տեղական նեղլիկ հասկացողութիւնների շրջանում։ Այդպիսի ժողովուրդները չեն կարող առաջ քայլել, նրանք անչափահաս են մնում յաւիտեան, կաշկանդված ու դժբախտ, որովհետև սովորել չեն կարողանում, իսկ սովորելով միայն կարելի է այսօր երէկվանից քիչ առաջ գնալ։ Սովորել և ստեղծագործել—այս է մարդկային հասարակութեան բախտի օրէնքը։ Նոյն այս օրէնքը հասկացված անհրաժեշտութիւն էր դառնում հայոց աշխարհում։

Բարեբարվում էին երկրի ոչ միայն կենտրոնական տեղերը, այլ և հեռաւոր, անծանօթ ծայրերը։ Մեսրոպը յիշեց իր Գողթանը, որ այնքան ցաւ ու տառապանք էր պատճառել նրան և մղել էր դէպի մտաւոր հերոսութիւն։ Նա նորից գնաց Գողթան, բայց այս անգամ կռիւ ու հրաման չէր տանում իր հետ, այլ գիրք ու դպրոց։ Այժմ գործը ապահովված էր, տարիների կրթութեամբ ինքը, այդ յամառ հեթանոսասէր գաւառը, կը պատրաստէր իր համար քրիստոնեայ հովիւներ և ժողովուրդ։ Գողթանից Մեսրոպը մտաւ լեռների վայրենութեան աշ-

խարհը, Սիւնիք և Արցախ, ուր անմատչելի խոռոչներում ծածկված մնացել էին տեսակ-տեսակ հին աղանդներ և պաշտամունքներ։ Դպրոցներ բացվեցին նոյն իսկ հեռաւոր Գարդմանի ձորերում, Արցախի հիւսիսային սահմանագլխի վրա։

Աջողութիւններից խրախուսված Մեսրոպի մէջ այժմ վառվում է միսիօնարական ոգևորութիւնը. իւրաքանչիւր մութ ու դըժբախտ անկիւն գրաւում է նրան և նա շտապում է, որքան հնարաւոր է մի անհատի համար, ազատել մարդկութիւնը անգիր բարբարոսութեան ճանկերից։ Հայաստանի սահմաններին կպած էին այդպիսի երկու ընդարձակ երկիրներ—Վրաստանն ու Աղուանից աշխարհը։ Մեսրոպը, ինչպէս հաւատացնում են մեր պատմագիրները, անցնում է այդ երկիրները և այնտեղ էլ քարոզում է լուսաւորութիւն, հաստատում է դպրութիւն, հնարելով գրեր և վրացիների ու աղուանցիների համար *)։ Այսպիսով Հայաստանը հանդիսա-

*) Աղուանից այբուբենը մեզ չէ հասել, կորել է այդ խորհրդաւոր ազգի հետ։ Իսկ վրաց տառերի վերաբերմամբ բանասիրութիւնը վիճելի է համարում թէ նրանք Մեսրոպի ձեռքով են գտնված։ Բայց այս դէպքում դեռ պէտք է ապացուցանել թէ Կորիւնը ժամանակակից և ականատես վկայ չէ, կամ թէ նրա գրուածքի այն մասը, որ խօսում է վրաց տառերի գիւտի մասին, յետոյ է աւելացրված։ Քանի որ չը

նում է քրիստոնէական լուսաւորութեան միջնորդ և հաղորդիչ իր դրացիների վերաբերմամբ, մի դեր, որ, տարաբախտաբար, երկար չը կարողացաւ առաջ տանել։

Հեռաւոր, նոյն իսկ օտար կողմերի համար այսքան հոգ տանողները, բնականաբար, չէին կարող մոռանալ հայութեան այն խոշոր հատուածը, որ գտնվում էր յունաց տիրապետութեան տակ։ Սահակն ու Մեսրոպը այդ բաժնում էլ շտապեցին գործ սկըսել, բայց առաջին անգամից արգելքների հանդիպեցին բիւզանդական կառավարութեան կողմից։ Կարիք չը կայ երկար բացատրելու այս տարօրինակ հանգամանքը։ Հայաստանի բաժանումը, ինչպէս տեսանք,

կան այդ ապացոյցները, մենք ոչինչ հիմք չունենք չը հաւատալու Կորիւնին։ Մանաւանդ որ նրա պատմածի մէջ անհաւանական կամ անկարելի բան չը կայ։ Պրօֆէսօր Մառ շատ գեղեցիկ կերպով ապացուցել է որ վրացիները, մինչև եկեղեցիների բաժանումը, հայոց գրականութեան ազդեցութեան տակ էին գտնվում և հայերէն թարգմանութիւններից էին օգտվում ասորական ընագիրները վրացերէնի վերածելու ժամանակ։ Անկարելին միայն այն է, որ Մեսրոպը մի կարճ միջոցում այնքան սովորած լինի վրացերէնը, որ նրա համար այբուբեն գտած լինի։ Աւելի ճիշտ կը լինի ասել, որ նա վրացիների հետ միասին գործեց և իբրև արդէն հմուտ մարդ՝ իր խորհուրդներով ու ցուցմունքներով ղեկավարեց նրանց, վերջնական ձև տալով տառերին։

արդէն մի մեծ փաստ էր որ բիւզանդական կառավարութիւնը ղեկավարվում էր եսամոլ քաղաքականութեամբ, իր սեփական շահերն էր որոնում ու գնահատում։ Նրա շահը միայն երկիրներ խուրացնելը չէր, այլ և այն, որ հպատակ ազգերի մէջ արմատախիլ անվեն ցեղական-ազանդական առանձնայատկութիւնները։ Հայերը ինքնաբերաբար ձգտում ունէին դէպի Բիւզանդիան, որքան աւելի հաստատամիտ քրիստոնեաներ էին դառնում։ Այդ բնական համակրանքը երբէք չէր կարող պակասել մի ազգի մէջ, որ ենթարկված էր օտար ու անհաշտ կրօնով ղեկավարվող մի ասիական բռնապետութեան։ Բայց—զարմանալի՜ բախտ—Բիւզանդիան, հայերի յոյսն ու համակրանքը, որի համար նրանք այնքան հալածանքներ ու դառնութիւններ էին կրում Պարսկաստանի կողմից, նայում էր այդ քրիստոնեայ երկրին իր եսամոլ ձգտումների տեսակէտով. նրան համակրանք ու հաւատարմութիւն չէին հարկաւոր, այլ կատարեալ յունացում։ Այս էր բիւզանդականութեան ոգին դարերի ընթացքում։

Իրանց բաժինը յունացնել կամեցող բիւզանդացիները, բնականաբար, չէին կարող թոյլ տալ որ հայոց նորածին գրականութիւնը տարածվի այդ բաժնում և մայրենի լեզուի ոյժով մաքառէ յունականու-

թեան դէմ։ Ս. Սահակը ստիպված եղաւ բանակցութիւն սկսել Բիւզանդիայի հետ և ուղարկեց այնտեղ մի պատգամաւորութիւն, որի գլուխը ս. Մեսրոպն էր։

Երևի Մեսրոպը լաւ կարողացաւ համոզիչ փաստերով ցոյց տալ բիւզանդական արքունիքին թէ ինչ հետևանքներ կարող է առաջ բերել քրիստոնեայ պետութեան վարմունքը քրիստոնէական այնքան կարևոր գործի մէջ, որ սկսվել էր Հայաստանում և թէ ինչ տեսակ օրինակ կը դառնան բիւզանդական արգելքները Պարսկաստանի համար։ Թէոդոս կայսրը համոզվեց, թոյլ տուեց որ հայ դպրոցներ բացվեն և յունական Հայաստանում։ Մեսրոպը վերադարձաւ կայսերական պարգևներով մեծարված։ Նրան ճանապարհին սպասում էր Սահակը։ Եւ նրանք, ի հարկէ, շտապեցին իսկոյն օգուտ քաղել կայսրի թոյլտուութիւնից։

Եւ այնուհետև ամբողջ Հայաստանի մէջ այլ ևս չը մնաց մի տեղ, ուր ներս մտնելու համարձակութիւնը չունենային մեսրոպեան տառերը։

---

## Ե.

*Գրականութեան պահանջը։—Ո՞ւմ աշակերտել. Ասորիք և Արևմտեան աշխարհ։—Առաջին հայ ուսանողներ և արտասահմանեան կրթութիւն։—Անդրանիկ և կրտսեր աշակերտներ։ — Ո՞ւր և ի՞նչ էին նրանք սովորում։—Վերադարձ և գրական աշխատութիւններ։ —Սահակի և Մեսրոպի մշակած լեզուն։—Ինքնուրոյն գրականութիւն։—Դա զուտ կրօնական է։—Եկեղեցու նշանակութիւնն ու ազդեցութիւնը։*

---

Բայց՝ այս բոլոր հոգսերն ու անշէջ եռանդը դեռ բաւական չէին, որպէս զի Սահակն ու Մեսրոպը հանգիստ նստէին իրանց տեղը։ Երևացին տառեր, դպրոցներ, նոյն իսկ գրքեր։ Ի՞նչ էր մնում։ Եղածը նիւթեր էին, մինչդեռ պէտք էր կառուցանել մի ամուր ու հոյակապ շինութիւն։ Մնում էր, ուրեմն, ուղղութիւն տալ կրթական գործին, հոգի դնել նրա մէջ։ Այս մեծ ու ծանր պարտաւորութիւնն էլ Սահակն ու Մեսրոպը կատարեցին մի հիանալի հեռատեսութեամբ։

Հայաստանը իր սեփական միջոցներով

*թեան դէմ։ Ս. Սահակը ստիպված եղաւ բանակցութիւն սկսել Բիւզանդիայի հետ և ուղարկեց այնտեղ մի պատգամաւորութիւն, որի գլուխը ս. Մեսրոպն էր։*

*Երևի Մեսրոպը լաւ կարողացաւ համոզիչ փաստերով ցոյց տալ բիւզանդական արքունիքին թէ ինչ հետևանքներ կարող է առաջ բերել քրիստոնեայ պետութեան վարմունքը քրիստոնէական այնքան կարևոր գործի մէջ, որ սկսվել էր Հայաստանում և թէ ինչ տեսակ օրինակ կը դառնան բիւզանդական արգելքները Պարսկաստանի համար։ Թէոդոս կայսրը համոզվեց, թոյլ տուեց որ հայ դպրոցներ բացվեն և յունական Հայաստանում։ Մեսրոպը վերադարձաւ կայսերական պարգևներով մեծարված։ Նրան ճանապարհին սպասում էր Սահակը։ Եւ նրանք, ի հարկէ, շտապեցին իսկոյն օգուտ քաղել կայսրի թոյլտուութիւնից։*

*Եւ այնուհետև ամբողջ Հայաստանի մէջ այլ ևս չը մնաց մի տեղ, ուր ներս մտնելու համարձակութիւնը չունենային մեսրոպեան տառերը։*

---

## Ե.

Գրականութեան պահանջը։—Ո՞ւմ աշակերտել. Ասորիք և Արևմտեան աշխարհ։—Առաջին հայ ուսանողներ և արտասահմանեան կրթութիւն։—Անդրանիկ և կրտսեր աշակերտներ։ — Ո՞ւր և ի՞նչ էին նրանք սովորում։—Վերադարձ և գրական աշխատութիւններ։ —Սահակի և Մեսրոպի մշակած լեզուն։—Ինքնուրոյն գրականութիւն։—Դա զուտ կրօնական է։—Եկեղեցու նշանակութիւնն ու ազգեցութիւնը։

---

Բայց այս բոլոր հոգսերն ու անշէջ եռանդը դեռ բաւական չէին, որպէս զի Սահակն ու Մեսրոպը հանգիստ նստէին իրանց տեղը։ Երևացին տառեր, դպրոցներ, նոյն իսկ գրքեր։ Ի՞նչ էր մնում։ Եղածը նիւթեր էին, մինչդեռ պէտք էր կառուցանել մի ամուր ու հոյակապ շինութիւն։ Մնում էր, ուրեմն, ուղղութիւն տալ կրթական գործին, հոգի դնել նրա մէջ։ Այս մեծ ու ծանր պարտաւորութիւնն էլ Սահակն ու Մեսրոպը կատարեցին մի հիանալի հեռատեսութեամբ։

Հայաստանը իր սեփական միջոցներով

չէր կարող բաւարարութիւն տալ դարի լուսաւորութեան պահանջներին։ Դեռ նոր իր խաւար ու տգէտ անցեալից դուրս եկող մի երկիր կարող էր երկար ջանքերով այնպիսի դպրոցներ ունենալ, որոնց ոյժը հասարակ գրագիտութիւն սովորեցնելուց դէնը չէր անցնում։ Գրագիտութեան երկու բարձր ղեկավարները կարող էին, ի հարկէ, ընդունել որ հայերի համար բաւական է և այն գիտութիւնը, որ իրանք ունեն։ Բայց հէնց գըլխաւորն այն էր, որ նրանք իրանց իմացածը բաւական չը համարեցին։ Պէտք էր աշակերտել ուրիշ ազգերին։ Հինգերորդ դարում Հայաստանին մօտ էին երկու ազգեր, որոնք կարող էին ուսուցիչ հանդիսանալ—ասորիները և յոյները։ Դրանցից ո՞րը պէտք էր ընտրել։

Ասորիքը (Սիրիա) ունեցաւ իր սեփական, ինքնուրոյն գրականութիւնը, որ զուտ կրօնական էր։ Բայց այդ գրականութեան մէջ շատ քիչ հեղինակներ կան, որոնք աչքի են ընկնում իբրև տաղանդ։ Ասորիները ամենամեծ մասամբ մնացին միջակութիւններ, որոնք աւելի ուրիշներից էին սովորում, քան իրանք էին ստեղծագործում։ Նրանք մեծ մասամբ թարգմանութիւններ էին անում ունարէնից, որոնք ապագայում մեծ ծառայութիւն պիտի մատուցանէին գիտութեան։ Ի՞նչ կարող էր տալ Ասորիքը հայերին, երբ

ինքն էլ մուրացկան էր։ Ժամանակի լուսաւորութեան հայրենիք մնում էր դարձեալ Յունաստանը, թէև այդտեղ գիտութիւնն ու գրականութիւնը անկման մէջ էին՝ համեմատած Պլատոնների և Էսքիլէսների դարի հետ։

Որքան էլ աննպաստ լինէին քաղաքական հանգամանքները, որքան էլ յունական կառավարութիւնը սառն ու անտարբեր տրամադրութիւն ունէր դէպի հայերի ազգային ամենակարևոր շահերը, յունասիրութիւնը, այնուամենայնիւ, մի անհրաժեշտութիւն էր, որ ընդունվեց մեր առաջին գործիչների կողմից իբրև կեանքի և մահվան հարց։ Այն հանգամանքը, որ ս. Մեսրոպը իր գործի համար օգնութիւն որոնում էր Ասորիքում, մի կողմ թողնելով Յունաստանը, անշուշտ ունէր իր մէջ, բացի ուրիշ պատճառներից, նաև քաղաքական նկատումներ։ Միշտ հայ գործիչների գլխին դամոկլեան սրի պէս կախված էր այն իրողութիւնը, որ Պարսկաստանի համար վտանգաւոր չէր միայն ասորական քրիստոնէութիւնը։ Հայերն էլ ստիպված ասորիներին էին դիմում։ Առաջին թարգմանութիւնները, օրինակ Աստուածաշունչը, եկեղեցական գրքերը, ասորերէնից կատարվեցին։ Բայց տարիների փորձը ցոյց տուեց որ այդ աղքատիկ աղբիւրից միայն աղքատ ու անկատար բան կարելի է վերցնել։ Սակայն

ու Մեսրոպը շատ լաւ զգում էին թէ ուր է փրկութիւնը։

Ահա մի ուրիշ մեծ գործ, որ պատիւ է բերում նրանց խելքին։ Փրկութիւնը Յունաստանն էր. բայց յոյն ուսուցիչներ չէին կարող մտնել պարսկական Հայաստանը. և եթէ մտնէին էլ, կարող կը լինէին լաւ կրթված մարդիկ պատրաստել։ Կրթութիւնը յարմար միջավայր էլ է պահանջում, իսկ Հայաստանը երբէք այդպիսի տեղ չէր եղել։ Եւ երկու մեծ զուգակիցները վճռում են մի համարձակ քայլ անել, որից մեր աշխարհը անհուն բարիքներ պիտի ստանար։ Մոռանալով պարսկական կասկածները, նրանք իրանց աշակերտներից ամենաընդունակներին ուղարկում են Յունաստան՝ կրթվելու և կատարելագործվելու։

Այդ երիտասարդները առաջին հայ ուսանողներն էին, առաջին թարմ ոյժերը, որոնց մի յետադէմ ասիական երկիր ուղարկում էր հեռու տեղեր, որպէս զի բան սովորեն և գան իրան էլ սովորեցնեն։ Եթէ ի նկատի ունենանք, որ այդ բոլոր աշակերտները ժողովրդի որդիներ էին, կը տեսնենք որ ժողովուրդը, ուրեմն, հասկացել էր կամ սկսել էր հասկանալ լուսաւորութեան նշանակութիւնը։ Նոր, լուսաւոր դարագլխի ամենից շատ յուզող տեսարանը այդ երիտա-

սարդ, կրակոտ ոյժերի ուղևորութիւնն էր, որ հիացմունք է ազդել ամեն ժամանակ, ինչպէս ազդում է և այժմ, 15 դարերի հեռաւորութիւնից։ Միջնադարեան այն անյայտ հեղինակը, որից վերևում վկայութիւն բերինք, կատարեալ բանաստեղծական հրճուանքի է հասնում, երբ գալիս է այդ ուղևորութեան։ Ահա ինչպէս է նա ներկայացնում երիտասարդների կրթական ուխտագնացութիւնը.

«Եւ այսպէս մերոնք գումարվում էին, կազմվում, պատրաստվում էին, ճանապարհ ընկնում. երկար ճանապարհ էին կտրում, ծովերով էին գնում, թեթև թևերով էին թռչում, փայտաշէն ձիաների (նաւ) վրա էին բարձրանում, լայն տարածվող սանձերն էին բռնում, օդի մէջ լայնացող խարազաններ էին շրջեցնում, երերուն ու անհաստատ դաշտերով (ծով) էին արշաւում, մահը կեանքից բարձր էին դասում, աներևոյթ նպատակին ուշք ու միտք էին տուել»։

Տարաբախտաբար, մթութիւնը, մեր պատմական կեանքի այս ծանր ճակատագիրը, հայ ուսանողների ճանապարհորդութիւնն էլ իր վարագոյրի տակ է պահում։ Յայտնի են մի քանիսի անունները, մինչդեռ ատանդութիւնը տասնեակներով է համրում նրանց։ Ինչ կարելի է համարել ընդունել մեր բանասիրութիւնը, այն է՝ որ Սահակ-Մեսրոպեան

ու Մեսրոպը շատ լաւ զգում էին թէ ուր է փրկութիւնը։

Ահա մի ուրիշ մեծ գործ, որ պատիւ է բերում նրանց խելքին։ Փրկութիւնը Յունաստանն էր. բայց յոյն ուսուցիչներ չէին կարող մտնել պարսկական Հայաստանը. և եթէ մտնէին էլ, կարո՞ղ կը լինէին լաւ կրթված մարդիկ պատրաստել։ Կրթութիւնը յարմար միջավայր էլ է պահանջում, իսկ Հայաստանը երբէք այդպիսի տեղ չէր եղել։ Եւ երկու մեծ զուգակիցները վճռում են մի համարձակ քայլ անել, որից մեր աշխարհը անհուն բարիքներ պիտի ստանար։ Մտածելով պարսկական կասկածները, նրանք իրանց աշակերտներից ամենաընդունակներին ուղարկում են Յունաստան՝ կրթվելու և կատարելագործվելու։

Այդ երիտասարդները առաջին հայ ուսանողներն էին, առաջին թարմ ույժերը, որոնց մի յետադէմ ասիական երկիր ուղարկում էր հեռու տեղեր, որպէս զի բան սովորեն և գան իրան էլ սովորեցնեն։ Եթէ ի նկատի ունենանք, որ այդ բոլոր աշակերտները ժողովրդի որդիներ էին, կը տեսնենք որ ժողովուրդը, ուրեմն, հասկացել էր կամ սկսել էր հասկանալ լուսաւորութեան նշանակութիւնը։ Նոր, լուսաւոր դարագլխի ամենից շատ յուզող տեսարանը այդ երիտա-

սարդ, կրակոտ ոյժերի ուղևորութիւնն էր, որ հիացմունք է ազդել ամէն ժամանակ, ինչպէս ազդում է և այժմ, 15 դարերի հեռաւորութիւնից։ Միջնադարեան այն անյայտ հեղինակը, որից վերևում վկայութիւն բերինք, կատարեալ բանաստեղծական հրճուանքի է հասնում, երբ գալիս է այդ ուղևորութեան։ Ահա ինչպէս է նա ներկայացնում երիտասարդների կրթական ուխտագնացութիւնը.

«Եւ այսպէս մերոնք գումարվում էին, կազմվում, պատրաստվում էին, ճանապարհ ընկնում. երկար ճանապարհ էին կտրում, ծովերով էին գնում, թեթև թևերով էին թըռչում, փայտաշէն ձիաների (նաւ) վրա էին բարձրանում, լայն տարածվող սանձերն էին բռնում, օդի մէջ լայնացող խարազաններ էին շրջեցնում, երերուն ու անհաստատ դաշտերով (ծով) էին արշաւում, մահը կեանքից բարձր էին դասում, աներևոյթ նպատակին ուշք ու միտք էին տուել»։

Տարաբախտաբար, մթութիւնը, մեր պատմական կեանքի այս ծանր ճակատագիրը, հայ ուսանողների ճանապարհորդութիւնն էլ իր վարագոյրի տակ է պահում։ Յայտնի են մի քանիսի անունները, մինչդեռ աւանդութիւնը տասնեակներով է համրում նրանց։ Ինչ կարելի է համարել ընդունել մեր բանասիրութիւնը, այն է՝ որ Սահակ-Մեսրոպեան

դպրոցները երկու կարգ կրթված մարդիկ են պատրաստել. առաջին կարգը անուանվում է առաջին կամ աւագ աշակերտներ, իսկ երկրորդը—կրտսեր աշակերտներ: Պէտք է, ուրեմն, ենթադրել որ Սահակն ու Մեսրոպը առնուազն երկու անգամ երիտասարդներ ուղարկեցին արտասահման: Առաջին ուղևորութիւնը տեղի է ունեցել 430 թուականին:

Հայ երիտասարդները ուղղակի Յունաստան չը դիմեցին. նրանց պատուիրված էր նախ այցելել ասորական դպրոցները: Թէև այդ դպրոցներից մէկը մանաւանդ, Եդեսիայինը, շատ հռչակված էր այդ ժամանակներում, բայց և այնպէս, պէտք է ընդունել որ Սահակն ու Մեսրոպը այստեղ էլ ստիպված էին հարկ տալ քաղաքական դրութեան, որի մասին վերև խօսեցինք: Մեր ուսանողները երկար չը մնացին Ասիայում: Նրանց գրաւում էր յունական արևմուտքը, ուր հին և նոր աշխարհների լուսաւորութեան օջախներն էին գտնվում: Դեռ մնում էին Աթէնքի հռչակաւոր դպրոցները, ուր ապրում էր հին հեթանոսական գիտութիւնը և ուր մտնելուց չէին քաշվում և եկեղեցու հայրերը, որպէս զի սովորեն գիտութիւն և կռուեն հեթանոսութեան դէմ՝ նրանից խլած զէնքերով: Կար և Ալէքսանդրիան, ուր հին

փիլիսոփայութիւնը իր դէմ յարուցել էր եկեղեցական հալածանք և վերջին շունչի վրա էր։ Վերջապէս կար հպարտ Բիւզանդիան, որ մահ էր յայտարարել հին կրօններին և աշխատում էր ոչ միայն յաղթանակ ստեղծել քրիստոնէութեան համար, այլ և դարձնել նրան բոլոր գիտութիւնների տէր։

Այդ տեղերն այցելեցին հայ ուսանողները։ Ժամանակը, ճիշտ է, փառաւորներից չէր․ հայաստանցիները պիտի տեսնէին իրանց երազած Արևմուտքում և՛ եկեղեցական ֆանատիկոսութեան բռնկում, որ արտայայտվում էր հեթանոսութեան դէմ յարուցած կոպիտ հալածանքների, նոյնպէս և հոգևոր հայրերի միմեանց դէմ լարած արիւնահեղ դաւերի ու բռնութիւնների մէջ։ Չը պէտք է թաքցնել, արևմտեան աշխարհի այդ տրամադրութիւնը յայտնի չափով ազդեց և մերոնց վրա, յայտնի չափով մտաւ և նրանց մէջ։ Բայց և այդպէս, տխուր ժամանակի մի քանի դրական կողմերն էլ ահագին նորութիւններ էին արևելցիների համար։ Դեռ կար մտաւոր մեծ պաշար․ և մերոնք կարող էին իրանց աշխատասիրութեան համար լայն ու ընդարձակ դաշտ գտնել։

Ի՞նչ էին նրանք սովորում։ Վերոյիշեալ անանուն հեղինակը իր երևակայութեան մէջ այսպէս է պատկերացնում հայ ուսանողների

կեանքը։ Նրանք աշխատանքների և ջանքերի մէջ պատրաստում էին իրանց անձը, ժրութիւն էին ցոյց տալիս ուքնելով, համեստ և ուշադիր էին, սովորում էին, կրթում էին իրանց։ Մի քանիսները տարբեր գծագրութիւններն էին ուսումնասիրում, ուրիշները ուրիշ ճիւղեր ընտրեցին, այն է՝ բնաբանութիւն, երկրաչափութիւն, համարողական արհեստ (թուաբանութիւն), երաժշտութիւն, աստղաբաշխութիւն, քերականութիւն, բանաստեղծութիւն. բացի այդ բոլորից կար գործնական և տեսական փիլիսոփայութիւնը իր տասներկու բաժիններով։

Շատ կարելի է որ այս պատկերը միանգամայն ճիշտ չէ. բայց եթէ տարբալուծենք հինգերորդ դարի մեր լուսաւորութիւնը, կը գտնենք որ Արևմուտք գնացած հայ ուսանողները ծանօթ էին այդ բոլորի հետ։ Նրանք մեծ պաշարով վերադարձան հայրենիք և եռանդուն ուսուցիչներ հանդիսացան դըպրոցների և գրականութեան մէջ։ Հասկանալի է թէ միանգամից որքան պիտի բարձրանային լուսաւորութեան այդ երկու հզօր գործօնները։ Սահակ-Մեսրոպեան գործը գնալով չէր թուլանում, այլ աւելի և աւելի զարգանում էր, թափ ստանում։ Աշակերտները իրանց ուսուցիչներից աւելի առաջ գնացին իրանց բազմակողմանի պատրաստութեամբ,

որի ամենամեծ վկայութիւնը տեսնում ենք նրանց գրականութեան մէջ։

Գեղեցիկ մի երևոյթ է ներկայացնում այդ գրականութիւնը։ Սկսվեց նա համարեա հրաշքով։ Առաջին քայլերում համարեա ամբողջովին թարգմանական էր, բայց այդ հանգամանքը նշանակութիւն չունի, եթէ ուզենանք հասկանալ թէ դժուա՞ր գործ էր դա։ Հեշտութիւն չէր կարող լինել նախ և առաջ այն պարզ պատճառով, որ հայերի մէջ գոյութիւն չունէր գրական լեզու, և Սահակն ու Մեսրոպը նոր պիտի մշակէին մի այդպիսի լեզու։ Գիրքը բոլոր ազգերի մէջ ունի իր յատուկ լեզուն, որ տարբերվում է գործածականից իր կանոնաւորութեամբ, իր ներդաշնակ, հարուստ ձևերով։ Հայերէն գիրք Սահակից և Մեսրոպից առաջ, ինչպէս ընդունում է բանասիրութիւնը, չը կար։ Ո՞րտեղից վերցրվեց գրական այն լեզուն, որ սկսեցին գործ ածել Սահակն ու Մեսրոպը և նրանց աշակերտները։

Ենթադրութիւն կայ թէ մեր գրաբարը տառերի գիւտից առաջ գործածական լեզու էր հայոց արքունիքում և առհասարակ Արշակունեան նահանգի բարձր դասակարգերի, ազնուականութեան մէջ։ Որքան էլ տրամադիր լինենք հաւատալու այդ ենթադրութեան, չենք կարող, այնուամենայնիւ, ընդունել որ

խօսակցական գործածութեան մէջ գրաբարը այնքան կանոնաւորված ու մշակված էր, որ Սահակին ու Մեսրոպին մնում էր վերցնել նրան և ուղղակի թղթի վրա անցկացնել։ Մշակումը, յղկումը դարձեալ անհրաժեշտ էր։ Ահա այստեղ է երկու գործակիցների մի ուրիշ մեծ ծառայութիւնն էլ։

Բնական պիտի լինէր սպասել որ դեռ նոր-նոր գրական դարձած լեզուն սկզբում պիտի ունենար շատ թերութիւններ, անկանոնութիւններ, աղքատութիւն։ Բայց բոլորովին հակառակն ենք տեսնում։ Սահակ-Մեսրոպեան գրաբարը, նա, որ առաջին անգամ մտաւ գրքի մէջ, իր նմանը չէ ունեցել երբէք։ Ապացոյց՝ Աստուածաշունչի թարգմանութիւնը, որի վրա հիացել են նոյն իսկ եւրոպացի գիտնականները, անուանելով նրան թարգմանութիւնների թագուհի։ Բնական, պարզ, քաղցր ու ինքնատիպ մի լեզու է։ Անկարելի է ենթադրել որ Սահակն ու Մեսրոպը այդ գեղեցկութիւնը, այդ կատարելութիւնը ձեռք բերած լինեն առանց նոր ու նոր տքնութիւնների և երկարատև աշխատութեան։ Եւ զարմանալին այն է, որ լեզուի նոյն գեղեցկութիւնը իւրացրին Սահակ-Մեսրոպեան դպրոցի առաջին աշակերտներից մի քանիսը միայն. այնպէս որ մեր գրականութիւնը սկսվեց մի լեզուով, որի

նմանը մինչև այժմ չէ եղել և որին, այդ իսկ պատճառով, յատկացրել են «ոսկի» անունը, մինչդեռ այդ լեզուն երկրորդ սերունդի, կըրտսեր աշակերտների ժամանակ, արդէն ոսկի լինելուց մի քանի աստիճան ցածացել էր։

Այսպէս մեծ ու հոյակապ էր Սահակ-Մեսրոպեան դաստիարակութեան շէնքը։ Հայոց լեզուն երկու գործակիցների աշխատութիւնների և խոշոր տաղանդի շնորհիւ ստանում է հրապոյր, թովիչ յատկութիւններ։ Ուրիշ կերպ նա չէր էլ կարող իր իրաւունքները նուիրագործել, դառնալ մի ազգային սրբութիւն։ Աստիճանաբար զարգացման, քայլ առ քայլ առաջադիմութեան օրէնքը չենք տեսնում մեր գրականութեան պատմութեան սկզբում, այլ բոլորովին հակառակ մի ընթացք.—սկզբում զարգացման մի բարձըր աստիճան, որին հետևում է քայլ առ քայլ անկում։ Բացատրել այդ երևոյթը հազիւ թէ դժուար լինի, եթէ չը մոռանանք այն օրէնքը, որ հաստատում է թէ կեանքն ու գրականութիւնը սերտ կապված են իրար հետ։ Հայ կեանքի քաղաքական պայմանները այնպէս դասաւորվեցին, արևմտեան աշխարհը այնքան հեռացաւ հին ժամանակների լուսաւորութիւնից, որ մեր Սահակ-Մեսրոպեան դարը միշտ մնաց բարձրութեան վրա, միշտ ոսկեդարի պատկերը պահպանեց։ Բայց մի

և նոյն ժամանակ մենք այն էլ պիտի ունենանք աչքի առաջ, որ այդ դարը տաղանդների դար էր և երբէք հայ կեանքը, մինչև տասնութերորդ դարը, այնքան առատ չէր տաղանդներով, ինչպէս Սահակի և Մեսրոպի ժամանակ։

Ինչո՞ւ էր այսպէս։ Կեանքն էլ բնութեան պէս գաղտնիքներ ունի. անշուշտ ամեն մի ծննդաբերութիւն պահանջում է յարմար հող և պէտք է ենթադրել որ Սահակ-Մեսրոպեան գործունէութիւնն էր առատ ծննդաբերութեան առաջին պատճառը։ Այդ տաղանդները ստեղծում էին նոր և նոր երևոյթներ։ Թարգմանութիւններով սկսելը թարգմանութիւնների մէջ անշարժանալ չէր նշանակում։ Նպաստաւոր միջավայրը պիտի յարուցանէր և ինքնուրոյն մտքեր, եթէ կային այդպիսիները կեանքի մէջ։ Եւ յայտնի դարձաւ որ նրանք կան։ Եղիշէն ապացոյց է թէ զգացմունքը ինչ սիրուն էջեր կարող է հրաշակերտել նոր գրական լեզուով, իսկ Եզնիկ Կողբացին մի հոյակապ յիշատակարան է թէ սառն գիտնական լրջութիւնը, բարձր ու նուրբ մտածողութիւնը նոյնպէս գեղեցիկ գործիք ունեն հայ լեզուի մէջ, և չէին կարող կաշկանդված մնալ հայ մարդու մէջ, չէին կարող խորթ մնալ հայոց գրականութեան։

Բայց Սահակ-Մեսրոպեան գրականութիւնը, իբրև ժամանակի լուսաւորութեան արդիւնք, ունի և մի շատ բնորոշ յատկութիւն։ Դա զուտ կրօնական մի գրականութիւն է։ Ծգնաւորական այն դարում Մեսրոպը, Սահակը և նրանց հետևելով՝ նրանց աշակերտները համոզված էին որ բոլոր ջանքերի նպատակը պիտի լինի մարդկանց հոգիների փրկութիւնը. պէ՞տք է որ մարդը եկեղեցուց դուրս էլ ունենայ մտաւոր պէտքեր,—այս հարցը գոյութիւն չը պիտի ունենար, քանի որ ամեն ինչ ամփոփվում էր եկեղեցու մէջ։ Այս պատճառով էլ մեր գրականութիւնը իր առաջին քայլերից ստացաւ մի սաստիկ միակողմանի, նեղ ուղղութիւն։ Եկեղեցին խլացրեց բոլոր միւս կուլտուրական-մտաւոր շահերը։ Եւ այս դրութիւնը իր բնական հիմքերն ունէր։

Մեր տեսութեան մէջ, կարծում ենք, պարզ արտայայտվեց այն դարաւոր իրողութիւնը, որ միայն եկեղեցին էր ձգտում դէպի մտաւորը, դէպի եւրոպականը։ Եթէ նա տիրացաւ գրականութեան, պատճառն այն էր, որ որոնողը, աշխատողը նա էր։ Կենսունակութեան անսպառ աղբիւր էր այդ լուսաւորութիւնը, և եթէ նա վիճակվեց միայն եկեղեցուն, պատճառն այն էր, որ կենսունակ, առաջադիմութիւն սիրող մի միակ

հիմնարկութիւն կար հայոց աշխարհում, և դա եկեղեցին էր։ Նա մաքառեց երկար, իր աշխոյժով ու մեծ եռանդով անվնաս մնաց քաղաքական փոթորիկների մէջ, ուրեմն նա էլ պէտք է մնար յաղթանակի տէր, նրան պիտի պատկանէր նուաճած մեծ շրջանը մարդկանց մտքերի մէջ։ Եկեղեցին իրան պահպանել էր ուզում. ամեն տեսակ զոհեր տալով իր այդ նպատակին, նա վերջապէս, գտաւ իրական միջոցը—Մեսրոպի տառերը։ Եւ այդ միջոցը նա սկսեց գործադրել լոկ իր օգտին։ Հայկական իրականութիւնը, լուռ ու ուժասպառ, հնազանդվեց այդ դրութեան։ Ընդունվեց և սրբագործվեց մի տեսակ օրէնք՝ մտաւորը, վիրն ու լուսաւորութիւնը հոգևորականութեան, իսկ աշխարհային կեանքը—մնացած տարրերին։

Այս խիստ սահմանագծումը տևեց երկար դարեր։ Կեանքը և գրականութիւնը գնալով աւելի և աւելի հեռացան իրարից, կեանքը ընկաւ մթութեան ու անյայտութեան մէջ, իսկ գրականութիւնը վերացական, անմարմին դարձաւ, մի նեղ շրջանի մարդկանց միայն մատչելի էր, սառն, հիւթերից ու կենսական ջերմութիւնից զրկված։ Ճակատագիրը այնպէս էր տնօրինել որ հայ ժողովուրդը միշտ շրջապատված լինի այնպիսի մեծ ազգերով, որոնց պետական կազ-

մակերպութիւնը հիմնված էր կրօնի վրա։ Պարսիկը, բիւզանդացին, ապա մօնգօլը, Թիւրքը հայի մէջ նախ և առաջ տեսնում էին մի յայտնի կրօն, մի դաւանութիւն։ Հպատակութեան հարցից դուրս էր այս կըրօնական հանգամանքը։ Հպատակ լինելը բաւական չէր։ Այս պատճառով էլ հայի համար առանձին կարևորութիւն ստացաւ նրա ազգային եկեղեցին։ Ամեն կողմից զօրաւոր ձեռքեր քշում էին նրան դէպի եկեղեցին։ Մէջ տեղ միայն սա էր երևում, սա էր ահագին զոհեր, արեան գետեր պահանջում իր գոյութիւնը պահպանելու համար։ Եւ հայը իր հոգու և մտքի ամբողջ կորովով փաթաթվում էր իր այդ ազգային հիմնարկութեան։

Այսպիսով նա նեղ ու սահմանափակ էր դառնում իբրև կրօնական մի ժողովուրդ։ Բայց անուրանալի է որ այդտեղ, եկեղեցու շուրջը, նա դարերով դարսում էր իր մտաւոր կարողութիւնները։ Որքան էլ դրանք սահմանափակ լինեն, ինչպէս իր լեռներին սեղմված, իր երկնքի տակ համախմբված և ծանր լուծերի տակ ճնշված մի փոքրիկ ժողովրդի միտքն է կարող լինել, այնուամենայնիւ, բացի եկեղեցուց չը կայ մի այլ միջավայր, ուր տեսնէինք թէ ինչպէս էր հայը իբրև մտածող, բանաստեղծ, հռետոր, մար-

տնչող, պատմագիր, պայքար մղող, մի գաղափար պաշտպանող։ Միայն եկեղեցին էր ասպարէզը. ամեն մի անհատ, որ իր մէջ մտաւոր գործունէութեան կոչում էր զգում, պիտի այնտեղ գնար, պիտի նրան ծառայէր։ Բացառութիւնների մասին մենք, իհարկէ, չենք խօսում։ Նոյն իսկ կաւելացնենք, որ կրօնական ուղղութեան բացարձակ տիրապետութիւնը ընդհանուր երեւոյթ էր միջնադարեան բոլոր քրիստոնեայ ազգերի մէջ։

Եւ այսպէս ահա, Սահակն ու Մեսրոպը դարաւոր իրականութեան սկիզբն էին դնում։ Նրանց գործը մօտ տասներեք դար անփոփոխ պահպանեց իր կերպարանքը. մենք կատարելապէս կրօնական ազգ դարձանք, իսկ իբրեւ աշխարհի քաղաքացիներ՝ կարող էինք այնքան ստանալ մեր լուսաւորութիւնից ու գրականութիւնից, որքան թոյլ էր տալիս եկեղեցու դրութիւնը...

---

## Գ.

*Սահակ-Մեսրոպեան գործունէութիւնը հելլէնականութեան յաղթանակն էր։ — Ասիականութեան վերաբերմունքը. Պարսկաստանի առաջին փորձը հայոց թագաւորութիւնը վերջացնելու մասին։ — Յազկերտի որդին Հայաստանում։—Վռամ թագաւորը և փոփոխութիւն պարսկական քաղաքականութեան մէջ։ —Միհրներսէհ։—Նրա ծրագիրը Հայաստանի մասին։— Պարսկական կուսակցութիւն և Արտաշիր թագաւորը։ —Ս. Սահակի ապարդիւն ջանքերը։—Ամբաստանութիւններ և դատաստանական կատակերգութիւն պարսից արքունիքում։—Թագաւորութիւնը վերջացած, ս. Սահակը կաթողիկոսութիւնից զրկված։—Աղէտի դէմ դուրս է հրաւիրվում կրթական և գրական շարժումը։— Սահակի և Մեսրոպի ջանքերը։—Երկու աննման գործակիցներ։—Ս. Սահակի մահը։—Ս. Մեսրոպը վախճանվում է վեց ամսից յետոյ։*

*Ս. Մեսրոպի կեանքը ամբողջապէս չէ ներկայացրված։—Նա էլ մարդ էր։—Երկու փաստեր։— Բռնութիւնը իբրև քրիստոնէական կրօնի պաշտպան։ —Ժամանակի ոգին։*

---

*Բայց իր վերջնական հետևանքներով ի՞նչ էր ներկայացնում Սահակ-Մեսրոպեան շրջանը։*

*Դա նոյն հելլէնականութեան յաղթա-*

կան արշաւանքն էր, նոյն եւրոպական ոգու տիրապետութիւնը Հայաստանում։ Ահաւոր, ցնցող պայքարը վերջնական լուծում ստացաւ. Արեւմուտքը նուաճեց հայութիւնը, իրանականութեան այդ փոքրիկ կտորը, ձեռքը դնելով նրա մտքի վրա։ Իսկ ի՞նչ էր ասում ինքը, իրանականութիւնը, նա, որ յաղթվողն էր Հայաստանի հողի վրա։

Մենք տեսանք որ մի այդպիսի յեղափոխութեան համար հարկաւոր էր որ Պարսկաստանի ճակատագիրը գտնվէր Յազկերտ Մեղաւորի նման մի թագաւորի ձեռքում։ Քրիստոնէութիւնը համեմատական ազատութիւն էր վայելում—ահա ինչից օգտվեց Արեւմուտքը՝ մեր երկիրը խուժելու համար։ Այդ ազատութիւնը այն աստիճանին էր հասնում, որ 410 թւականին բուն Պարսկաստանում ապրող քրիստոնեաները թոյլտուութիւն ստացան ժողով կազմելու պարսից մայրաքաղաքում և իրանց համար եկեղեցական կազմակերպութիւն ստեղծեցին։ Բայց ուշադրութիւն դարձնենք մի հանգամանքի վրա։ Յազկերտ Մեղաւորը այն պայմանով թոյլ տուեց ժողովը, որ Պարսկաստանում հիմնվող առանձին եկեղեցին ոչինչ կախում չունենայ Կ. Պօլսի պատրիարքից։ Նշանակում էր,՝որ Սասանեանը, որքան էլ Մեղաւոր լինէր, չէր մոռանում աւանդական քաղաքականութիւնը։

Բացի դրանից, Ցադկերտը հարկաւոր դէպ-
քերում զգալ էր տալիս քրիստոնեաներին,
որ ինքը, այնուամենայնիւ, Պարսկաստանի
Շահ է և մազդեզական կրօնն է պաշտում։
Հարկաւոր դէպքերում նա գիտէր և քրիս-
տոնեաներին հալածել։ Այնպէս որ, երբ աս-
վում է թէ Ցադկերտը համբերող էր քրիս-
տոնեաների վերաբերմամբ, այդ բանը պէտք
է հասկանալ համեմատական մտքով։

Բայց Ցադկերտն էլ իր թագաւորու-
թեան վերջերում նկատեց թէ ինչ է կատար-
վում Հայաստանի մէջ։ Եթէ նա այդքան ուշ
էր նկատել, պատճառը, մեր կարծիքով,
Վռամշապուհ թագաւորի քաղաքական իմաս-
տութիւնն էր։ Նրա մեռնելուց յետոյ այլ ևս
չը կարողացան թագցնել Հայաստանը պարս-
կական սուր աչքից. և շուտով Ցադկերտը,
երբ մեռաւ և Վռամշապուհի եղբայր Խոսրո-
վը, մի փորձ փորձեց, որ նրա յաջորդի հա-
մար արդէն դեկավարող սկզբունք դարձաւ։
Այդ փորձն էր խլել հայոց գահը Արշակու-
նիների ձեռքից։ Այդպէս էլ արաւ նա, Խոս-
րովից յետոյ թագաւոր նշանակելով իր որդի
Շապուհին։ Ղազար Փարպեցու հաղորդած
տեղեկութիւններից կարելի է եզրակացնել
որ Ցադկերտը սկսել էր զգալ թէ պարսկա-
կան շահերի համար որքան վտանգաւոր էր
այն շարժումը, որ նկատվում էր Հայաստա-

նում։ Ամեն տարակուսանքներին վերջ դնելու համար նա ուղարկեց իր որդուն, որպէս զի վերացած լինի հայոց թագաւորութիւնը և երկիրը բոլորովին հպատակվի Պարսկաստանին։ Փարպեցին ասում է որ Յազկերտը մտածում էր թէ Շապուհը կը մօտենայ հայ իշխաններին, պարսկական կարգեր կը մտցնէ երկրի մէջ, գուցէ և կը կարողանայ եթէ ոչ վերացնել, գոնէ թուլացնել քրիստոնէութիւնը այնքան, որ հայերը չը միանան յոյների հետ և ապստամբութիւն չը յարուցանեն։ Յոյս կար որ հին ժամանակների պէս հայերը և պարսիկները ամուսնութիւններով կը խառնվեն իրար հետ։

Շապուհը չորս տարի թագաւորեց Հայաստանում։ Մեր պատմագիրներն ասում են թէ դա մի թոյլ մարդ էր, չը կարողացաւ ոչինչ անել և նոյն իսկ ծաղրի էր ենթարկվում հայ նախարարների կողմից։ Բայց ինչ էլ լինի, անկասկած է որ նրա ժամանակ գըլուխ բարձրացրած պիտի լինի պարսկական կուսակցութիւնը։ Յազկերտը չէր սխալված իր մի ենթադրութեան մէջ. նրա որդին պիտի գրաւէր հայ իշխանների մեծ մասը իր խնջոյքներով, որսորդական հանդէսներով և խաղերով։ Ազնուականութիւնը միշտ այդպէս է եղել, իսկ մանաւորապէս հայ նախարարները փառամոլութեան քաղցրիկ օ-

րինակներ շատ են տուել։ Նրանց համար անշուշտ մեծ պատիւ պիտի լինէր Սասանեան արիւնը կրող թագաւորի ուշադրութեան արժանանալը, մանաւանդ որ այդ Սասանեանը մի օր էլ, իր հօրից յետոյ, պիտի Իրանի գահը բարձրանար։

Մենք պատճառ չունենք չը հաւատալու որ հայ նախարարների մէջ այնպիսիներն էլ կային, որոնք ծառայում էին Յազկերտի որդուն, ատում էին նրան։ Խորենացու բերած ·մի քանի սիրուն, պատկերաւոր աւանդութիւններից կարելի է հետեւեցնել, որ այդպիսիները քրիստոնէութեան կողմնակիցներից էին, գուցէ և Սահակ-Մեսրոպեան կըրթարաններում եղածներից։ Այդպիսիների թիւն էլ քիչ չէր։

Երբ Յազկերտը կորաւ դէպի արեւելք գործած իր մի արշաւանքի միջոցին, պարսից հոգեւորականութիւնը շտապեց յայտարարել թէ նա աստուածներից ստացել է արժանի պատիժ իր մեղքերի համար։ Իսկ ազնուականութիւնը, որի ձեռքի գործն էր, անշուշտ, այդ անյայտացումը, չը կամեցաւ որ իր ատած մարդու սերունդը շարունակէ թագաւորութիւնը։ Շապուհը թողեց Հայաստանը և շտապեց իր հօր թագը ժառանգելու, բայց տեղ հասնելուն պէս սպանվեց։ Սակայն Յազկերտի միւս որդին, Վռամը, կարողա-

*ցաւ զէնքի ոյժով տիրանալ հայրական ժառանգութեան։ Ահա այդ միջոցին նախարարական այն կուսակցութիւնը, որ հաւատարիմ էր քրիստոնէութեան, խնդրեց Վռամից որ հայոց թագը նորից շնորհվի Արշակունիներին։ Նա համաձայնվեց. այնպիսի ժամանակ և այնպիսի հանգամանքների մէջ էր դահ բարձրանում, որ չէր կարող չը հասկանալ թէ աւելորդ է առ այժմ բարդութիւններ և անբաւականութիւն յարուցանելը պետութեան մէջ։ Հայաստանում թագաւորեց պատանի Արտաշիրը, Վռամշապուհի որդին։*

*Վռամը (իսկապէս՝ Բահրամ, որ ստացել էր «Գոր», այսինքն «վայրի էշ» մականունը իբրև ուժեղ և որսասէր մարդ) չը կարողացաւ շարունակել իր հօր քաղաքականութիւնը։ Նա հպատակվեց հոգևորականներին և մեծամեծներին, իսկ դա նշանակում էր պատերազմ յոյների դէմ և քրիստոնեաների հալածանք։ Բայց Բահրամը աջողութիւն չունեցաւ պատերազմի մէջ և ստիպված եղաւ խաղաղութեան դաշինք կապել յոյների հետ և պարտաւորութիւն յանձն առաւ չը հալածել քրիստոնեաներին։ Սակայն այդ խոստումից հայերը մեծ շահ չունեցան։ Պարսից արքունիքը հայերին չը հալածեց, բայց դրա փոխարէն վճռեց ջնջել նրանց թագաւորութիւնը և դրա համար նախ և ա-*

տալ դիմեց Հայաստանի պարսկական կուսակցութեան։ Քաղաքական ծրագիրը շատ ճարտար ու խորամանկ հիւսուածք ունէր։ Բիւզանդական կառավարութիւնը առանց այլեայլութեան վերջ դրեց հայկական ինքնավարութեան, իսկ պարսից արքունիքը աւելի քաղաքադիտական նուրբ ձևեր ընտրեց նոյն նպատակի համար։ Պատրաստութիւններ տեսնվեցան, գործը այնպէս սարքվեց, որ դուրս էր գալիս թէ հայերը իրանք չեն ուզում թագաւորութիւն ունենալ։

Այդ ծրագիրը պատիւ էր բերում պետական այն նշանաւոր մարդու խելքին, որի ձեռքումն էր այդ ժամանակ գտնվում Պարսկաստանի կառավարութիւնը և որ ժողովրդի աչքում թագաւորի հեղինակութիւն և փառք էր վայելում։ Դա Միհրներսէհն էր, որի անունը կապված է հինգերորդ դարի հայոց պատմութեան հետ և որ այնքան լաւ յայտնի է Եղիշէի և Փարպեցու պատմութիւնները կարդացողին։ Միհրներսէհը հազարապետ էր, թագաւորի երկրորդը․ Վռամը երբ արշաւանքներ սկսեց դէպի արևելեան հեռու կողմեր, իր գահի պահպանութիւնը նրան յանձնեց։ Միհրներսէհի հաւատարմութիւնը և քաղաքական մեծ իմաստութիւնը դեռ Յազկերտ առաջինին էին յայտնի, որի ժամանակ էլ նա սկսեց իր պետական ծա-

ռայութիւնը։ Իսկ թէ ինչ մեծ հռչակ էր վայելում պարսից մեծ վէզիրը քաղաքական աշխարհում, այդ երևում է այն շքեղ ընդունելութիւնից, որ գտաւ նա Բիւզանդիայում, երբ Վռամ Թագաւորի յանձնարարութեամբ գնաց բանակցելու յունական արքունիքի հետ։ Եղիշէն ասում է որ պարսից Թագաւորներն անգամ հպատակվում էին Միհրներսէհի կամքին և ցուցմունքներին։ Դա, ուրեմն, պարսիկ ազնուականութեան ամենաուժեղ, խելօք ու հեղինակաւոր արտայայտութիւնն էր։ Եւ ահա այդպիսի մի ճարտար մարդու ձեռքին էր Հայաստանի հարցը։ Նրա համար ոչինչ բան էր խաղալիք դարձնել հայ անմիաբան, փառամոլ նախարարներին։

Հարցը կապվեց Արտաշիր Թագաւորի անձնաւորութեան հետ։ Նորից Լուսաւորչի տոհմի առաջ երևան եկան բողոքաւորներ։ Պարսկական կուսակցութիւնը գտնում էր որ երիտասարդ Թագաւորը անբարոյական կեանք է վարում։ Դարձեալ տգէտ ինքնահաւանութիւնը, ինչպէս Ներսէս Մեծի ժամանակ, կարծում էր թէ երբ մի Թագաւոր վատ է, պէտք է ոչնչացնել Թագաւորական գահը։ Նախարարների ամենագլխաւոր մեղադրանքն այն էր թէ Արտաշիրը իգամոլ է։ Բայց եթէ իգամոլութեան համար պէտք էր

մէկին պատժել, ամենից առաջ դա պիտի լինէր ինքը, Բահրամ-Գօրը, որ յայտնի էր իբրև չափազանց իգամոլ մարդ։

Անարժան, սուտ կատակերգութիւնը ծածկվում էր այդպիսի մի թափանցիկ պատրուակով։ Պարսից արքունիքի փշրանքներին աչք դրած նախարարները կամենում էին որ այդ ինտրիգի մէջ դեր կատարէ և հայոց կաթողիկոսը։ Օրինականութիւնը պէտք է պահպանված լինէր անթերի։ Քրիստոնէութիւնը խիստ բարոյականութիւն էր պահանջում. և ահա եկեղեցական բարձր իշխանութիւնը պիտի մեղադրողի դեր յանձն առնէր, իր ձեռքով վաւերացնէր թագաւորի գահընկէցութիւնը։ Հետևանքն այն կը լինէր, որ հայոց աշխարհը առանց ցնցումների կը ճաշտվէր իրողութեան հետ և Միհրներսէհը ցոյց կը տար որ պետական մարդիկ միայն զէնքով ու բռնութեամբ չեն գործում, այլ շատ անգամ մեծ հարցերը վճռում են խելքով և ճարպիկութեամբ։ Կաթողիկոսին դրդելու համար՝ սուտ դաւադրութիւնը հագնում է կեղծաւորութեան դիմակ. պարսկասէր իշխանները իդէալական քրիստոնեաներ են ձևանում, խիստ նախանձաւոր կրօնի մաքրութեան համար։ Նրանք յայտնում են Սահակին թէ իրանք զուրկ են մնում հաղորդութիւնից, քանի որ անբարոյական թա-

գաւորի ձեռքի տակ են գտնվում, քանի որ իրանք են պատասխանատու նրա չար մեղքերի համար։

Ս. Սահակը աւելի ծանր դրութեան մէջ էր, քան նրա հռչակաւոր հայրը։ Ներսէսը համեմատաբար անկախ և ազատ երկրի մէջ էր ապրում, մինչդեռ նրա որդին յունական բաժանումով դարձել էր պարսից տէրութեան հպատակ։ Չը նայած այս բանին, ս. Սահակը բացէբաց հրաժարվեց գաւադրութիւնից։ Նա ամենևին չէր հերքում որ Արտաշիրը արատաւոր մարդ է, նա ինքն էլ գիտէր որ բարոյական շատ պակասութիւններ ունի վերջին Արշակունին։ Բայց հարց էր՝ ով պիտի դատէ նրան։ Նախարարները ցոյց էին տալիս Վռամին, և Սահակը արդէն հասկացել էր որ դա արդարութեան դատ չէր, այլ պատրուակ միայն՝ քաղաքական նըպատակ իրագործելու համար։

Իզուր անցան նրա խրատները, իզուր նա համոզում էր թէ պարսից դատաստանին չը պէտք է դիմել։ Նախարարները, ինչպէս յատուկ է դաւադիրներին, սպառնացին ս. Սահակին թէ նրան էլ պիտի խառնեն մեղադրանքների մէջ և գնացին պարսից դուռը։ Եթէ հարկաւոր էր վկայ և եկեղեցու կողմից, այդ վկան էլ գտնվեց—Սուրմակ անունով մի վատ հոգևորական, որ գնաց մատ-

նութիւններ անելու, դնելով պայման որ փոխարինութիւնը պիտի լինի իր կաթողիկոսանալը։

Վռամը, կամ աւելի ճիշտ ասած, Միհրներսէհը, ձեռքին գեղեցիկ առիթ ունէր։ Դատաւորի պաշտօն ստանձնելով, նա Հայաստանից կանչեց Արտաշիր թագաւորին և Սահակ կաթողիկոսին։ Բացվեց կատակերգութեան վերջին տեսարանը, որ ողբերգութեան փոխվեց։ Հայոց թագաւորը իրան պաշտպանում էր արիութեամբ, նա իրան մեղաւոր չէր համարում և բացարձակ յայտնում էր թէ ինքը քաղաքական ինտրիգի զոհ է։ Սահակը պարսից մայրաքաղաքում իմացաւ որ կարելի է միայն վատ վկայութիւն տալ Արտաշիրի մասին, ուրիշ տեսակ վկայութիւնը պետական անհաւատարմութիւն պիտի համարվի։ Եւ նա վճռեց ոչինչ չը խօսել, անշուշտ չը կամենալով վտանգի ենթարկել եկեղեցին և մանաւանդ Լուսաւորչի աթոռը։

Բայց սա միակ մեղքն էր, որ գործեց ս. Սահակը արդարութեան դէմ։ Ամեն ինչ պարզվեց, երբ նրա մօտ եկաւ Վռամի պալատական բարձր պաշտօնեաներից մէկը, հետը ունենալով Միհրներսէհի հրահանգները։ Պաշտօնեան Շահի կողմից մեծամեծ պարգևներ, փառք և իշխանութիւն խոստա-

ցաւ հայոց կաթողիկոսին, եթէ նա միանար դաւադիր նախարարների հետ․ իսկ եթէ չը միանար, պիտի կորցնէր նոյն իսկ կաթողիկոսական իշխանութիւնը։ Ահա որքան անաչառ էր Բահրամ-Գորը։

Սահակը, առանց տատանվելու, ընդունեց երկրորդ վիճակը․ նրա պէս մարդը չէր կարող, իհարկէ, որ և է համակրութիւն ունենալ դէպի դաւադիրների և մատնիչների ստոր գործը։ Եւ կատարվեց այն, ինչ պատրաստվում էր պարսից արքունիքի խորհրդաւոր յարկի տակ։ Իբր թէ հիմնվելով հայ նախարարների ցանկութեան վրա, որոնք բացարձակ յայտնեցին թէ իրանք թագաւոր չեն ուզում, այլ խնդրում են մի պարսիկ իշխանաւոր ուղարկել Հայաստանը կառավարելու համար, Վռամը ոչնչացած յայտարարեց հայ Արշակունիների թագաւորութիւնը։ Հաւատարիմ մնալով իր սպառնալիքին, նա միաժամանակ Սահակին էլ կաթողիկոսական իշխանութիւնից զրկեց։ Եղաւ դատաստան այն վերջինի համար, ինչ էր նրա մեղքը,— մենք չը գիտենք։ Բացի յունասիրութիւնից այդ հեզ և առաքինի հոգևորականը, որքան թոյլ են տալիս դատել նրա կենսագրական հանգամանքները, ոչինչ մնաս չէր հասցրել պարսից կառավարութեան։ Բայց չըմոռանանք որ դաւադրութիւնը պարտաւոր էր տեղ

պատրաստել դաւաճանի համար։ Սուրմակը կաթողիկոսութիւն ստացաւ։ Սրանով արդէն շատ բան կարելի է բացատրել։

Այս բոլորը տեղի ունեցաւ 429 թուականին *)։ Պարսկական դատաստանը փակեց իր դռները և իրականութեան մէջ մնացին. մի թագազուրկ թագաւոր, մի անաթոռ կաթողիկոս, մի պարսիկ մարզպան և նրա հետ՝ ընծաներով ու փառքով բեռնաւորված նախարարները, մի հատ էլ Սուրմակ։ Բուն շարժառիթը, որ մի այդպիսի յեղափոխութիւն պատճառեց, այդ ընծաները, այդ պատիւներն էին. Արտաշիրի կնամոլութիւնը մի թշուառ պատրուակ էր։ Դժուար է երևակայել աւելի անպատիւ, աւելի ստոր անկում մի պետական կազմակերպութեան համար։

Եւ այս անկումը, բարոյական այս սնանկութիւնը տեղի էր ունենում մի ժամանակ, երբ հայոց աշխարհում նոր հաստատվել էր ժողովրդական լուսաւորութիւնը։ Ուղիղ քառորդ դար էր, ինչ այդ երկիրը ստացել էր գիր ու դպրոց։ Մտաւոր առաջադիմութիւնը մի հսկայական ոյժ է ամեն մի ժողովրդի համար. Նա բերում է գիտակցութիւն, հաստա-

*) Մեր ազգային աղբիւրները շատ խառն ու անհաստատ ժամանակագրութիւն են տալիս։ Մենք հետևեցինք գերմանացի գիտնական Նէօլդէկէի ժամանակագրութեան։

բակական գաղափարների բարդաւաճում, պատրաստում է պարտաճանաչ քաղաքացի-ներ։ Իսկ մեզանում մտաւոր վերածնութեան հետ կապված է քաղաքական անկումը։ Բա-ռորդ դարը, ճիշտ է, շատ աննշան ժամանակ է մի ժողովուրդ հիմնովին կրթելու համար, բայց մենք սխալված կը լինենք, եթէ միայն այդքանն ասենք այդ ժամանակամիջոցի մա-սին։ Բսան և հինգ տարին բաւական էր, որ ժողովրդի մէջ այնքան գիտակցութիւն զար-գանար, որ այնպիսի մի ծանր դրաման, ինչպէս էր Արշակունիների ոչնչացումը, գո-նէ ցնցում ու ցաւակցութիւն պատճառէր ժողովրդին։ Ըստ երևոյթին, այդպիսի բան տեղի չունեցաւ, քաղաքական մահացումը անտարբերութեան հանդիպեց։

Այս իրողութիւնը ցնցում պիտի պատ-ճառէր Սահակին և Մեսրոպին։ Հարուածը բաց արաւ նրանց առջև փորված խորխորա-տը, և նրանք անշուշտ այժմ աւելի պարզ ըմբռնեցին իրանց դպրոցների անկատարու-թիւնը։ Տարրական կրթութիւնը, որ տալիս էին այդ դպրոցները, դեռ բաւական չէին. գրագիտութիւնը դեռ լուսաւորութիւն չէ։ Եւ ահա այդ ցնցող աղէտից յետոյ է, որ եր-կու ընկերները ուղարկում են իրանց աշա-կերտներին արտասահման։ Պէտք էր բարձ-րացնել լուսաւորութեան մակերևոյթը։ Մենք

տեսանք որ այսպէս պահանջում էին զուտ կրօնական շահերը։ Բայց այս քաղաքական հանգամանքն էլ նոյն անհրաժեշտութիւնը պիտի ցոյց տար։ Սահակի համար արդէն պարզված էր թէ ինչ է պատրաստում Միհր-ներսէհը։ Առաջին քայլը թագաւորական դահն էր, երկրորդը պիտի լինէր եկեղեցին։ Եթէ եկեղեցին առաջինը չը դառաւ, պատ-ճառն այն էր, որ նրա հետ կռիւը աւելի դժուար էր։ Հայաստանի ֆէօդալական կազ-մակերպութիւնը պետութեան թուլութիւնն էր, որ հեշտութեամբ դէպի խորտակում տա-րաւ, մինչդեռ եկեղեցին կազմում էր ուժեղ միապետութիւն։ Երբէք հնարաւոր չեղաւ, որ բազմաթիւ կալուածատիրական ինքնա-գլխութիւնները համախմբվեն ընդհանուր պետական հասկացողութեան շուրջը. բայց եկեղեցին, ընդհակառակն, կենտրօնացման ձգտում էր և իր այդ կազմակերպութիւնը աւելի ուժեղացնելու, միաձոյլ դարձնելու համար ունէր այնպիսի հզօր գործիք, ինչպի-սին է լուսաւորութիւնը։

Սահակն ու Մեսրոպը զգացին որ հար-կաւոր է պատրաստել ոյժեր Միհրներսէհի ծրագրած երկրորդ հարուածի դէմ։ Եւ նը-րանք, ինչպէս տեսանք, զարմանալի հեռա-տեսութեամբ առաջ տարան իրանց պատ-րաստութիւնները։ Ժամանակի բարձր ուս-

ման տէր մարդիկ էին հարկաւոր. — ահա գաղտնիքը։ Թագաւորութեան անկումից յետոյ նրանց եռանդը բազմապատկվում է։

Թէև կաթողիկոսական իշխանութիւնից հեռացել էր Սահակը, բայց դա չէր նշանակում թէ նա միանգամայն հեռացրվել էր բոլոր ասպարէզներից։ Խորենացին աւանդում է որ նրա ձեռքին մնացել էին հովուապետի բարձր իրաւունքները և միայն եկեղեցական վարչութիւնն էր առնված նրանից։ Ինչ էլ լինէր սակայն, փաստ է որ ոչ ոք չարգելեց նրան շարունակել գրական և դաստիարակչական գործունէութիւնը։ Առաջին կամ աւագ աշակերտները արևմուտքից վերադարձան, ինչպէս ենթադրում են, 434—435 թւականներին։ Գրաւոր աշխատութիւնները նոր, կրկնապատկված եռանդով առաջ գնացին. հմուտ աշխատակիցներ կային, Աստուածաշունչի թարգմանութիւնը նորից կատարվեց Յունաստանից բերած ընտիր օրինակների վրա։ Թարգմանվեցին և ուրիշ շատ գրուածքներ։ Այդ ժամանակ էլ պիտի Արևմուտք ճանապարհված լինեն երկրորդ կամ կրտսեր աշակերտները։

Կրթական թափը գնալով սաստկանում էր։ Կարծես զգում էին որ ժամանակ քիչ է մնացել։ Ս. Սահակը, իբրև Լուսաւորչի տոհմի ներկայացուցիչ և հոգևոր իշխանութեան

գլուխ, շատ անգամ էր ստիպված լինում ընդհատել իր գրական գործունէութիւնը. քաղաքական և վարչական հոգսերը չէին թոյլ տալիս որ նա լինի բացառապէս այդ գործին նուիրված մի աշխատաւոր։ Միայն դըժբախտ Արտաշիրի պատմութիւնը որքան հոգսեր ու կսկիծներ պատճառեց նրան, որքան ժամանակ խլեց նրանից։ Ս. Մեսրոպը, ինչպէս երևում է, այդպիսի հոգսեր չունէր կամ շատ քիչ ունէր։ Գոնէ նրան մենք չենք տեսնում այն դէպքերի մէջ, որոնք տակն ու վրա էին անում հայոց աշխարհը։ Երևի նա երբէք չը թողեց իր ուսուցչական պաշտօնը և ամեն տեսակ հանգամանքների մէջ անփոփոխ նոյնն էր մնում—«ուսուցանող հայոց աշխարհին», ինչպէս անուանում են նրան մեր մատենագիրները։ Առաւելապէս այդ էր նրա գործը. գրական-թարգմանչական գործունէութեան մէջ ս. Սահակը նրանից աւելի շատ բան արաւ։

Պէտք է աւելացնել որ այդպիսի գործիչն էլ չափազանց հարկաւոր էր ժողովըրդին։ Մեսրոպը ճգնաւոր-ուսուցիչ էր սկըզբից, և այդպէս էլ մնաց։ Կորիւնն ասում է թէ նա անչափ բազմացրեց վանական հոգևորականութիւնը և աբեղաներով լցրեց սար ու ձոր։ Գրագիտութիւն տարածելու միջոցը միայն ժողովրդական դպրոցը չէր.

այստեղ էլ, այս ճգնաւորական համայնքի մէջ, նոյն գիրն ու դպրութիւնն էին գործում և եկեղեցու համար բանակ էին պատրաստում։ Ինքը, Մեսրոպը, շարունակ շրջում էր այս ու այն կողմ, այցելում էր իր անապատականներին, ապրում էր նրանց հետ։ Բայց անապատի և ամայութեան մարդ նա երբէք չէր եղել. կանոնաւոր տեղեկութիւններ էր ստանում իր դպրոցների մասին և շտապում էր հասնել այնտեղ, ուր հարկաւոր էր լինում նրա ներկայութիւնը։

Կաթողիկոսութիւնից հեռացած Սահակը, ի հարկէ, աւելի շատ յարմարութիւններ ու ժամանակ ունէր իր մտերիմ ընկերակցի հետ գործելու համար։ Երկու գաղափարակիցներ, երկու խոշոր խելքեր, նրանք լծակիցներ էին մի մշտատև, սուրբ աշխատութեան մէջ։ Ոչինչ բան չը կարողացաւ խախտել նրանց ջերմ սրտակցութիւնը, քանի որ կենդանի էին երկուսը։ Շատ քիչ կարելի է գտնել այդպիսի իդէալական եղբայրութիւն երկու մարդու մէջ։ Միշտ միասին, միշտ անուններով և գործով միացած։

Եւ ահա 436 թուականի սեպտեմբերի 7-ին, Բագրևանդի Բլուր գիւղում վախճանվեց ս. Սահակը, մենակ թողնելով հայոց ծերունի ուսուցչին։ Հասկանալի է մենակ մնացածի դրութիւնը. նա անդադար ողբում էր

ամբողջ հայ ազգի այդ մեծ կորուստը, դառն կսկիծով էր անց կացնում իր տխուր, միայնակ օրերը։ Նրան յանձնվեց կաթողիկոսական տեղապահի պաշտօնը, և նա աշխատում էր օր ու գիշեր, որ մեծ նեցուկից զրկված եկեղեցին չը մոռանայ այն ճանապարհը, որ գծված էր այնքան երկարատև ու մեծ ջանքերով, այնքան զոհերով։ Բայց մենակութիւնը յաղթեց նրան. Սահակի մահից հազիւ հինգ ամիս անցած՝ նա էլ շտապեց գնալ իր ընկերի մօտ։

Մահվան անկողնում պառկած ուսուցիչը չը մոռացաւ որ այս աշխարհի վրա թողնում է մի նոր, դեռ խնամքի և հոգացողութեան կարօտ գործ։ Քանի շունչը բերանումն էր, իր աշակերտներին ու մերձաւորներին խրատում էր աշխատել, անդադար աշխատել։

Հոգևորական աշակերտների հետ՝ մեռնողին շրջապատել էին և Վահան Ամատունին ու Համայեակ Մամիկոնեանը...

---

Մեծագործութիւնները երախտագիտութիւն են պահանջում։ Մեծագործ անձնաւորութիւնները կամ սուրբեր են, կամ հերոսներ ապագայ սերունդների համար և նրանց պակասութիւնները ջնջվում, մոռացվում են առաջին իսկ երախտագէտ սերունդի մտքից։

Կորիւնը ամեն տեղ ներկայացնում է իր ուսուցչին իբրև մի հրեշտակ, որի վրա ոչ մի բիծ չէ թողել մարդկային պակասութիւններից և ոչ մէկը։ Սակայն պատմութեան պարտաւորութիւնն է ցոյց տալ որ հրեշտակները չեն կարգադրում մարդկութեան գործերը, այլ մեր աշխարհի ծնունդ, մեր աշխարհի կարգերին ու բարքերին ենթարկված մահկանացուները, մարդիկ, որոնք աստուածային կայծեր կրելով իրանց մէջ, կրում են և մեր բնութեան յատուկ կրքերն ու սխալները։ Նախապաշարված, հրաշքներով սնված կրօնական հայեցողութիւնը սովոր է ամեն մի փայլուն, արտակարգ երևոյթ վերագրել երկնքին, նախասահմանութեան և յայտնութեան սկզբունքներին հետևելով ասել՝ թէ երկինքը կամեցաւ, և այդպէս եղաւ, իսկ եթէ չը կամենար՝ չէր լինի։ Մինչդեռ գիտութիւնը, ընդհակառակն, ամեն մի մեծագործութեան հեղինակի մէջ աշխատում է տեսնել մարդ, ժամանակի, միջավայրի, հանգամանքների արդիւնք, արտայայտութիւն ներկայացնող մարդ։

«Ես մարդ եմ, և ինձ խորթ չէ ոչինչ մարդկային բան»։ Այսպէս ասելի լաւ է, աւելի բնական։ Այսպիսի լոյսի մէջ երևացող հերոսը կարող է ոգևորել, դէպի մեծագործութիւն տանել մարդկանց, քանի որ նա

երկնքում բնակվող անմարմին հրեշտակ չէ, որի զուգակիցը չը կայ իրականութեան մէջ, այլ մարդ է, որին կարող է նմանվել ամեն մարդ։

Մեր Մեսրոպի մասին, տարաբախտաբար, չը կան այնքան մանրամասնութիւններ, որոնք թոյլ տային մեզ մանել նրա կեանքի բոլոր խորշերի մէջ։ Սակայն նրա հիացած աշակերտը իր ներբողի մէջ թողել է երկու փաստ, որոնց վրա պէտք է ուշադրութիւն դարձնել։

Դրանցից մէկը մենք արդէն յիշել ենք —հալածանքը հեթանոսութեան դէմ, Գողթան գաւառում։ Կորիւնը, ինչպէս տեսանք, մութ այլաբանութիւններով է յիշատակում այդ եղելութիւնը։ Բայց երկրորդ փաստը արդէն միանգամայն պարզ է։ Մեսրոպին, իբրև քրիստոնեայ միսիօնարի, յանձնված էր քննել և վերացնել «բարբարիանոս» կոչված աղանդը։ Չը կարողանալով խօսքի, համոզմունքի զօրութեամբ հասնել նպատակին, նա դիմեց բռնութիւններին։ «Թշուառացնող գաւազանը գործի դրեց», ասում է Կորիւնը. «ամենածանր պատուհասներ բերեց նրանց գլխին բանտերի, տանջանքների և գելարանների մէջ. իսկ երբ այդ էլ չօգնեց, ջարդելով, խանձելով, մրոտելով և տեսակ տեսակ խայտառակելով,դուրս վռնդեցին աշխարհից»։

Կարծէք աստրական սեպաձև արձանագրութիւն էք կարդում և իսկոյն ասում էք որ այս անգթութիւնները, որքան էլ բարեպաշտական մտքով գործադրված լինեն, չեն կարող արդարանալ քրիստոնէութեան վեհ գաղափարի առաջ։ Մխիթարականը այս տըխուր պատմութեան մէջ այն է, որ անգթութիւնը Մեսրոպի անձնական յատկութիւններից չէր, այլ բղխում էր ժամանակի հասկացողութիւններից, որոնք ընդհանուր էին ամեն տեղ։

Մեզ հասել է և մի ուրիշ փաստ, ուր Մեսրոպի հետ նոյն սկզբունքը պաշտպանող է արդէն և Սահակը։ Պրոկլ եպիսկոպոսը, իմանալով որ նեստորական մի քանի վարդապետներ Հայաստան են գնացել, թուղթ է գրում Սահակին և Մեսրոպին, խնդրելով նրանց զգուշանալ այդ հերետիկոսների վարդապետութիւնից։ Իրանց պատասխանի մէջ Սահակն ու Մեսրոպը յայտնում են Պրոկլին որ ուղիղ հաւատից խոտորվածներին նրանք չեն խնայում, ոչ միայն հալածում են, այլ և մեծամեծ պատիժների ու պատուհասների են ենթարկում։ Նոյն միջոցը, և աւելի մեծ չափերով, նրանք առաջարկում են Պրոկլ եպիսկոպոսին, որ աւելի մեծ իշխանութիւն ունի, ուրեմն և պարտաւոր է անուղղափառ քրիստոնեաներին մէջ տեղից վերացնել։ Նը-

րանք նոյն իսկ պնդում են որ յունաց Թագաւորը անպատճառ պատիժներ ու պատուհաս հանէ այդպիսիների դէմ։

Ուսուցիչների հայեացքը ժառանգեցին և աշակերտները։ Եթէ չը լինէր այդպիսի հայեացք, հինգերորդ դարի կրօնական ազատամարտութիւնը չէր գործադրի այնպիսի անողորմ սարսափահար միջոցներ։

Եւ արդեօք միայն հայոց աշխարհում որոնենք այսպիսի հայեացք։ Ամբողջ Արևմուտքը լիքն է նոյնը հաստատող փաստերով։ Յիշենք Եփեսոսի եկեղեցական ժողովը, ուր հաւաքված եկեղեցական նշանաւոր հայրերը պիտի վճռէին երկնքի հարցերը, բայց զզուելի բռնութիւններ, բարբարոսական արարքներ էին գործադրում իրանց հակառակորդների դէմ։

Հայեացքը ընդհանուր էր։

Ամենքը, այո, մարդիկ էին։

## Ա.

*Սահակ-Մեսրոպեան գործունէութեան շարունակութիւնը։—Յազկերտ երկրորդ և Միհրներսէհի կառավարութիւնը։—Քրիստոնէութիւնը ջնջելու ծրագիր։—Հայերի պետական հաւատարմութիւնը։*

---

Ս. Սահակի և ս. Մեսրոպի մահը հինգերորդ դարի շարժման վերջաբանը չէր։ Դա վերջ էր նիւթական գոյութեան, մսի և ոսկորների համար միայն, մինչդեռ այդ երկու անունները ամբողջովին գաղափար են, որ մոռացութեան դերեզման չէ ճանաչում, որ արհամարհում է ժամանակի ու տարածութեան ամեն ինչ կլանող, անյայտացնող ոյժը։ Այդ գաղափարի համար ոչինչ ընդհատում չէին այն երկու գերեզմանները, որոնցից մէկը փորվեց Աշտիշատում, միւսը Օշականում։

Մենք գաղափարի ծնունդը, սկզբնական շրջանը տեսանք, բայց պիտի տեսնենք և նրա զարգացումը, յաղթանակը։ Հասարա-

կական գործը գնահատել կարելի է նրա հետեւանքներով. այլապէս՝ պատկերը դժգոյն ու միակողմանի կը լինի։ Եւ Սահակ-Մեսրոպեան գործունէութեան հետեւանքները որոնելու համար հարկ չը կայ շատ հեռու գնալ։ Մեր պատմութիւնը այստեղ նմանը չունեցող մի հրաշալի տեսարան է տալիս։ Քառասուն—քառասունուհինգ տարի էր, ինչ Հայաստանում տառեր ու գրքեր կային։ Այս կարճ միջոցում երկրի եթէ ոչ ամբողջութիւնը, գոնէ նրա մեծ, նշանաւոր մասը արդէն բոլորովին այլ մտաւոր երեւոյթ է ներկայացնում։ Այնքան նա պատրաստված է, այնքան բարձր գիտակցութեան է հասել, որ նահատակվում է գաղափարի վրա։ Դեռ մամուռ չէր բուսել Սահակի և Մեսրոպի գերեզմանների վրա, երբ նրանց դպրոցները ահաւոր պատերազմ յայտարարեցին հինաւուրց իրանականութեան դէմ։ Ահա կեանքի մէջ մտած այդ նոր ոյժն է, որի հետ պէտք է ծանօթանալ՝ տառերի գիւտի և գրական շարժման ամբողջ նշանակութիւնը հասկանալու համար։

---

Աշտիշատի և Օշականի հողերը գերեզմաններ բացին երկու մեծ գործիչների համար մի այնպիսի ժամանակ, որ խորհրդա-

ւոր էր մանաւանդ հայոց պատմութեան տեսակէտից։ Երկրորդ տարին էր, ինչ Սասանեաններին գահն էր բարձրացել Բահրամ-Գորի որդին, Յազկերտ երկրորդը։

Պարսից հոգեւորականութիւնը և ազնուականները չէին կարող դժգոհ լինել այս թագաւորից։ Յազկերտը գնաց իր հօր ճանապարհով, և արքունիքը հրամայողի, կարգադրողի դերում մնաց։ Յազկերտը, բացի կրօնական հնամոլ ֆանատիկոսութեան գործիք դառնալուց, անձնական վատ հակումներ էլ ունէր։ Դա մէկն էր արևելեան արիւնըռուշտ բռնակալներից։ Պատմվում է որ նա ամուսնացաւ իր հարազատ աղջկայ հետ. այսպիսի խառնակութիւններ հաճութեամբ էր թոյլատրում մազդեզական կրօնը, բայց Յազկերտը յետոյ սպանեց իր այդ դուստր-կնոջը—ահա ինչը չը կար մազդեզականութեան և մարդկային խղճի մէջ։

Բահրամ-Գորի վերջին տարիներում Միհրներսէհը հրաժարական էր տուել և քաշվել իր մեծ կալուածը, ուր ուզում էր խաղաղ կերպով ապրել մինչև կեանքի վերջը։ Բայց Յազկերտը, թագաւոր դառնալուն պէս, իսկոյն կանչեց նրան իր մօտ. և նա նորից իր ձեռքն առաւ կառավարութեան ղեկը։ Եթէ Բահրամը պետական գործերից աւելի սիրում էր որսորդութիւնն ու հարեմական

զուարճութիւնները, նրա որդին ուղղահաւատ Սասանեան հանդիսացաւ և վերանորոգեց Շապուհ երկրորդի օրերը։ Պատերազմ յոյների դէմ—նրա առաջին գործերից մէկը եղաւ. նա արշաւեց դէպի բիւզանդական սահմանները, սակայն իսկական պատերազմ չը սկսվեց և ընդհարումը վերջացաւ հաշտութեամբ։ Պարսկաստանը վտանգի էր ենթարկված արևելեան կողմից. հեփթաղները անհանգիստ, կուսարար թշնամիներ էին, և Յազկերտը նրանց դէմ գնաց, հանգիստ թողնելով յոյներին։ Բայց հեփթաղները արգելք չը դարձան որ Միհրներսէհը առաջ տանէ իր քաղաքականութիւնը քրիստոնեաների վերաբերմամբ։ Պարսկաստանը ունէր շատ քրիստոնեայ հպատակներ։ Որադրված էր ամենքին ձուլել պարսիկների հետ, վերացնելով ամենազօրեղ խոչընդոտը—քրիստոնէութիւնը։

Հայերը պարսկական պետութեան վերաբերմամբ որ և է անհաւատարմութիւն չէին ցոյց տուել։ Եւ ի՞նչ խօսք կարող էր լինել անհաւատարմութեան մասին, երբ երկիրը ինքն էր իր հարազատ թագաւորին հեռացրել և իր վիճակը յանձնել պարսիկներին։ Հայաստանի հարկը կանոնաւոր կերպով գնում էր Պարսկաստան. ամեն հարկաւոր դէպքում հայ հեծելազօրքը, նախարար-

ների առաջնորդութեամբ, շտապում էր պարսից բանակի հետ միանալու և Պարսկաստանի թշնամիների դէմ կռուելու։ Հայոց այդ զօրքը մեծ պատիւ էր ձեռք բերել պարսիկների մէջ իր քաջութիւններով. ամեն անգամ, երբ նա գնում էր Պարսկաստան, Թագաւորը. իր մօտիկ պաշտօնեաներից մէկին ուղարկում էր նրան դիմաւորելու և արքայական ողջոյնները հաղորդելու. իսկ երբ տեղ էր հասնում, Թագաւորը ինքը զօրահանդէս էր անում։ Հայ իշխաններից շատերը առանձին պատիւներ էին ստանում պատերազմի մէջ իրանց ցոյց տուած քաջութեան համար։ Վարդան Մամիկոնեանի զինուորական ծառայութիւնների մէջ յիշված է նրա քաջութիւնը Մերվի մօտ տեղի ունեցած պատերազմում։ Ահա մինչև ուր էին գնում հայ զօրքերը Պարսկաստանի համար իրանց արիւնը թափելու։

Մի այսպիսի հպատակութիւնը, ըստ երևոյթին, պիտի գոհացնէր պարսիկներին ամեն կողմով։ Բայց հարցեր ստեղծելը ոչինչ դժուարութիւն չունէր Միհրներսէհի պէս մի քաղաքագէտի համար։ Բռնանալ հպատակների ներքին համոզմունքների վրա, կատարելապէս պարսկացնել նրանց—այս էր Միհրներսէհի ձգտումը։ Յազկերտը միանգամայն ենթարկվեց նրան։ Գործում էր հին կասկա-

ծը, որ այնքան աղէտներ էր պատճառել հայերին—կրօնակցութիւնը յոյների հետ իբրև քաղաքական վտանգ: Հայերին առաջարկվում էր ընդունել պարսկական մազդեզականութիւնը, դա միակ միջոցն էր պարսից կառավարութեան վստահութիւնը գրաւելու համար: Հպատակական ուրիշ պարտաւորութիւնները ոչինչ են յայտարարվում—հարկեր տալը, պարսից բանակին ծառայելը. և այլն:

Այս առաջարկութիւնը յայտարարվեց իբրև թագաւորի կամք: Եւ Միհրներսէհի կառավարութիւնը պատրաստութիւններ էր տեսնում այդ կամքը անպատճառ իրագործելու համար:

# Բ.

*Միհրներսեհի առաջարկութիւնը։ — Սահակ-Մեսրոպեան դպրոցները Արտաշատի ժողովում։— Մերժողական պատասխանը։—Հայերը ինքնաբերաբար հրաժարվում են ասիականութիւնից։—Ինքնազոհու-թեան պատրաստականութիւն։—Երկիրը մեծ արկածի մէջ։—Դրութեան գնահատութիւնը։*

---

Սկզբում բռնութիւն չը գործադրվեց։ Միհրներսեհը շատ ճարտար մի հիւսուածք էր ստեղծել՝ հարցը խաղաղ կերպով, լոկ քաղաքական ճարպիկութեամբ վճռելու համար։ Նա պաշտօնապէս յայտարարեց պարսից կառավարութեան կամքը հայերին մի թղթի մէջ, ուր նախ քննադատում էր քրիստոնէութիւնը, ապացուցանում էր թէ նրանից որքան բարձր է մազդեզականութիւնը, ապա ասում էր որ հաւատարիմ հպատակ հայերը պարտաւոր են ընդունել այն կրօնը, որ ունի նրանց տէրը, այսինքն պարսից թագաւորը, որովհետև նոյն այդ թագաւորը իր Աստուծու առաջ պատասխանատու է և

ծը, որ այնքան աղէտներ էր պատճառել հայերին—կրօնակցութիւնը յոյների հետ իբրև քաղաքական վտանգ։ Հայերին առաջարկվում էր ընդունել պարսկական մազդեզականութիւնը, դա միակ միջոցն էր պարսից կառավարութեան վստահութիւնը գրաւելու համար։ Հպատակական ուրիշ պարտաւորութիւնները ոչինչ են յայտարարվում—հարկեր տալը, պարսից բանակին ծառայելը. և այլն։

Այս առաջարկութիւնը յայտարարվեց իբրև Թագաւորի կամք։ Եւ Միհրներսէհի կառավարութիւնը պատրաստութիւններ էր տեսնում այդ կամքը անպատճառ իրագործելու համար։

## Բ.

*Միհրներսէհի առաջարկութիւնը։ — Սահակ-Մեսրոպեան դպրոցները Արտաշատի ժողովում։—Մերժողական պատասխան։—Հայերը ինքնաբերաբար հրաժարվում են ասիականութիւնից։—Ինքնազոհութեան պատրաստակամութիւն։—Երկիրը մեծ արկածի մէջ։—Դրութեան գնահատութիւնը։*

---

Սկզբում բռնութիւն չը գործադրվեց։ Միհրներսէհը շատ ճարտար մի հիւսուածք էր ստեղծել՝ հարցը խաղաղ կերպով, լոկ քաղաքական ճարպիկութեամբ վճռելու համար։ Նա պաշտօնապէս յայտարարեց պարսից կառավարութեան կամքը հայերին մի թղթի մէջ, ուր նախ քննադատում էր քրիստոնէութիւնը, ապացուցանում էր թէ նրանից որքան բարձր է մազդեզականութիւնը, ապա ասում էր որ հաւատարիմ հպատակ հայերը պարտաւոր են ընդունել այն կրօնը, որ ունի նրանց տէրը, այսինքն պարսից թագաւորը, որովհետև նոյն այդ թագաւորը իր Աստուծու առաջ պատասխանատու է և

իր այլակրօն հպատակների հոգու համար։ Ակնարկելով թէ յոյները իրանց անչափ տգիտութեան և յիմարութեան պատճառով են քրիստոնէութիւն դաւանում, մեծ վէզիրը առանց քաշվելու ասում էր որ մի այդպիսի ազգի հետ հաւատակից լինելը պարսից արքունիքում քաղաքական անհաւատարմութեան նշան պիտի ընդունվի…

Դա դեռ վերջնագիր չէր։ Միհրներսէհը հրաւիրում էր հայերին պատասխան տալ իր թղթին. իսկ Յազկերտը ասել էր որ քննվեն կրօնները, որը լաւ է, այն ընդունեն Պարսկաստանում։ Ուրեմն, առ այժմ բացվում էր կրօնական վիճաբանութիւն հպատակների և տէրերի մէջ։

Հայերը ընդունեցին հրաւէրը և չուշացրին իրանցից պահանջվող պատասխանը։ Արտաշատ քաղաքում գումարվեց մեծ ժողով, որին, բացի հոգևորականներից, մասնակցում էին բազմաթիւ աշխարհականներ, դրանց թւում և նշանաւոր նախարարներ։ Երկիրը առաջին անգամ հանդէս բերեց իր մտաւոր ոյժերը, որոնք պիտի պաշտպանէին նրան, որոշէին նրա անելիքը։ Յայտնի դարձաւ այդտեղ թէ ինչ են սովորել հայերը իրանց աշակերտութեան տարիներում, երբ գրքեր էին կարդում և թարգմանում, ճանապարհորդներ էին ուղարկում Արևմուտք։ Ար-

տաշատի մէջ նիստ կազմողները Սահակ-Մեսրոպեան դպրոցներն էին։ Նախագահը Յովսէփ եպիսկոպոսն էր, առաջին աշակերտներից մէկը, որ Մեսրոպից յետոյ կառավարում էր եկեղեցին։ Նրա անունից էլ գրվեց պատասխանը պարսից հրաւէրի դէմ։

Այդ հրաւէրը իր էութեամբ հին եղելութիւնների մի կրկնութիւնն էր.—մի մենամարտութիւն, որ սախականութեան սկզբունքը այնքան յաճախ յայտարարում էր Արեւմուտքին։ Հին էր ինքը, գործը. զարմանալին, թարմը այն նորութիւնն էր, որ այժմ Արեւմուտքի ներկայացուցիչ էր դարձել մի ազգ, որ մի շարք դարեր իրանականութեան դրօշակի տակ էր գտնվում։ Փոխվել էր ընդհարման դաշտը միայն, նա այժմ Հայաստանի հողի վրա էր։

Մենք ներկայ ենք պատմական մի մեծ դէպքի։ Իրանականութեան հրաւէրը ոչ տատանում է առաջացնում հայերի մէջ, ոչ մանաւանդ երկիւղ։ Արտաշատի ժողովը կտրուկ ու համարձակ կերպով մերժեց Իրանի առաջարկութիւնը։

Դա դեռ ապստամբութիւն չէր։ Հայերը հանդիսաւոր կերպով, վերջին անգամ և ընդմիշտ, կտրվում էին իրանց անցեալից և սեփականացնում էին այն ճակատագիրը, որ Սահակ-Մեսրոպեան գործունէութեան բնա-

կան հետեւանքն էր։ Բայց նրանք, իբրեւ քրիստոնեաներ, յայտնում էին պարսից կառավարութեան որ պատրաստ են հաւատարիմ հպատակութեան բոլոր պարտականութիւնները կատարել, քանի որ իրանց կրօնը պատուիրում է հնազանդվել մարմնաւոր իշխանութեան։ Սակայն այդ հնազանդութիւնը չը պիտի խանգարէ եւ չէ կարող խանգարել որ հաւատարիմ հպատակների միտքն ու խիղճը ազատ լինի։

Քաղաքական անկախութիւն այլ եւս չէին կարող պաշտպանել հայերը. դրա համար նրանք զառամած մի ազգ էին, ոչ ույժ ունէին, ոչ եռանդ։ Բայց այդ զառամութեան մէջ մտել էր մի նոր սկզբունք, որ յանդգնութեան համար համարձակութիւն էր հաղորդել նոյն այդ ազգին։ Եւ դա մտքի ու խղճի ազատութիւնն էր, եւրոպականութեան այդ ամենագլխաւոր հիմքը։

Գաղտնիք չէր որ արեւելեան բռնապետութիւնների մէջ չէ եղել եւ չը պիտի լինի մտքի եւ խղճի ազատութիւն, ուստի եւ Արտաշատի ժողովի պատասխանը պիտի դառնար մի յանդուգն եւ աններելի ըմբոստութեան ապացոյց։ Հայ եպիսկոպոսները այդ շատ լաւ էին հասկանում. նրանք ստացել էին վիճաբանութեան հրաւիրող մի թուղթ, որ գրված էր պաշտօնական քաղաքավարու-

թեամբ, իսկ իրանց պատասխանի տակ ա-
ւելացնում էին. «Բո սուրը, և մեր պարանո-
ցը... Մեր ամբողջ մարմինը քո ձեռքին է,
շուտով արա ինչ ուզում ես»։ Նրանք, այո,
գիտէին որ ինքնապաշտպանութիւն, կար-
ծիքների ազատ փոխանակութիւն չէ թոյլա-
տրվում Պարսկաստանի մէջ։ Ի՞նչպէս էր որ
սորագրեցին մի այսպիսի թուղթ։

Երկիրը նեռվում էր սոսկալի արկածի
մէջ։ Բայց այն դրութիւնը, որի մէջ գտնը-
վում էր հայ ազգը, միանգամայն հասկանալի
է դարձնում այդ ինքնավստահութիւնը։ Որ
գրականութեան, լուսաւորութեան բարիք-
ներին նոր հաղորդված մի ժողովուրդ խի-
զախ ինքնամոռացութեան մէջ է ընկնում,—
այդ բնական է։ Քաղաքական անկումից յե-
տոյ երկրի ինքնապաշտպանութեան բոլոր
ոյժերը կենտրօնանում են եկեղեցու շուրջը,
որ աճազին զոհեր է պահանջում իր գոյու-
թիւնը պահպանելու համար։ Դա միակող-
մանիութիւն էր, չափազանցութիւն էր, և
մենք երբէք չը պիտի մոռանանք որ հայերը
իրանց քաղաքական իշխանութեան պաշտ-
պանութիւնը ոչ իրանց մտաւոր վերածնու-
թեան պտուղներով, ոչ որ և է զոհողութեամբ
չպահովեցին, չը հասկացան որ առանց քա-
ղաքական ինքնուրոյն գոյութեան չէ կարող
լինել լիակատար կեանք, որ կրօնական ան-

կախութիւնը կեանքի միայն մի կողմն է։ Այսպէս է ճշմարտութիւնը մի ազգի լայն, իրական շահերի տեսակէտից։ Բայց պատմութիւնը տալիս է այն, ինչ եղել է։ Մենք կարող ենք և պարտաւոր ենք քննադատել նրան, որոշել դէպքերի և գործողութիւնների իսկական արժէքը, բայց այս հանգամանքը չէ արգելում որ մենք մտնենք այն ճակատագրական դրութեան մէջ, որ այս կամ այն պատճառով հաստատուեց մեր երկրում։ Այդ դրութիւնը միայն հոգևոր ջահերին առաջնակարգ կարևորութիւն տուեց. մենք մոռացանք աշխարհային շատ բաներ և կրօնական ազգ դարձանք։ Իրողութիւնները հէնց այդ կերպարանքի մէջ էլ պիտի վերցնենք մենք։

Արտաշատի ժողովի վճիռը, ինչպէս ասացինք, բնական էր։ Նայելով երկու կողմերին, այդ պահանջողներին էլ, մերժողներին էլ, մենք համոզվում ենք որ ուրիշ կերպ չէր էլ կարող լինել։ Միտքը ընդհարվում էր մտքի հետ։ Ո՞րը պիտի նուաճէր։ Որպէս զի հասկանանք այս, իմանանք թէ գերազանցութիւնը որ ախոյեանին էր պատկանում, մենք պիտի տեսնենք թէ ինչ մտաւոր պաշարով էին հանդէս գալիս երկու կողմերը։

---

## Գ.

*Մազդեզականութիւնը իբրև պարսիկների միակ մտաւոր հարստութիւն։—Այդ կրօնի նախնական ձևը։—Բնապաշտութիւն։—Զրադաշտի վերանորոգութիւնը։—Աստուածութիւն, պաշտամունքներ։—Բարոյական և առաջադիմական սկզբունքներ։—Բայց որքա՞ն էր կրօնը բարձրացնում մարդուն։—Պատիժներ։—Կրօնական անհամբերողութիւն։—Սկզբնական մաքրութիւնից շեղվելը։—Հին աստուածներ, նորամուտ պաշտամունքներ։—Սասանեանների վերանորոգած մազդեզականութիւնը։—Հոգևորականների լուծը։—Կրօնը ծէսի փոխված։—Մանիի փորձը, քարացման յաղթանակը։*

---

Միակ մտաւոր հարստութիւնը, որով շրջապատված էր Սասանեան հպարտ գահը, որ նրա ոյժն էր ու պաշտպանը, մազդեզական կրօնն էր։ Այն, ինչ այդ ժամանակ պաշտում էին պարսիկները, մի շատ պատկառելի հնութիւն էր ներկայացնում։

Նախապատմական դարերի մթութեան մէջ է կորած այն ժամանակը, երբ արիական մեծ և ընդունակ ցեղը իր միջից հատուածներ հանեց, որոնք երկու ճիւղաւորու-

թիւն կազմելով, գնացին դէպի Ասիայի հարաւային ծայրերը։ Դրանցից մէկը հաստատուեց Հնդկաստանում և իր կուլտուրական հակումները ձևակերպեց կրօնական մի ամբողջ սիստեմի մէջ, իսկ միւսը անցաւ դէպի Իրան և այդտեղ հանդէս եկաւ իր ժողովրդական կրօնով։

Երկու ճիւղերը մօտիկ ազգակցական կապեր ունէին իրար հետ, ուստի և նրանց կրօնները, սկզբում մանաւանդ, մի ընդհանուր ծագում ունէին։ Բայց ժամանակի ընթացքում ազգակից ճիւղերի կեանքը առաջ բերեց պայմաններ, որոնք տարբերութիւններ դրին նրանց աշխարհայեցողութիւնների մէջ։ Իրանի արիացին խաշնարած և երկրագործ ժողովուրդ էր, որի հարստութիւնը հօտերն ու առատ հունձն էին։ Բնութիւնը Իրանում, աշխարհագրական պայմանները բաւական դժուարացնում են մի այդպիսի ժողովրդի մրցութիւնը շրջապատող արգելքների, թշնամիների դէմ։ Հասկանալի է թէ այդպիսի պայմանների մէջ դրուած խաշնարած-երկրագործը ինչ իդէալներ կարող է ունենալ, ինչը սիրոյ և ատելութեան առարկայ կը դարձնէ իր համար։

Բնութեան միամիտ զաւակ, ամբողջովին բնութեան ահաւոր իշխանութեան տակ դրուած, Իրանի արիացին այդ բնութեան

երկրպագում է դառնում։ Բայց ոչ ամբողջ բնութեան։ Տնտեսական շահը, օգուտի սկզբունքը նրան առաջնորդում են պաշտամունքի առարկաներ որոնելու մէջ։ Նրա առաջին օգնականը, նրա տնտեսութեան նեցուկը եզն է և նա սրբացնում է այդ օգտակար անասունը. եզը ամենից առաջ է ստեղծվել, մարդը նրա փորոտիքից է դուրս եկել. եզի մէզը լուանում է ամեն կեղտ ու մեղք, ուստի մարդը լուացվում է նրանով՝ մաքրվելու համար։ Շունը տնտեսութեան պահապանն է, հաւատարիմ, սակաւապէտ, ազնիւ. և նա դառնում է մարդու հիացմունքի առարկայ, մի սուրբ արարած։ Շան ծննդաբերութեան ժամանակ մարդը նոյնն է անում, ինչ իր կնոջ ծննդաբերութեան ժամանակ, շան դիակի հետ նա այնպէս է վարվում, ինչպէս մարդու դիակի հետ։ Մեռնող մարդու առաջ կանգնեցնում են շուն, որպէս զի մեռնողի վերջին հայեացքը այդ սուրբ կենդանու վրա հանգչի։ Աքաղաղը կանչում է գիշերը, իմաց է տալիս որ լոյսը մօտեցել է։ Դա մի անգնահատելի ծառայութիւն է, որի համար էլ աքաղաղը սուրբ կենդանիների մէջ է։

Կան, ի հարկէ, և վնասակար կենդանիներ. մկները, միջատները փչացնում են մարդու ձեռքի աշխատանքը, օձերը, գիշատող գազանները վնասում են, և նրանք չար ու

անսուրբ են, նրանց պէտք է ատել և սպանել։ Այսպէս որոշվում են երկու սկզբունք բնութեան մէջ—բարի և չար։ Միայն բարին է մարդու երկրպագութեան արժանի։ Բարի է արշալոյսը, որ հալածում է գիշերային խաւարը, բարի է արեգակը, որ ցուրտ ձմեռվան վերջ է դնում և հալեցնում է լեռների ձիւնը. բարի է կրակը, որ երկնային լոյսի և ջերմութեան մարմնացումն է աշխարհիս վրա։ Պաշտվում է ամեն ինչ, որ օգնում ու հովանաւորում է բնութեան զաւակին. մայրհողը, որ նրա կերակրողն է, մաքուր ջրերը, որոնք կեանք են կենդանիների և բոյսերի համար։ Խաւարը, ցուրտը, մահը չար սկըզբունքի գործերն են։

Այսպէս դարերի ընթացքում զարգանում է բնութեան պաշտամունքը։ Ժողովըրդական կրօնը ամեն տեղ ի նկատի ունի նիւթականը։ Թէև նա երկրպագում է և անտեսանելի աստուածների, բայց սրանք նոյն նիւթական աշխարհի, նոյն բնութեան երևոյթների աստուածացումն էին։ Ճիշտ է, այդ կոպիտ տարրապաշտութեան մէջ ժողովուրդը մտցրել էր արիական ցեղին յատուկ բարոյական սկզբունքներ, որոնք գլխաւորապէս աշխարհաշինութիւն, առատութիւն և բարութիւն էին քարոզում, բայց և այդպէս, դա մի կրօն էր, որ վայրենի ցեղերի ֆէտիշա-

կանութիւնից մի երկու քայլ հազիւ էր ա-
ռաջ գնացել։

Ինքը, ժողովուրդը, չէր կարող բարե-
փոխել իր կրօնը, աւելի բարձր ոգի հաղոր-
դել նրան։ Հարկաւոր էր մի վերանորոգիչ,
մի մեծ մարգարէ։ Եւ այդպիսի վերանորո-
գիչ հանդիսացաւ Զրադաշտ անունով մի
քուրմ, որ սիստեմի վերածեց ժողովրդական
հաւատալիքները և մարդկային հասկացողու-
թիւններ հաղորդեց աստուածպաշտութեան։
Շատ հակասական են կարծիքները այն ժա-
մանակի մասին, երբ գործում, քարոզում էր
Զրադաշտը։ Հաւանական են համարում որ
նա ապրած լինի Քրիստոսից մօտաւորապէս
1400 տարի առաջ։ Դա մի մեծ կրօնական
վերանորոգիչ էր, որի կազմակերպած կրօնը
իր բարոյական բարձր հասկացողութիւննե-
րով հին մարդկութեան ամենախոշոր մտաւոր
նուաճումներից մէկն էր. ոչ ոք, բացի հրէա-
կան ազգից, չէր կարողացել այդպիսի կա-
տարեալ կրօնական սիստեմ ստեղծել։

Զրադաշտը տուեց իր ժողովրդին բազ-
մաթիւ գրքեր, որոնց մէջ բացի աստուածա-
բանութիւնից կային մարդկային հանրակե-
ցութեան մէջ հարկաւոր բոլոր գիտելիքները,
օրէնքները։ Նա էր, որ որոշեց, թէև դեռ ա-
ղօտ կերպով, բարի և չար սկզբունքների
տիրապետութիւնը բնութեան մէջ, նկարա-

գրեց բարի աստուծու յատկութիւնները, պատմեց թէ ինչպէս է ստեղծվել աշխարհը։ Բարի աստուծուն նա տուեց Ահուրամազդա անունը, որից կրօնը ստացաւ մազդեզականութիւն անունը. բայց շատ անգամ այդ կրօնը, մեծ մարգարէի անունով, զրադաշտականութիւն էլ է կոչվում։

Այլ ևս նիւթապաշտութիւնը չէր կրօնի ոգին։ Զրադաշտը մարդու հոգին անմահ յայտարարեց, մեռելների յարութիւն և վերջին դատաստան քարոզեց։ Հրէաները Պարսկաստանից վերցրին այս կրօնական հայեացքները և տարածեցին Պալեստինում։ Մարդուց պահանջվում էր մաքրութիւն. դա նոյն երկրագործ և խաշնարած մարդն էր։ Զրադաշտը, իբրև ժողովրդի զաւակ, սրբացրեց երկրագործի աշխատանքը, նրա հին հասկացողութիւնները օգտակար կենդանիների մասին։ «Ով մշակում է հողը, նա սրբութիւն է ցանում», ասում էր սրբազան գիրքը. իսկ ծուլութիւնը, աղքատ տնտեսութիւնը, քիչ անասուններ, քիչ որդիներ ունենալը մեղքեր էին։ Բնութեան մէջ բարի և չար սկըզբունքների անընդհատ մրցութիւն է տեղի ունենում. մարդը չը պիտի անտարբեր հանդիսատես լինի այդ մրցութեան, այլ պարտաւոր է մասնակցել կռւին, բարի սկզբունքի աշխատակիցը դառնալ և նրա հետ միա-

սին կռուել չարի դէմ· Նա պատրաստ պիտի լինի նոյն իսկ իր անձը զոհելու բարի աստուծուն։ Զրադաշտականութիւնը, ուրեմն, անշարժութեան կրօն չէր· Նա մղում էր մարդուն դէպի առաջադիմութիւն, դէպի անդադար աշխատութիւն։ Զրադաշտը սահմանեց և պատիժներ, ապաշխարանքի ձևեր մեղաւոր մարդկանց համար· այդտեղ էլ մենք տեսնում ենք նոյն շինարարութեան, նոյն կուլտուրական աշխատասիրութեան ոգին։

Չը նայած իր դաւանած բարոյական սկզբունքներին, զրադաշտականութիւնը համաշխարհային կրօն չը դարձաւ և չէր էլ կարող դառնալ, քանի որ Ահուրամազդա աստուծուն Զրադաշտը չէր կարողացել հաղորդել որոշ դէմք, հարկաւոր չափով վեհութիւն և կարողութիւն։ Զրադաշտը, իբրև կրօնական վերանորոգիչ, արմատական փոփոխութիւնների մարդ չէր· հինը, ժողովրդականը, նա չը վերացրեց· Նա միայն ստեղծեց միաստուածեան սիստեմ, իսկ նրանից յետոյ ժողովրդական բազմաստուածութիւնը նորից գլուխ բարձրացրեց։ Նա չը կարողացաւ մեղմացնել և ժողովրդի դժնդակ հասկացողութիւնները, որոնք մանաւանդ աչքի են զարնւում պատժական օրէնքների մէջ։ Մարդու վրա բարձված էին անթիւ պարտաւորութիւններ· մարդը պիտի աշխատէր բարի, ա-

*ռաքինի լինել, բայց այդ մարդը բարձրացրված չէր, նրան չէր ներշնչվում ազատութեան, անկախութեան, անհատական զարգացման զգացմունքը։ Արևելքը հաստատուն մնաց և այդ բարձր, իդէալական կրօնի մէջ։*

*Ահա, օրինակ, ինչ պատիժներ էր սահմանել զրադաշտականութիւնը յանցանքների համար։ Յանցաւորներին պատժում էին՝ փայտերով ծեծելով նրանց գարշապարները։ Եթէ մարդը մարդու կեանքի դէմ փորձ էր անում, վէրք էր հասցնում նրան կամ ուղղակի սպանում էր, նա ստանում էր իր գարշապարների վրա, նայած յանցանքի աստիճանին, հինգից մինչև երկու հարիւր հարուած։ Բայց երբ նոյն մարդը վատ էր կերակրում իր գամփռին, նա նոյն պատիժն էր ստանում։ Օգտակար, սուրբ կենդանիներին սպանելը աւելի խիստ էր պատժվում, քան մարդասպանութիւնը. շան ձագի սպանութիւնը հինգ հարիւր հարուած է բերում, գամփռի սպանութիւնը՝ ութ հարիւր, ոզնու սպանութիւնը՝ հազար։ Հարուածների թիւը հասնում է նոյն իսկ տասը հազարի, երբ սպանվողը ջրաշունն է։ Մարդու արժանաւորութիւնը այդքան ստոր էր գնահատվում։ Դա մի տեսակ կենդանապաշտութիւն էր։*

*Զրադաշտականութեան յատուկ էր և խիստ շօվինիզմը։ Նա զանազանում էր եր-*

կու տեսակ մարդիկ—ուղղահաւատներ, ո-
րոնք Ահուրամազդայի երկրպագուներն էին
և ոչ-ուղղահաւատներ, որոնք անուանվում
էին դևերի երկրպագուներ։ Ուղղահաւատը
բարձր էր ոչ-ուղղահաւատից։ Երբ մէկը
ուզում էր իր վիրաբուժական հմտութիւնը
ցոյց տալ, նրան պէտք էր տալ երեք այլա-
կրօն մարդ. եթէ դրանք մեռան բժշկի դա-
նակի տակ, նշանակում է որ նա անընդու-
նակ է բժշկութիւններ անելու։ Պատիժ չը
կայ։ Իսկ եթէ նոյն բժիշկը բժշկում է ուղ-
ղահաւատին և նրան իր դանակով վէրք է
պատճառում, այդ դէպքում նա արդէն պա-
տիժ է ստանում իբրև դիտաւորեալ վիրա-
ւորման համար։ Այս սկզբունքը արդէն են-
թադրում է անհամբերողութիւն դէպի միւս
կրօնները։ Եւ նա այդպէս թոյլ չը մնաց մազ-
դեզականութեան մէջ։ Ապագայում, երբ հո-
գևորականութիւնը դարձաւ մի այնպիսի ոյժ,
որի լուծի տակ ճնշված էր լինում նոյն իսկ
արքունիքը, անհամբերողութիւնը աւելի ևս
զարգացաւ, մոգերը նոյն իսկ կեղծեցին սըր-
բազան գրքերը և այնպիսի կերպարանք
տուին այդ տեղին, որ դուրս էր գալիս թէ
պէտք է հալածել ոչ-մազդեզականներին,
բռնութեամբ հարկադրել որ ամենքը պարս-
կական ուղղահաւատութիւնն ընդունեն։ Շա-
պուհ երկրորդը իր այն հրովարտակի մէջ,

ուր հալածանքներ էր յարուցանում քրիստոնեաների դէմ, այսպէս էր ասում. «Այժմ, երբ մենք ճանաչեցինք համաշխարհային օրէնքը այստեղ, երկրի վրա, նրանք (հոգևորականները) չը պիտի թոյլ տան որ անհաւատութիւն մնայ որ և է մարդու մէջ, և ես կաշխատեմ որ այդպէս լինի»։

Զրադաշտականութիւնը չը մնաց իր սկզբնական մաքրութեան մէջ։ Սա յատուկ է մարդկային բոլոր կրօններին։ Մենք պէտք է յիշենք որ մազդեզականութեան բուն հայրենիքը Բակտրիան էր, Արևելեան Իրանում։ Այդտեղ նա կազմակերպվեց իբրև կրօն, այդտեղ էր գործում Զրադաշտը։ Ուղղափառութեան աւանդապահ երկիրը, սակայն, չը բաւականացաւ իր մեծ մարգարէի վարդապետութիւններով. Նրա մահից յետոյ նրա կրօնի մէջ խուժեցին ժողովրդական հին աստուածները և այդպիսով Ահուրամազդայի իսկական պաշտամունքը աղճատվեց։ Բայց և այդպէս, Բակտրիան շարունակում էր պահել ուղղափառութեան համբաւը և արհամարհանքով էր վերաբերվում Արևմտեան Իրանին, ուր պարսկական պետութեան նուաճումները բազմաթիւ ազգեր հպատակեցրին մի գայիսոնի։ Հպատակ ազգերը իրանց հաւատալիքները հաղորդեցին մազդեզականութեան, որ այդպիսով խորթ տարրեր ընդու-

*նեց իր մէջ, նոյն իսկ օտար աստուածներ էլ։ Այդ անկումը նկատվում է դեռ Աքեմե-նեանների ժամանակից։*

*Հետզհետէ մթնեց պարզ ու մաքուր վարդապետութիւնը, կրօնը կերպարանա-փոխվեց, նեղ սահմաններում շրջափակվեց և դարձաւ դասակարգային սեփականութիւն, մոգերի, հոգևորականութեան կրօն։ Բոլորո-վին պարզ ու որոշ կերպով ձևացաւ բարի ու չար սկզբունքների տարբերութիւնը. Ա-հուրամազդայի դիմաց դրվեց հակառակ աս-տուածութիւնը, չարութեան հեղինակ Անրի-մանը։ Ինքը, Զրադաշտը, աստուածների կարգը դասվեց, իսկ նրա վարդապետութիւ-նը դարձաւ ժողովրդի բազմութեան անհասա-կանալի, որովհետև այն լեզուն, որով գրված էին սրբազան գրքերը (նրանք կոչվում են «Աւեստա»), հնացել և անհասականալի էր դարձել։*

*Սասանեանները վերանորոգեցին մազ-դեզականութիւնը, բայց այդ վերանորոգվա-ծը մի քարացած, ձևական կրօն էր։ Հոգևո-րականութիւնը անչափ բազմացաւ, որովհե-տև նա էր, որ կարողանում էր կատարել տալ կրօնի բազմաթիւ, բարդ պահանջները։ Զրադաշտը սահմանել էր զանազան ծէսեր և լուացումներ՝ մեղքերից ազատվելու համար. այժմ մոռացվել էր կրօնի էութիւնը և բազ-*

մապատկվել էին ծէսերը, որոնք փոխարինեցին կենդանի հաւատը։ Մոգը հարկաւոր էր պարսիկին իւրաքանչիւր քայլում. Նա պիտի բացատրէր կրօնը, ծէսեր կատարէր, նա էր ժողովրդի բժիշկը, թէև մեծ մասամբ դեղերով չէր բժշկութիւն անում, այլ աղօթքներով և կախարդութիւններով։ Պարսիկը ճնշված էր ծէսերի, արարողութիւնների լուծի տակ. մարդու ամբողջ կեանքը հազիւ բաւական լինէր կատարելու այն ամէնը, ինչ սահմանել էր ծիսականութիւնը՝ մարդկանց արդարութեան ճանապարհի վրա պահելու համար։ Միտքը, ոգին կորել էր, մնացել էր մեքենականութիւնը, ծէսը։ Հին նախապաշարմունքները նուիրագործել էր կրօնը, բընութեան երևոյթների, աշխարհի ստեղծագործութեան մասին մնում էին այն հասկացողութիւնները, որոնք մարդկային մտքի երեխայութեան հասակում էին կազմվել։ Նոր միտք, թարմ գաղափար չէր մտնում այդ կախարդական շրջանի մէջ, որի պահապանն էր Սասանեանների ֆանատիկոսութիւնը։

Վերջապէս փաստ է, որ մազդեզականութիւնը, չը նայած իր մեղմ, բարոյական սկզբունքներին, չը կարողացաւ ազդել Պարսկաստանի քաղաքական կազմակերպութեան վրա, որ, ինչպէս տեսանք իր տեղում, ասիական սանձարձակ բռնապետութիւն էր,

Ասորեստանի ժառանգը, մարդկային ստըրկութեան վրա հիմնված։ Զրադաշտը ամեն ինչ արաւ՝ պարսիկին գործով և աշխատանքով առաքինի մարդ դարձնելու համար. բայց նա այդ մարդուն չը տուեց հոգեպէս և մտաւորապէս զարգանալու, անընդհատ առաջադիմելու, հասարակական նոր կարգեր ստեղծելու հնարաւորութիւն։ Զրադաշտականութիւնը ոչինչ չաւելացրեց մարդու քաղաքական և անհատական զարգացման վրա։ Պարսկաստանը ոչնչով չէր տարբերվում ասիական երկիրներից, թէև ունէր ինքն ըստ ինքեան մի գեղեցիկ կրօն։

Եղաւ մի ժամանակ, երբ թւում էր թէ հին, ծերացած մազդեզականութիւնը պիտի նոր, կենսունակ հիւթեր ստանայ։ Մանի անունով մի պարսիկ փորձեց միացնել զրադաշտականութեան գլխաւոր հիմքերը—չարի և բարիի սկզբունքները—քրիստոնէական գաղափարների հետ։ Բայց նա ինքը սպանվեց, իսկ նրա վարդապետութիւնը Պարսկաստանի սահմաններից դուրս վռնդվեց։ Մանին ապրում էր Շապուհ առաջինի ժամանակ, երրորդ դարում։

# Դ.

Կարո՞ղ էին հայերը ընդունել մազդեզականութիւնը։ — Եզնիկ Կողբացու «Եղծ Աղանդոց» իբրև ժամանակի լուսաւորութեան յուշարձան։—Քրիստոնէութեան սկիզբը։—Հին աշխարհը կրօն է որոնում։ —Փիլիսոփայական սիստեմներ։—Քրիստոնէութիւնը յարմարվում է հին գիտութեան։ — Ալէքսանդրիայի դպրոցը։ — Եկեղեցու ընդունածը. աւանդութիւն և հեղինակութիւն։—Քրիստոնէութիւնը իբրև Նոր ազգերի ուսուցիչ։—«Եղծ Աղանդոց»-ի հանգամանքները։ —Քրիստոնեայ գրող և գիտութիւն։—Եզնիկի քննադատական կարողութիւնը։ — Մազդեզականութեան հերքումը։—Գիտնական փորձ։—Եզնիկը միակ երևոյթը չէ հինգերորդ դարում։—Ընդհարումը պարսիկների հետ անխուսափելի էր։

---

Այժմ անցնենք միւս կողմին։

Անկասկածելի պէտք է համարել որ հայերը իւրացրել, ազգայնացրել էին մազդեզականութեան շատ պաշտամունքներ։ Իբրև նոյն արիական ցեղին պատկանող մի ազգ, հայերը, ի հարկէ, պարսիկների հետ շատ ընդհանուր բաներ ունէին լեզուի, կուլտուրական ձգտումների, աշխարհայեցողու-

թիւնների մէջ։ Քրիստոնէութիւնն ընդունելուց յետոյ էլ հայերը պահպանեցին ազգային հին ծէսերից մի քանիսը, հին կրօնական անունները։ Ընդունել Յազկերտի կառավարութեան առաջարկութիւնը կը լինէր հայերի համար մի թռիչք դէպի հարազատ անցեալը, վերադարձ դէպի ծանօթ շրջանը։

Բայց ազգերը առաջադիմում են, մարդկային միտքը բարձրանում է յեղափոխութեան աստիճաններով։ Բոլորովին նմանութիւն չէր մնացել Շապուհ երկրորդի և Յազկերտ երկրորդի ժամանակների մէջ։ Ներսէս Մեծի մահը բաւական էր, որ հայերը ընկնեն հեթանոսութեան գիրկը. իսկ այժմ հայը հեռացել էր այն մտաւոր հասակից, որի մէջ մազդեզականութիւնը կարող էր բաւականացնել։ Մենք ունենք այս բարեշրջման մի գեղեցիկ ապացոյցը։

Հինգերորդ դարի գրական աշխատութիւնների մէջ բոլորովին առանձնակի տեղ է բռնում մի գործ, որի նշանակութիւնը մեզ համար ահագին է։ Դա Սահակ-Մեսրոպեան առաջին աշակերտներից մէկի, Եզնիկ Կողբացու «Եղծ Աղանդոց» աշխատութիւնն է։ Այս վերին աստիճանի հետաքրքրական, իր տեսակի մէջ միակ և աննման գրաւոր յիշատակարանը ամենալաւ առաջնորդն է որ մենք պարզենք այն հարցը թէ ինչ էին սովորում

և ինչ էին սովորեցնում հինգերորդ դարում։ Միայն այն հանգամանքը, որ Եզնիկի գիտական-քննադատական գիրքը գրված է Հայաստանի մէջ, հայերէն կոկ, կանոնաւոր, օրինակելի լեզուով, մի փայլուն ապացոյց է որ հինգերորդ դարում մտաւոր լարված, տենդային եռանդով առաջացող շարժումը բաւական հող էր պատրաստել որ այդ տեսակ գրքերը հասկանալի և գրաւիչ լինեն շատերի համար։ Իսկ Եզնիկի գիրքը ժամանակի բարձր լուսաւորութեան արտայայտութիւնն էր։

Քրիստոնէութիւնը երևան եկաւ մի այնպիսի ժամանակ, երբ արևմտեան լուսաւոր աշխարհում գոյութիւն ունէր կրօնական նշանաւոր շարժում։ Հին գիտութիւնը վաղուց թողել էր զուտ գիտական նպատակը, որ բնութեան և կեանքի օրէնքների մշակումն էր։ Փիլիսոփայական զանազան դըպրոցներ այժմ աշխատում էին կրօն գտնել մարդկութեան համար։ Յունա-հռոմէական հեթանոսութիւնը պառաւել էր, աստուածները կորցրել էին իրանց փայլը, կրթված մարդկանց նուրբ, պահանջկոտ միտքը որոնում էր ուրիշ գաղափարներ, նոր պաշտամունք։ Եւ փիլիսոփայական բազմաթիւ սիստեմները գալիս էին բաւարարութիւն տալու ժամանակի հասունացած պահանջին։

Այդ որոնումների մէջ յայտնագործվեց քրիստոնէութիւնը, մի թարմ վարդապետութիւն, որ արագ կազմակերպվում էր, ցոյց տալով եռանդ, տոկունութիւն։ Նա օգտվեց մտքերի դրութիւնից և սկսեց նուաճել լուսաւորված աշխարհը։ Մի այդպիսի դժուար ու մեծ գործը նա չէր կարող գլուխ բերել, մնալով լոկ կրօնական ուսմունք։ Չորս կողմից նա պաշարված էր զարգացած մտքերով, որոնք քննել, մտածել գիտէին, վերացական հարցեր ունէին իրանց առաջ և նըրանց լուծմանն էին սպասում։ Այդ լուսաւոր միջավայրի արհամարհանքից և հալածանքներից ազատվելու համար, քրիստոնէութիւնը մտեցաւ յունական գիտութեան և սկսեց նրանից փոխ առած սկզբունքների վրա գիտական հիմքեր մշակել իր համար։

Մարդկային մտքի պատմութեան մէջ հանդէս էր գալիս մի նոր երևոյթ—քրիստոնէական գիտութիւնը, աստուածաբանութիւնը։ Դա հելլէնականութիւնը չէր, որ այնքան ճոխացրել էր գիտութիւնը և արուեստները։ Հելլէնականութիւնը, ընդհակառակն, վերացաւ. նա տեղ չունէր այնտեղ, ուր աստուածաբանութիւն էր սկսվում։ Բայց նրա հին փորձերը, նրա հարուստ գանձերը պատկանում էին ամենքին։ Յունաստանից դուրս մի նոր մտաւոր կենտրոն առաջացաւ, որ

և ինչ էին սովորեցնում հինգերորդ դարում։ Միայն այն հանգամանքը, որ Եզնիկի գիտական-քննադատական գիրքը գրված է Հայաստանի մէջ, հայերէն կոկ, կանոնաւոր, օրինակելի լեզուով, մի փայլուն ապացոյց է որ հինգերորդ դարում մտաւոր լարված, տենդային եռանդով առաջացող շարժումը բաւական հող էր պատրաստել որ այդ տեսակ գրքերը հասկանալի և գրաւիչ լինեն շատերի համար։ Իսկ Եզնիկի գիրքը ժամանակի բարձր լուսաւորութեան արտայայտութիւնն էր։

Քրիստոնէութիւնը երևան եկաւ մի այնպիսի ժամանակ, երբ արևմտեան լուսաւոր աշխարհում գոյութիւն ունէր կրօնական նշանաւոր շարժում։ Հին գիտութիւնը վաղուց թողել էր զուտ գիտական նպատակը, որ բնութեան և կեանքի օրէնքների մշակումն էր։ Փիլիսոփայական զանազան դըպրոցներ այժմ աշխատում էին կրօն գտնել մարդկութեան համար։ Յունա-հռոմէական հեթանոսութիւնը պառաւել էր, աստուածները կորցրել էին իրանց փայլը, կրթված մարդկանց նուրբ, պահանջկոտ միտքը որոնում էր ուրիշ գաղափարներ, նոր պաշտամունք։ Եւ փիլիսոփայական բազմաթիւ սիստեմները գալիս էին բաւարարութիւն տալու ժամանակի հասունացած պահանջին։

Այդ որոնումների մէջ յայտնագործվեց քրիստոնէութիւնը, մի թարմ վարդապետութիւն, որ արագ կազմակերպվում էր, ցոյց տալով եռանդ, տոկունութիւն։ Նա օգտվեց մտքերի դրութիւնից և սկսեց նուաճել լուսաւորված աշխարհը։ Մի այդպիսի դժուար ու մեծ գործը նա չէր կարող գլուխ բերել, մնալով լոկ կրօնական ուսմունք։ Չորս կողմից նա պաշարված էր զարգացած մտքերով, որոնք քննել, մտածել գիտէին, վերացական հարցեր ունէին իրանց առաջ և նըրանց լուծմանն էին սպասում։ Այդ լուսաւոր միջավայրի արհամարհանքից և հալածանքներից ազատվելու համար, քրիստոնէութիւնը մօտեցաւ յունական գիտութեան և սկսեց նրանից փոխ առած սկզբունքների վրա գիտական հիմքեր մշակել իր համար։

Մարդկային մտքի պատմութեան մէջ հանդէս էր գալիս մի նոր երևոյթ—քրիստոնէական գիտութիւնը, աստուածաբանութիւնը։ Դա հելլէնականութիւնը չէր, որ այնքան ճոխացրել էր գիտութիւնը և արուեստները։ Հելլէնականութիւնը, ընդհակառակն, վերացաւ. նա տեղ չունէր այնտեղ, ուր աստուածաբանութիւն էր սկսվում։ Բայց նրա հին փորձերը, նրա հարուստ գանձերը պատկանում էին ամենքին։ Յունաստանից դուրս մի նոր մտաւոր կենտրօն առաջացաւ, որ

նոր ազգութեան ներկայացուցիչ դարձաւ: Դա Եգիպտոսի Աղեքսանդրիա քաղաքն էր, որ, ինչպէս առևտրական մի խաչար ու բանուկ միջավայրում, մշտական շփման մէջ էին արևմտեան և արևելեան ազգերը: Աղեքսանդրիան իր մէջ ամփոփել էր հելլէնական գիտութեան և արուեստի անհամար հարստութիւնները: Եւ այնտեղ էլ սկսվեց կրօնների մրցութիւն: Մի կողմից հեթանոսական հայեացքների հաւատարիմ մնացած գիտնականները աշխատում էին վերանորոգել հին կրօնը, միւս կողմից քրիստոնեայ գործիչները ջանքեր էին գործ դնում հաստատուն հող նուաճելու լուսաւորված մարդկութեան մէջ: Աջողութիւնը այն կրօնին պիտի պատկանէր, որ կարող կը լինէր բաւարարութիւն տալ մարդու ոչ միայն զգացմունքին, այլ և խելքին, բանականութեան: Քըրիստոնէութիւնը լաւ էր հասկացել այդ դըրութիւնը և նրա աջողութիւնը ապահովվեց շնորհիւ այն հանգամանքի, որ նա ընդունեց իր մէջ հին աշխարհը, ձուլեց իր մէջ:

Բայց ինչ չափով: Ստեղծելով գիտական սիստեմ, պէտք էր չը մոռանալ, որ նա պիտի համապատասխանէ կրօնի սկզբունքներին: Քրիստոնէութիւնը ամեն ինչ չընդունեց իր մէջ, այլ միայն այն, ինչ հարկաւոր էր, առանց հակասութեան մէջ ընկնելու իւ-

քըն իր դէմ։ Եւ որպէս զի իբրև ընտրող և մերժող՝ նա ունենայ մի հաստատ յենակէտ, պէտք եղաւ ստեղծել անսխալական աղբիւրներ քրիստոնէութեան համար։ Եկեղեցին ունէր իր աւանդութիւնները, իր գրքերը։ Դրանք էլ հրատարակվեցին անվիճելի հեղինակութիւններ։ Հին և Նոր կտակարանները աստուածային ներշնչման, յայտնութեան պտուղներն են. ուրեմն նրանց մէջ էլ պէտք է պարունակված լինի բարձրագոյն ճշմարտութիւնը։ Ինչ որ հակասում է այդ ճշմարտութեան, նա պիտի մերժվի։ Եւ քրիստոնեայ գործիչները այդպէս էլ անում էին, մի կողմից բանակռիւ մղելով հեթանոսութեան դէմ, միւս կողմից քրիստոնէութեան ջատագով գրուածքներ հեղինակելով։

Եւ այսպէս, քրիստոնէութիւնը ընդունեց յունական լուսաւորութեան մի մասը միայն։ Նա տիրապետող հանդիսացաւ արևմտեան աշխարհում, հեթանոսութիւնը տեղի տուեց ու սկսեց հետզհետէ հալվել, ոչնչանալ։ Այնուհետև քրիստոնէութիւնը երկար ժամանակ մնաց գիտութեան միակ ներկայացուցիչը։ Կարելի համարելով պահպանել հին լուսաւորութիւնից միայն այն, ինչ նա միանգամից վերցրել էր, եկեղեցին երկար դարեր մարդկութիւնից թագցրած պահեց այն բոլոր գանձերը, որոնց հետ ինքը հաշտ-

վել չէր կարող։ Դա գրկանք էր մարդկութեան համար։

Բայց և այդպէս, ուրանալ չէ կարելի, որ քրիստոնէութիւնը անհագին ծառայութիւններ մատուցեց արևմտեան աշխարհին։ Նոր, դեռ չը զարգացած ազգեր հանդէս եկան յունա-հռոմէական աշխարհի շուրջը, որոնք պիտի հաղորդակից լինէին այդ հին քաղաքակրթութեան։ Ահա դրանք հին գիտութիւնը կարող էին իւրացնել քրիստոնէութեան միջոցով միայն։ Յունական փիլիսոփայութեան բարդ ու նուրբ սիստեմները չէին կարող ճիշտ մատչելի լինել այդ ազգերին. քրիստոնէութեան վեհ պարզութիւնն էր, որ նուաճեց նրանց միտքը, ուրեմն և հպատակեցրեց գիտութեան։ Քրիստոնէութիւնն էր միայն, որ հին և նոր աշխարհների մէջ կապ դարձաւ. նա էր միայն, որ պահեց իր մէջ եւրօպական լուսաւորութեան սաղմերը, մինչև որ մարդկութիւնը հասաւ մի ժամանակի *), երբ քրիստոնէութեան պահպանած փշրանքները այլ ևս չը բաւականացրին նրան և հին հելլէնական գիտու-

---

*) Այդ ժամանակը յայտնի է Վերածնութեան Դար անունով, երբ հեթանոսական հին գիտութիւնը ամբողջովին լոյս հանվեց մոռացութիւնից և մարդկային միտքը սկսեց զարգանալ անկախ եկեղեցուց։

թիւնը ամբողջովին ունենալու անհրաժեշտութիւնն զգացվեց։

Այդ տեսակ նոր ազգերից մէկն էր և հայ ժողովուրդը։ Իսկ քրիստոնէական այդ առաջին դարերի լուսաւորութեան արդիւնք է մեր Եզնիկը։

«Եղծ Աղանդոց»-ը, ինչպէս հաստատեցին նորագոյն հետազօտութիւնները, մի բոլորովին անկախ-ինքնուրոյն աշխատութիւն չէ։ Գտել են նրա մէջ մի շարք երեսներ, որոնք կամ հետևողութիւններ են կամ նոյն իսկ բառացի թարգմանութիւններ արևմտեան հեղինակներից։ Բայց այս հանգամանքը շատ մեծ կարևորութիւն չունի։ Եզնիկը չէր ստեղծել քրիստոնէական գիտութիւնը, որպէս զի բոլորովին անկախ և ինքնուրոյն հեղինակ լինէր։ Նա սովորել էր Արևմուտքում և իր սովորածը հայացրել էր, իսկ այնպիսի լուրջ գիտական հարցերի մէջ, որ նա է շօշափում, չէր կարելի առանց աղբիւրների գործ տեսնել։

Եզնիկը քրիստոնէութիւնը ջատագովող և հեթանոսութեան դէմ բանակռիւ մղող մի հեղինակ է, որի համար աշխարհիս վրա անսխալ ու անվիճելի են միայն Աստուածաշունչն ու Աւետարանը։ Ինչ չէ համապատասխանում այդ գրքերին, համարվում է հերքելի, անվաւեր։ Քրիստոնեայ հեղինակ-

ներից շատերն են դուրս եկել յունաց հեթանոսական փիլիսոփայութիւնը հերքելու։ Դրանցից մէկն է և Եզնիկը։ Գիտութիւնը գտել էր որ լուսինը սեփական լոյս չունի և արեգակն է, որ լոյս է տալիս նրան։ Եզնիկը չէ ընդունում այդ ճշմարտութիւնը, որովհետև հրէական աւանդութիւնները ասում են թէ Աստուած լուսինը ստեղծեց գիշերները լոյս տալու համար։ Եկեղեցու հեղինակութիւնը նրան կաշկանդում է շատ տեղ։ Այսպէս, նա ասում է որ դևերի գոյութիւնը հերքվում է գիտութեան կողմից և սիրով բերում է այդ հերքումը հաստատող ապացոյցները։ Ընթերցողը սպասում է որ ահա նա կասէ թէ ճիշտ է գիտութեան խօսքը։ Բայց գիտնական քրիստոնեան այդպիսի քայլ անելու ազատութիւնից զրկված է. չէ՞ որ դևերը պարզ յիշվում են Աւետարանի մէջ, նոյն իսկ խօզի կերպարանք էլ են ընդունում։ Եւ նա դժուարութիւնը շտկում է, ասելով որ թէև գիտնականները ապացուցանում են թէ չը կան դևեր, բայց պէտք է հաւատալ որ նրանք կան։ Երազների վերաբերմամբ Եզնիկը սկսում է մի դատողութիւն, որ կարող է ունենալ ճշմարիտ լուսաւորված մարդը։ Հիմնվելով գիտութեան խօսքի վրա, նա սկսում է բացատրել թէ երազը ինչ բնական պատճառների հետևանք

է, թէ ցերեկվայ մտքերն ու խոհերը ինչ առաջնակարգ նշանակութիւն ունեն երազներ առաջացնելու մէջ. բայց յանկարծ նա յիշում է որ հրէական նահապետները երազում էին տեսնում Աստուծու տնօրինութիւնները և հարկադրված է ասել թէ երազները ուղարկվում են մարդուն նախազգուշացնելու, գալիք բաները հասկացնելու համար։

Մաքուր, անխառն հելլէնականութիւնը չէր դա, որ տալիս էր Եզնիկը, այլ հելլէնական գիտութեան բեկորները, որոնք պիտի ծառայէին եկեղեցուն, հաստատէին նրա հեղինակութիւնը։ Սակայն մեր աշխարհի համար, որ նոր էր հաղորդակից դառնում արևմտեան մտքին, այդ բեկորներն էլ անգնահատելի գանձեր էին։ Միշտ այսպէս եկեղեցու հեղինակութիւնը չէր հակասում գիտութեան. շատ են և այն դէպքերը, երբ երկուսը համերաշխութեամբ են գնում և ահա այդտեղ լուսաւորութիւնը պիտի հրաշքներ գործէր սակացի ժողովրդի մտքում։

Մեզ համար առանձին մեծ կարևորութիւն ունեցողը «Եղծ Աղանդոց»-ի այն գլուխըն է, որի մէջ Եզնիկը հերքում է մազդեզականութիւնը։ Թւում է որ հեղինակը այստեղ թէ ամենից շատ ինքնուրոյնութիւն ունի, թէ սեփական դիտողութիւններով ու գննողու-

թիւններով է ղեկավարվում։ Եւ այս պատճառով այդ գործը շատ նշանաւոր է իբրև մի ինքնուրոյն պտուղ, որ լուսաւորված հայը իր կողմից մտցնում էր մարդկային մտաւոր գանձարանի մէջ։ Հերքումը գրվել է, ի հարկէ, այն ժամանակ, երբ Յազկերտը, ուժեղի իրաւունքի վրա հիմնված, ուզում էր հայերի վզին փաթաթել իր կրօնը։ Մի եռուն, յուզմունքներով լի ժամանակ էր դա. վառված էին կրքերը, յարձակվելու, հարուածներ հասցնելու տենչանքը ընդհանուր էր հայ հոգևորականութեան, իբրև կռւող կողմի մէջ։ Դրա նմուշն է Եղիշէն։ Իսկ Եզնիկը ազատ է րոպէի ազդեցութիւնից. նրան հետաքրքրողը լոկ գիտական ճշմարտութիւնն է. նա սառն վերլուծող է, որ հաւատարիմ մնալով իր ընտրած մեթօդին, գիտնականի բարեխղճութեամբ նախ մանրամասն կերպով, առանց յուզվելու և հաւասարակշռութիւնը կորցնելու, բերում է մազդեզականութեան դաւանանքները, և ապա մեծ հմտութեամբ մի առ մի հերքում է նրանց։ Երևում է թէ որքան լայն ու բազմակողմանի էր Սահակի և Մեսրոպի աշակերտների ստացած կրթութիւնը. մեր տաղանդաւոր հեղինակը տեղեկութիւն ունի ոչ միայն քրիստոնէական գրքերից, այլ և պատմութիւնից, բնական գիտութիւններից, մա-

նաւանդ բժշկականութիւնից։ Բայց ամենից շատ նորա խելքը զինված է բանականութեան, առողջ դատողութեան, լօգիկայի հարուստ փորձերով։

Մազդեզականութեան ամենատկար կողմը բարի և չար աստուածութիւնների ծագման, փոխադարձ մրցութիւնների պատմութիւնն էր, որ մի և նոյն ժամանակ և կրօնի հիմքն էր դարձել։ Եզնիկը երկար ու բարակ վերլուծում է այդ բոլորը, և քննադատող խելքի ճոխութիւնը այստեղ միանգամայն զարմանալի է։ Քար քարի վրա չէ մնում պարսից մոգերի կրօնական կերտուածքի մէջ. մանր ու նուրբ քննութիւններով Եզնիկը մերկացնում է մազդեզականութեան անհեթեթութիւնները, երեխայական հաւատալիքները, պատճառաբանութեան տկարութիւնները։ Հին, զառամեալ վարդապետութիւնը նոր ու թարմ խելքի առաջ ցոյց է տալիս մի կոյտ կարկատաններ, որոնք պիտի ծածկէին մտքի անկատարութիւնը, բայց աւելի էին մերկացնում նրան։

Դժուար է այժմ, հազար հինգ հարիւր տարուց յետոյ, երևակայել անգամ թէ ինչ ահագին տպաւորութիւն պիտի գործած լինի Եզնիկը հայ ընթերցողի վրա։ Թէ ինչ էր ձեռք բերում հայութիւնը Սահակ-Մեսրոպեան դպրոցների միջոցով, կարելի է դատել

հէնց նրանով, որ Եզնիկի հերքումների մի մասը այժմ էլ կարելի է տալ ժողովրդին իբրև դեղ նախապաշարմունքների դէմ: Սաստիկ նախապաշարված էր պարսիկ ամբոխը, որովհետև մոգութիւնը նախապաշարմունքների մէջ կաշկանդված մի ժողովրդի մէջ կարող էր տիրող ու հրամայող լինել: Հայ ժողովուրդն էլ բազմաթիւ նախապաշարմունքների էր ենթարկված հեթանոսութեան ժամանակից: Եզնիկը իր «Եղծ»-ով ոչ միայն օտար կրօններ էր հերքում, այլ և տալիս էր իր ժողովրդին այնպիսի բացատրութիւններ, որոնք պիտի ազատէին նրան նախապաշարմունքների ծանրութիւնից:

Այսպէս, նա ծաղրում, ոչնչացնում է ճակատագրի հասկացողութիւնը, ապացուցանում է որ մարդը աշխարհի վրա ունենում է մի յայտնի վիճակ, բայց դա ծնվելուց առաջ չէ սահմանվում նրա համար: Աստղագէտները ամեն տեղ հաւատ են տարածել թէ մարդը այն բնութիւնն է ստանում, ինչ ներկայացնում է նրա ծնված բոպէին աստեղատան մէջ տիրող այս կամ այն համաստեղութիւնը: Եզնիկը այդ էլ հերքում է գեղեցիկ պատճառաբանութիւններով: Նա ծաղրում է այն նախապաշարմունքները, որոնք կապված են յօրանջելու, փռշտալու հետ և բացատրում է այդ երևոյթները այնպէս,

ինչպէս հասկանում էր ժամանակի բժշկական գիտութիւնը։ Միտք ապացուցանելու համար նա մի տեղ նոյն իսկ ֆիզիկական փորձ է անում։

Ահա թէ ուր էր մտաւոր գերազանցութիւնը։

Եւ այս երևոյթը միակը չէ հինգերորդ դարում։ Եղիշէն բերում է այն պատասխանը, որ ուղարկվեց Արտաշատի ժողովից. թէ այստեղ և թէ այն պատասխանների մէջ, որ տալիս էին բռնութիւնների ենթարկված հայ հոգևորականները պարսից ատեաններում, մենք տեսնում ենք նոյն դպրոցը, նոյն ուղղութիւնը։ Հպատակները, որքան էլ թոյլ ու անօգնական լինէին, արհամարհում էին տիրողների սրբազան պաշտամունքները, որովհետև նրանցից բարձր էին մտաւոր զարգացումով և կարողանում էին հասկանալ նրանց հոգեկան աղքատութիւնը։ Բաւական է որ մենք վերցնենք հինգերորդ դարի գրական զարգերից մէկը, օրինակ Եղիշէի պատմագրութիւնը կամ, աւելի ճիշտ ասած, դիւցազներգութիւնը և դնենք նրան պարսկական գրականութեան միակ մեզ յայտնի զարդերը կազմող կրօնական գրքերից մէկի, օրինակ, «Վէնդիդադի» մօտ (որ միւս գրքերի համեմատութեամբ աւելի ուշ ժամանակների գործ է), և համեմատութիւնը ցոյց կը տայ

թէ մտաւոր գերազանցութիւնը ում կողմն էր։

Մի երկիր, որ իր դատը պաշտպանելու համար Եզնիկի պէս մի գիտնական խելք էր առաջ բերում, իսկ իր նահատակութիւնները գեղանկարելու համար՝ Եղիշէի պէս մի բանաստեղծ-փիլիսոփայ, այդպիսի մի երկիր չէր կարող ընկճվել բռնի ոյժի հետ միացած հին, երեխայական մտքի տակ։ Ընդհարումը անխուսափելի էր։

---

## Ե.

*Հարկադրանքի միջոցներ։—Միհրներսէհը գործում է պարսկական կուսակցութեան միջոցով։—Ուրացում, քրիստոնէութիւնը պաշտօնապէս ջնջված։—Սահակ-Մեսրոպեան դպրոցները գրքի մարդիկ չէին միայն պատրաստում։—Գործի մարդիկ. Ղեւոնդ երէց։—Դիմադրութիւն։—Աստուածպետական կառավարութիւն։—Ապստամբական կազմակերպութիւնը։—Որդին հօր դէմ, եղբայրը եղբօր դէմ։—Ժամանակի հոգեբանութիւնը։—Ուրացող նախարարների վերադարձը։—Անհաբեկում։—Ներքին պատերազմը։—Վասակի դերը։—Դա պարսկասէր կուսակցութեան բնորոշ ներկայացուցիչն էր։—Վասակին արդարացնող հանգամանքներ։—Հանգամանքներ, որոնց չէ կարելի ոչ մի կերպ արդարացնել։—Վասակի գործերը և ապստամբական անգթութիւններ։—Ժամանակաւոր թուլութիւն պարսից քաղաքականութեան մէջ։—Յոյսեր Արեւմուտքի օգնութեան վրա։—Իրականութիւնը այդ յոյսերի դէմ։—Միհրներսէհի և Վասակի ջանքերը և ուխտապահների կորուստները։—Վարդան։—Նահատակութեան փափագ։—Պատերազմը անխուսափելի է։—Նրա քաղաքական նշանակութիւնը։—Նրա բարոյական-կուլտուրական նշանակութիւնը։*

---

Այն էլ հրաշքի պէս մի բան էր, որ ասիական բռնակալութիւնը դեռ խօսքի իրաւունք էր յատկացնում իր զոհերին։ Նա

համաձայնվել էր քննել, ապացոյցներ ու հերքումներ լսել և ընդունել այն, ինչ լաւն է։ Բայց միամտութիւն կը լինէր կարծել թէ այդպէս էլ կը լինի, և այդ միամտութիւնը չունէին հայերը։ Նրանք գիտէին թէ ինչ է սպասում իրանց։ Քննութեան, ապացոյցների դէմ այլ ևս պատասխան չեղաւ. հրաշքը սպառված էր և տեղի ունեցաւ սովորական, հին երևոյթը.—պարսից կառավարութիւնը դիմեց բռնութեան։

Գործունէութեան այն ծրագիրը, որին հետևեց Միհրներսէհը, ցոյց էր տալիս որ պարսից արքունիքը ղեկավարվում էր հին քաղաքական փորձով։ Թէև հայոց եկեղեցին ունէր իր առանձին իշխանապետութիւնը և կրօնական հարցերի մէջ հայ նախարարները ոչինչ ձեռնհասութիւն չունէին, բայց Միհրներսէհը միայն նրանց դիմեց, որովհետև գիտէր որ ինչպէս հեշտ եղաւ նախարարների միջոցով Թագաւորական գահը ոչնչացնել, այնպէս էլ հեշտ կարելի է և միւս հիմնարկութիւնը, եկեղեցին, մէջ տեղից վերացնել. Հարկաւոր էր միայն ազդել նախարարների փառասիրութեան վրա պարգևներով և փաղաքշանքով, և այնուհետև պարսկասէր կուսակցութիւնը, որ երբէք չէր պակասել Հայաստանում, ինքը կաջողեցնէր ամեն ինչ։ Նշանաւոր իշխանական տոհմերի ներկայա-

ցուցիչները կանչվեցին Պարսկաստան։ Այդտեղ Յազկերտը դրեց նրանց առաջ—կամ կրօնափոխութիւն կամ մահ։

Նախարարները երկու կարծիքի բաժանվեցին, որովհետև նրանց մէջ կային և Սահակ-Մեսրոպեան սաներ։ Դրանցից անունով յայտնի են մեզ միայն երկուսը—Վարդան Մամիկոնեան և Վահան Ամատունի։ Սրանք, քրիստոնէական կրթութիւն ստացածները, չէին կարող ընդունել կրօնափոխութիւնը։ Բայց, ինչպէս երևում է, անտարբերները մեծամասնութիւն էին կազմում և նրանք անցկացրին այն միտքը թէ պէտք է ընդունել թագաւորի առաջարկութիւնը և դրանով ազատել երկիրը աղէտներից։ Յազկերտը ուղղակի դրել էր հաւատարմութեան հարց. չընդունել պարսից կրօնը պիտի նշանակէր չը կատարել թագաւորի հրամանը, մեղանչել հպատակութեան պարտքի դէմ։ Յայտնի էր թէ ինչ պէտք է լինի այդ դէպքում։ Ամբողջ հայ ազգը չէր կանգնած պարսկական դիւանում, այլ միայն մի քանի անհատներ, որոնք անձնապէս պիտի պատասխանատու լինէին։ Բնական էր որ այդ անհատները հոգու արիութիւն և անվախութիւն ցոյց չը տային այդպիսի նեղ դրութեան մէջ։ Սարսափահար եղած Սասանեան աշխարհակալ գահի առաջ, նրանք պիտի աշ-

խատէին ապրեցնել իրանց, ազատել իրանց օձիքը։

Կրօնափոխութիւնը անհատների այդ խմբի մէջ տեղի ունեցաւ, բայց անհատներն էլ բաւական էին որ Յազկերտը հասած լինէր իր նպատակին։ Հիմնվելով այդ մասնաւոր երևոյթի վրա, նախարարների մի խումբը ընդունելով իբրև ամբողջ ազգ, Յազկերտը պաշտօնապէս ջնջված յայտարարեց քրիստոնէութիւնը Հայաստանում։ Վարդան Մամիկոնեանը ստիպված եղաւ տեղի տալ, որպէս զի բարդութիւններ չը յարուցվեն այնպիսի մի անյարմար տեղ, ինչպիսին էր պարսից արքունիքը։ Տեսնելով որ այլ ևս ոչինչ չէ կարելի փրկել, նա վճռեց լռել առժամանակ, մինչև որ տուն կը հասնէ. այդտեղ կարելի էր հրաժարվել մոգութիւնից և հեռանալ պարսկական Հայաստանից, բնակվել մի այնպիսի տեղ, ուր քրիստոնեայ լինելը յանցանք չէր համարվի *)։

---

*) Եղիշէն և Ղազար Փարպեցին ասում են թէ բոլոր նախարարները առ երես ընդունեցին մազդեզականութիւնը։ Բայց սա, ինչպէս երևում է, յետոյ հնարված մի արդարացում է։ Եթէ ուրացութիւնը երեսանց լինէր, Հայաստանը այնպիսի խիստ ապստամբութիւն չէր հանի նախարարների դէմ, թոյլ տալով նոյն իսկ որ որդին կարող է հօրը սպանել և հայրը որդուն։ Այն ընդհանուր սուգը, որ բարձրացաւ հայոց երկրում, մի պարզ ապացոյց է որ ուրա-

Ասխականութեան այս համարձակ արշաւանքի դէմ հայոց աշխարհը դուրս հանեց մի խիստ գիմադրութիւն: Սահակ-Մեսրոպեան դպրոցները այստեղ էլ ցոյց տուին իրանց ոյժը. Նրանք միայն գրքի մարդիկ չէին պատրաստել, այլ և գործի մարդիկ: Գրական գեղեցիկ վաստակներով անուն հանած աշակերտների շարքում բարձր հռչակ են ստանում և այնպիսինները, որոնց տաղանդը գրքեր գրելու մէջ չէր երևում, այլ կենդանի խօսքի, ժողովուրդ առաջնորդելու մէջ:

Այդ տեսակ գործիչների գլուխն է Ղևոնդ երէցը, Մեսրոպի առաջին աշակերտներից մէկը: Վանանդի մի գիւղից դուրս եկած այդ հոգևորականը, չը նայած իր համեստ պաշտօնին *), այնպիսի համարձակ,

---

ցութիւնը ճիշտ որ տեղի էր ունեցել, առանց յետին մտքերի: Ուրացող նախարարները, յամենայն դէպս, կարող էին վաղօրօք իմաց տալ որ երեսանց է իրանց արածը և չը պէտք է յուզվել ու յուսահատվել: Բայց դրա հակառակ, նոյն իսկ Հայաստան հանելուց յետոյ էլ ոչ ոք չը գիտէր որ հայ իշխանները կեղծել են. Վարդանի ուղևորութիւնը դէպի Յունաստան նոյնն է ապացուցանում: Պարզապէս երևում է պարսկասէր կուսակցութեան յաղթանակը: Ուրացողներից մի քանիսը յետոյ էլի միացան Վասակի հետ և պարսից կողմն անցան:

*) Հ. Ալիշանը հաստատում է որ «երէց» անունը գիւղական քահանաներին էր տրվում:

յանդուգն գործունէութիւն սկսեց, որ իրապէս դարձաւ նոր շարժման հոգին, երկրի ճակատագիրը տնօրինող։ Ղևոնդը մէկն էր առաջին հայ ուսանողներից, որոնք արտասահմանում էին վերջացրել իրանց կրթութիւնը։ Վերադառնալով հայրենիք, նա օգնում էր իր ուսուցիչներին թարգմանութիւնների ժամանակ։ Յետոյ նա գիւղական քահանայի պաշտօնով էր բաւականանում, երբ Յազկերտի քաղաքականութիւնը նրան ասպարէզ նետեց՝ քրիստոնէութիւնը պաշտպանելու համար։

Այդ ժամանակ նա արդէն ծեր ու հիւանդոտ մի մարդ էր։ Բայց ներքին կրակը չէին հանգցրել ոչ ծերութիւնը, ոչ մարմնական տկարութիւնը։ Ամբողջովին եռանդ կտրած, նա սկսում է մի վերին աստիճանի անվախ պրօպագանդա։ Գաղափարի համար մեռնելը մի ծեր և հիւանդ քրիստոնեայի համար առանձին դժուարութիւն չէր ներկայացնում. բնական էր որ նա ոչինչ ուրախութիւն, ոչինչ գրաւչութիւն չը գտնէր կեանքի մէջ։ Եւ մենք տեսնում ենք որ նա իր ճառերի մէջ հիւանդութիւնից տառապող մարդու արհամարհանքով է վերաբերվում աշխարհին, ամեն տեղ չարչարանք ու տանջանքներ է տեսնում և համոզում է որ չարժէ այդպիսի մի դժբախտ կեանքի համար

մոռանալ գաղափարը։ Այդ տրամադրութիւնը, ինքնագոհութեան այդ պատրաստականութիւնը նա կարողանում է հաղորդել ամբողջ շարժման, ամբողջ այն կազմութեան, որ նրա պէս թոյլ ու հիւանդոտ չէր մարմնով, չէր զգված աշխարհից։ Ահա ինչն է զարմանալի.—հոգու այն անսահման մեծ կարողութիւնը, որով գիւղական երէցը նուաճեց հայ ժողովրդի մի մեծ մասը։

Այդքան զարմանալի ժամանակում բնական էր որ երևոյթները, կեանքի ընթացքն էլ զարմանալի տեսարաններ ներկայացնէին։ Հայ հոգևորականները, անշուշտ լաւ իմանալով որ նախարարների վրա յոյս դնել չէ կարելի, նախազգուշութեան ընդարձակ միջոցներ են ձեռք առնում։ Եղիշէն շարունակ յիշում է եպիսկոպոսների ժողովը, որ կարգադրում է ամեն բան։ Երկրի մէջ այլ ևս քաղաքական իշխանութիւն չը կայ, կառավարութիւնը իրապէս անցել է հոգևորականութեան ձեռքը։ Նա զօրքի հրամանատար է, պատրաստ ունի քահանաների, վանականների մի մեծ բազմութիւն, որ գործում էր ժողովրդի մէջ։

Մենք ենթադրում ենք որ Արտաշատի ժողովը, իր պատասխանը ուղարկելուց յետոյ, չը լուծվեց, այլ հարկաւոր համարեց սպասել դէպքերի պարզվելուն, գուցէ մի

այլ տեղ ընտրելով բնակութեան համար։ Պարսկաստան գնացած նախարարները տարել էին իրանց հետ մի զօրագունդ, որի մէջ գտնվում էին և քահանաներ։ Վերջիններս մարդ ուղարկեցին Հայաստան՝ իմաց տալու նախարարների ուրացութիւնը։ Գուժկանը, տեղ հասնելով, ուղղակի դիմեց եպիսկոպոսների ժողովին։ Օձիք պատռելով, կուրծք ծեծելով, նա պատմեց որ մեծ բազմութիւն է գալիս Պարսկաստանից։ Միայն մոգերի թիւը հասնում է 700-ի. նրանց օգնական մի պարսիկ զօրագունդ էլ կայ։ Միհրներսէհի հրահանգները այսպէս էին. հաստատել հայոց հողի վրա մազդեզական պաշտամունքը, մոգական դպրոցներ բաց անել, ուր պիտի սովորէին նոյն իսկ նախարարների կանայքն ու որդիները։ Ուրեմն, քրիստոնէութեան հետ մահվան էր դատապարտվում և Սահակ-Մեսրոպեան դարի ամբողջ գործունէութիւնը։ Սա բնական էր. մոգութիւնը ամենից առաջ պիտի ջնջէր հայոց գրականութիւնը, որովհետև առանց նրան չէր կարելի ջնջել քրիստոնէութիւնը։

Այս հարուածը աւելի սաստիկ պիտի յուզէր Սահակի և Մեսրոպի աշակերտներին։ Նրանք իրանց տեսնում են խորխորատի ծայրին կանգնած և ինքնամոռացութեան են հասնում իրանց եռանդի մէջ։ Իսկոյն յուզում

են ժողովուրդը, ոտքի են կանգնեցնում նը-րան։ Ծանր է դիմադրողների դրութիւնը. պարսիկները մենակ չեն գալիս, նրանց հետ են և բազմաթիւ հայեր, որոնք հակառակ կողմ պիտի կազմեն ընդհարման դաշտում և պիտի թուլացնեն հայ կռւողներին, քանի որ կապված են սրանց հետ բարեկամութեան, ազդեցութեան, իրաւունքի կապերով։ Ճգնա-ժամ է, և նա պահանջում է արտասովոր կարգեր, ծայրայեղ խստութիւններ։ Ընդուն-վում է այսպիսի սկզբունք. «Հարազատ եղ-բօր ձեռքը պիտի բարձրանայ իր մերձաւորի վրա, եթէ սա անցել է Աստուծու պատուի-րանից. հայրը չը պիտի խնայէ որդուն, և որդին չը պիտի քաշվէ հօրից։ Կինը կռւում է իր ամուսնու դէմ և ծառան դիմադրում է իր տիրոջը։ Աստուածային օրէնքը միայն թող թագաւորէ ամենքի վրա, և նոյն օրէնքից յանցաւորները ստանան իրանց պատիժը»։

Հաստատվում էր աստուածպետութիւն, կրօնական դիկտատուրա։ Շատ յաճախ չէ պատահում որ գաղափարական կռիւը այս-պիսի զրահներ հագնէ։ Դա յուսահատական պայքարի ծայրն էր, կռիւ եղունգներով, ա-տամներով։ Ազգերը բարձրագոյն ոգևորու-թեան, ինքնամոռացութեան մէջ են այս դրութեան հասնում, այսպէս զոհում վերա-ցական գաղափարին ամեն ինչ—թէ սէր,

թէ դուք, թէ բարեկամական զգացմունք։ Քրիստոնէութիւնը այս անգամ չէր ուզում անմռունչ նահատակի խոնարհութեամբ ընկնել պարսիկների ոտների տակ։ Այս անգամ նա պատրաստված էր ահեղ կռւի և ուզում էր ընկնել իբրև մարտնչող, ուզում էր ցոյց տալ թշնամուն որ կեանքից բարձր խորհուրդ կայ, որի համար մեռնելը աւելի լաւ է, քան ապրելը։

Եղիշէն շատ գեղեցիկ կերպով բացատրել է այն հոգեբանութիւնը, որ այսպիսի զարհուրեցնող դիմադրութեան է մղում մարդկանց։ Նա ասում է.

«Որոնց ոգիները թուլացած են երկնաւոր առաքինութիւնից, նրանց մարմնի բնութիւնը մեծ երկիւղի տակ է ընկնում. ամեն քամուց շարժվում է, ամեն խօսքից վրդովվում է և ամեն մի առարկայից դողում է։ Այդպիսի մարդու կեանքը երազի նման է գնում և մահվան ժամանակ անդառնալի կորստի է մատնվում։ Ինչպէս որ հներից մէկն էլ ասել է թէ չիմացված մահը՝ մահ է, իմացված մահը՝ անմահութիւն։ Ով չէ ճանաչում մահը, նա վախում է մահից, իսկ ով ճանաչում է, չէ վախում։ Եւ այս բոլոր չարիքները մտնում են մարդու միտքը անուսումնութիւնից։ Կոյրը զրկվում է արեգակի ճառագայթներից, իսկ տգէտը զրկված

է կատարեալ կեանքից։ Լաւ է կոյր լինել աչքով, քան մտքով։ Ինչպէս հոգին մեծ է մարմնից, այնպէս էլ մտքի տեսողութիւնը մեծ է մարմնի տեսողութիւնից»։

Ամբողջ հայութիւնը չէր մտել ապըստամբական կազմակերպութեան մէջ։ Տգիտութիւնը դեռ շատ տեղեր ունէր իր իշխանութեան տակ և այդ տեղերում, ի հարկէ, անգաղափարականութիւնն էր տիրողը, կեանքի անասնական հասկացողութիւնն էր մնում, շրջապատուած վախերով և թուլութեամբ։ Նոյն անգաղափարականութիւնը, նոյն մահվան վախը առաջ էր բերել այն իրողութիւնը, որ այժմ մի խումբ ուրացած նախարարներ, հարիւրաւոր մոգերի հետ, գալիս էին իրանց հայրենիքում արմատախիլ անելու այն ամենը, ինչ ձեռք էր բերվել այնքան աշխատանքներով և զոհերով։ Եւ ահա տգիտութեան, վախի դէմ զինվում է գաղափարը իր համարձակութեան ամբողջ թափով, իր բոլոր ուժերով։ Կեանքի հզօր, նուիրական կապերը չը կանգնեցրին նրան։ Երբ ամեն ինչ միաբանվեց նրան տապալելու համար, նա ոտնակոխ արաւ կեանքի բոլոր կապերը։ Այնուհետև նա կարող էր լինել կամ յաղթութիւն կամ մարտիրոսութիւն, որ նոյնպէս յաղթութիւն է։

Ուրացող նախարարները, հասնելով

Հայաստան, տեսան երկրի այդ զարմանալի կերպարանափոխութիւնը։ Մեր երկու պատմագիրները մեծ վշտով են նկարագրում թէ ինչ յուսահատ սուգ էր տիրել ամեն տեղ։ Հրապարակական ողբեր էին կատարվում, եկեղեցու պաշտօնեաները լացով ու աղաչանքներով դիմում էին նախարարներին, իսկ Փարպեցին աւելացնում է որ նախարարների երեխաները փախչում էին իրանց հայրերի գրկից։ Ամեն ինչ դէմ էր ուրացողներին։ Հայ կինը նոյնպէս հրապարակ էր եկել իր արտասունքներով, իր բողոքներով։ Մտաւոր շարժումը հայ կնոջն էլ էր հասել և հասարակական նոր երևոյթների մէջ գուցէ ամենից սրտառուչն ու հրաշալին կին-հերոսուհիներն էին, որոնց անմահացրել է Եղիշէն իր գեղեցիկ նկարագրութիւններով։

Խաղաղասիրական միջոցները անօգուտ անցան։ Յազկերտի ահը նախարարներին աւելի էր մատչելի, քան հոգևոր շահերի հակացողութիւնը։ Մազդեզականութիւնը սկսեց իր գործը, ատրուշաններ շինելով։ Եւ այդ ժամանակ Վարդանը, հայոց զօրքերի հրամանատարը և քրիստոնէական կուսակցութեան ամենանշանաւոր ներկայացուցիչը, հաւաքում է իր ընտանիքը և ուղևորվում է դէպի յունաց բաժինը, որպէս զի ապրէ իբրև քրիստոնեայ։

Այլ ևս սպասելու բան չէր մնում։ Պայթում է ապստամբութիւնը։ Առաջին կայծը դնում է Ղևոնդ երէցը։ Ինքնագլուխ, առանց մեծաւորների թոյլտուութեան սպասելու, նա յարձակվում է, ջարդում ու փախցնում այն մոգերին, որոնք սկսել էին մի հայ եկեղեցի քանդել։ Կայծը անմիջապէս հրդեհ է դառնում։ Ապստամբական կազմակերպութիւնը զուր չէր նշանաբան ընտրել «եղբայրը եղբօր, որդին հօր դէմ». գործը սկսվում է նախ և առաջ երկրի ներսում։ Կարգադրողը շարունակ եպիսկոպոսների ժողովն է. նա է, որ բաժանում է բանակը երեք մասի, նա է, որ ցոյց է տալիս թէ իւրաքանչիւր մաս որ տեղերի վրա պիտի յարձակվի և այդպիսով, յենված ոյժի և բռնութեան վրա, չէզոքացնում, անվնաս է դարձնում անմիաբան տարրերը։ Հարկաւոր է կարճ ժամանակ գործ դնել, բայց շատ քայլեր անել։ Կալանաւորվում են այն նախարարները, որոնք չէին ուզում միանալ քրիստոնէական կուսակցութեան հետ. դրանց թւումն էր և Վասակը, որ հայոց մարզպանն էր, քաղաքական իշխանութեան բարձր ներկայացուցիչը երկրում։ Բռնութիւնը ահարբեկում է տարածում։ Եղիշէն ու Ղազարը հիացմունքով պատմում են թէ ինչպէս նախարարներից մէկը, որ չէր ուզում միանալ ապստամբութեան,

քարկոծվեց եկեղեցականների հրամանով և ինչպէս այդ սպանութիւնը սարսափ տարածեց ամենքի վրա։

Ապստամբութեան գործը այնքան շատ ապացոյցներ ունէր որ կաջողվի։ Ուստի մընում էր որ պարսկական կուսակցութիւնը առժամանակ համակրանք և միաբանութիւն կեղծէ։ Ժողովը պատգամաւորութիւն է ուղարկում Վարդանի եաևից, խնդրելով նրան վերադառնալ։ Եւ Վարդանին ուղղած նամակը ստորագրում է և Վասակը։ Վարդանը վերադառնում է։ Ապստամբութիւնը նրա անձի մէջ մի նոր մեծ ոյժ է գտնում։ Ներքին պատերազմը կատաղի չափերի է հասնում։ Հայոց զօրքերը պատերազմական գործողութիւններ են սկսում երկրի այն տեղերի դէմ, ուր պարսիկներ կամ պարսկական կուսակցութիւն կային։ Հրամայված էր ոչինչ չը խնայել։ Տեղի ունեցան անգութ կոտորածներ, ատրուշանները քանդվեցին, նրանց զարդերը կողոպտվեցին և յանձնվեցին եկեղեցիներին։ Երեխաներն անգամ, ինչպէս վկայում է Եղիշէն, զէնք էին վերցնում։

Ամեն ինչ ցոյց էր տալիս որ զինված եկեղեցին, սկսելով ծայրայեղութիւնից, այդպէս անխնայ կերպով պիտի առաջ տանէր ահաբեկումը, անտես անելով որ և է զիջում, որ և է խաղաղասէր միջոց։ Եւ ահա երկրի

մէջ առաջ է գալիս և հակադիր շարժում, որ շատ բնական է իւրաքանչիւր չափազանցութեան, միակողմանիութեան մէջ։ Այդ հակադիր ոյժի ներկայացուցիչն է դառնում հայոց մարզպանը, Վասակ Սիւնին։

Տարաբախտաբար, հինգերորդ դարի պատմութեան երկու հեղինակ ունենք, երկուսն էլ Սահակ-Մեսրոպեան դպրոցներին պատկանող, երկուսն էլ կուսակցական ոգով տոգորված։ Նրանք, ի հարկէ, մեծ ատելութեամբ պիտի վերաբերվէին դիմադրողներին և սև գոյներ չեն խնայել Սիւնեաց իշխանի անունն ու յիշատակը արատաւորելու համար։ Տասնեակ դարեր հայ ազգը, հաւատալով Եղիշէի և Ղազարի վկայութիւններին, անիծում էր Վասակին, համարելով նրան մի այնպիսի ստոր դաւաճան, որի նըմանը չէ եղել դաւաճանութիւններով ու վատութիւններով լի մեր պատմութեան մէջ։ Բայց վերջին ժամանակներս պատմական քննադատութիւնը աշխատում է ոչ միայն արդարացնել Վասակին, այլ և ներկայացնել նրան մի հմուտ քաղաքագէտ և իր աշխարհի բարիքը ամենից լաւ ըմբռնած մարդ *)։

---

*) Այդ կողմից շատ են մանաւանդ հանդուցեալ Գարագաշեանի ջանքերը. նա իր «Քննական Պատմութեան» չորրորդ հատորի մեծ մասը նուիրել է Վասակին և ուղղակի հռչակում է նրան թէ հայ-

Դատելով այնպէս, ինչպէս ցոյց են տալիս դէպքերն ու գրաւոր աղբիւրները, Վասակը պարզապէս պարսկական կուսակցութեան բնորոշ ներկայացուցիչն էր, որ անցեալում ունէր իր նման շատերին։ Դա մի պարսկական պաշտօնեայ էր, մանկութիւնից մեծացած պարսիկ շրջաններում։ Այդ հանգամանքը ինքն ըստ ինքեան բաւական էր, որ նա քրիստոնէութեան վերաբերմամբ լինէր մի անտարբեր մարդ։ Սիւնեաց անմատչելի լեռնաստանում, ինչպէս տեսանք, քրիստոնէութիւնը մեծ դժուարութիւններով էր արմատ բռնում. Մեսրոպին հարկաւոր էր տեղական իշխանների աջակցութիւնը՝ նոր կրօնի պաշտամունքը լեռնցիների մէջ պարտաւորական դարձնելու համար։ Այդ իշխաններից մէկն էր և Վասակը, որ Մեսրոպի եռանդուն աշխատակիցը հանդիսացաւ դպրոցներ բաց անելու գործի մէջ, այնպէս որ Կորիւնը խօսում է նրա մասին մեծ գովասանքով, անուանելով նրան քաջ, «խորհրդական, հանճարեղ, յառաջիմաց»։ Սակայն այս հանգամանքը անպատճառ չէ ասում թէ Վասակը քրիստոնէութեան ջերմ կուսակիցներից էր։ Մեսրոպի պէս մի մարդու ազդեցութեան նա հեշտ կարող էր ենթ-

րենասէր, թէ խոհեմ ու հեռատես, նոյն իսկ ամբողջ գլխով բարձր Վարդանից և միւսներից։

արկվել, լինել բարեկամ, սիրալիր մի իշխան։ Բայց քրիստոնէութեան այդ հովանաւորի և կիսահեթանոս սիւնեցու մէջ ահագին տարածութիւններ չը կային։ Տեղը եկած ժամանակ Վասակը հեշտութեամբ թողեց քրիստոնէութիւնը և անձնատուր եղաւ հին հայկական հեթանոսութեան. Նրա ապարանքում սկսեցին հնչել հեթանոսական երգերը, կատարվում էին խնջոյքներ պարերով և երաժշտութեամբ։

Այս հանգամանքների հետ չը պէտք է մոռանալ և այն պայմանները, որոնց մէջ անցաւ Վասակի կեանքը։

Դեռ պատանի հասակում նա պատանդ էր Պարսկաստանում։ Անիրաւ զրկանքի զոհ էր դարձել նա. Սիւնիքը, նրա հայրական ժառանգութիւնը, խլել էր նրա ազգականներից մէկը. և Վասակը ստիպված էր համբերութեամբ զինվել, չը մոռանալով, սակայն, լեռնցու հպարտութիւնը։ Երբ նրան յայտնեցին թէ կարելի է պարսից թագաւորին խնդրել հայրական ժառանգութեան մասին, նա մերժեց խնդրելու միտքը, ասելով որ պարսից թագաւորը չը պիտի իրան տայ Սիւնիքը, քանի որ դա իր ժառանգական սեփականութիւնն է։ Այդ զրկանքները երկար տևեցին և անշուշտ ազդեցութիւն արին Վասակի բնաւորութեան վրա։ Բայց նա

իր խելքով և ընդունակութիւններով այնքան գրաւեց պարսից արքունիքի ուշադրութիւնը, որ ստացաւ Վրաստանի մարզպանի խոշոր պաշտօնը։

Ճարպիկ ու նուրբ քաղաքագէտ էր Վասակը,—այս յատկութիւնը չեն ուրանում նոյն իսկ նրա թշնամիները։ Անբնական բան չէ որ այսպիսի հպարտ և ընդունակ մարդու մէջ, այն բարձր պաշտօնին հասնելուց յետոյ, փառասիրական տենչեր էլ հաստատվէին։ Նա ծրագրեց մի դաշնակցութիւն հոների հետ՝ պարսից լուծը թօթափելու և անկախ թագաւորութիւն հաստատելու համար։ Դաշնակցութեան մէջ մտաւ և Բաղաց թագաւորը, որ սակայն մատնվեց պարսից կառավարութեան ձեռքը և սպանվեց։ Այդ մատնութեան պատճառով էլ ծրագիրը աջողութիւն չունեցաւ, բայց Վասակը կարողացաւ խնամքով թագցնել ծայրերը և ոչ թէ որ և է պատիժ կրեց իր մտածած դաւաճանութեան համար, այլ և այնքան բարեմիտ երևաց պարսիկների աչքում, որ ստացաւ մարզպանի պաշտօն Հայաստանում։

Այս պաշտօնի մէջ Սիւնեաց իշխանը, ի հարկէ, աւելի հաւանական պիտի համարէր որ իր գլուխը կարժանանայ թագի։ Ոչինչ չէր պակասում նրան, բացի այդ բանից. ո՛չ հարստութիւն, ո՛չ պատիւ։ Իր վա-

դեմի տենչանքը նա այլ ևս չէր կապում Պարսկաստանի դէմ ապստամբութիւն յարուցանելու մտքի հետ։ Կար աւելի հեշտ միջոց —պարսկասիրութիւնը։ Նրա կրթութիւնն ստացած մի ուրիշ մարդ էլ չէր զոհի իր նպատակը քրիստոնէութեան շահերին. կարելի էր լինել հեթանոս հայ, պարսիկների ձեռքի տակ, թագ ստանալ, փառք վայելել և խաղաղութիւն հաստատել երկրի մէջ։ Մտածութեան այս եղանակը խորթ չը պիտի լինէր այն ժամանակվայ անտարբերների համար։ Սասանեան քաղաքականութիւնը այնքան ամուր ու ահաւոր էր, որ շատ շատերի համար նա պիտի լինէր մի անխորտակելի պատնէշ, որի առջև կարելի է միայն գլուխ իջեցնել։ Եւ երբ Յազկերտը յայտնեց հայ նախարարներին թէ ոչինչ է նրանց հաւատարմութիւնը, ոչինչ են նրանց տուած հարկերը և մատուցած ծառայութիւնները, թէ իր սէրն ու վստահութիւնը նրանք կը գրաւեն միայն կրօնափոխութեամբ, Վասակը, ի հարկէ, մի առանձին մեծ կորուստ չը համարեց քրիստոնէութիւնից հրաժարվելը։ Չը մոռանանք որ Միհրներսէհը Պարսկաստանի կառավարիչն էր, որ խաղաղ նուաճումներ անելու մէջ նա մեծ վարպետ էր. անշուշտ Վասակին և միւս նախարարներին գրաւելու համար նա, բացի պարգևներից,

խոստումների, բարեհաճ տրամադրութեան ուրիշ նշաններ էլ ցոյց տուեց։

Վերադառնալով Հայաստան, Վասակը պիտի աւելի ևս հակվէր դէպի պարսկական-նութիւնը։ Նա տեսնում է այդտեղ որ կառավարութիւնը անցել է հոգևորականներին, ինքը, իբրև մարզպան, կատարելապէս արհամարհված է. բանը համնում է նոյն իսկ այն տեղին, որ նրան էլ ձերբակալում են։ Այսպիսով նախ և առաջ դրված էր նրա անձնական պատուի հարցը։ Յետոյ աւելացաւ և այն, որ Սիւնեաց հպարտ իշխանը, իբրև սառն դատողութեան տէր, իբրև չը յաջողած տակտիկայի մէկը, հասկացաւ որ հոգևորականութեան բռնած ընթացքին հետևելով ոչինչ չէ կարելի անել։ Հայկական ապստամբութիւնը չէր կարող յաղթել պարսիկներին և պայմաններ թելադրել նրանց։ Նա շատ լաւ գիտէր թէ ում կողմն էր ոյժը, և եթէ այդպէս համարձակ ասպարէզ էր նետվում, այդ այն մտքով էր, որ եթէ յաղթել չէ կարելի, նահանջել միշտ կարելի է։ Իսկ Վասակի գործնական խելքը չէր կարող հաշտվել այդ գաղափարի հետ։

Բացի այս բոլորից, կար և մի շատ կարևոր հանգամանք։ Յազկերտը բոլորովին չէր հաւատացել նախարարների ուրացութեան, և նրանց խոստումը պահպանվելու հա-

մար իր մօտ պատանդ էր թողել Վասակի երկու որդիներին։ Նախարարներից ոչ մէկը այդպիսի փորձանքի չէր ենթարկված, ոչ ոք նրանցից հարկադրված չէր միշտ աչքի առաջ ունենալ որ իր գործողութեան եղանակից է կախված իր որդիների կեանքը պարսից արքունիքում։ Անձնական հաշիւները ամեն տեղ են վճիռներ և աղէտներ առաջացնում. նրանք պակաս չէին և հինգերորդ դարի շարժման մէջ։ Ղազար Փարպեցին պատմում է մի շատ բնորոշ դէպք, որ ահագին նշանակութիւն ունի Վասակի վարմունքը հասկանալու համար։ Ուխտապահ նախարարներից մէկը, մեր ծանօթ Վահան Ամատունին, հին թշնամութիւն ունէր Վասակի հետ և թէ անձամբ, թէ ուրիշների միջոցով շարունակ գրգռում էր Վարդանին որ ապստամբութիւնը շուտ հռչակվի։ Օշականի տէրը հաւատացնում էր թէ ինքը գաղափարի համար, հոգու փրկութեան համար է այդպէս ուզում։ Բայց պատմիչը մերկացնում է նրա իսկական նպատակը։ Դրանք բառեր էին միայն, Ամատունին Վասակին էր ուզում վնասել։ Նա մտածում էր այսպէս. Վասակը կամ կը հեռանայ հայոց միաբանութիւնից և իբրև թշնամի՝ կը սպանվի ուխտապահ նախարարների ձեռքով, կամ թէ կը միանայ ապստամբութեան և այդ դէպքում նրա որդիները

Պարսկաստանում կը սպանվեն կամ բանտի՝ ու աքսորի կը մատնվեն։

Ահա որքան փափուկ ու վտանգաւոր էր հայոց մարզպանի դրութիւնը։ Խոստովանենք, որ ոչ ոքից այնքան մեծ զոհ չէր պահանջվում, ինչպէս Վասակից։ Մէկը պէտք է չափազանց գրաւված լինէր գաղափարով, անձնազոհութեան գերմարդկային ընդունակութեամբ պիտի օժտված լինէր, որպէս զի կարողանար արհամարհել բոլոր իրողութիւնները, բոլոր վտանգները։ Վասակը այդպիսի մարդ չէր։ «Երկնաւոր առաքինութիւնից թուլացած մի հոգի» էր դա, որ աւելի լաւ հասկանում էր երկրային գործերը։ Եւ եթէ նա տեսնում էր որ Հայաստանը, որքան էլ ոգևորված գաղափարով, պարսից ոյժի զոհը պիտի դառնայ իբրև մի թոյլ մարմին, այդ միայն պատիւ կարող էր բերել նրա լուրջ ու նուրբ դատողութեան։ Յունաստանի սահմաններից մինչև Հնդկաստանի սահմանները տարածված Պարսկաստանը չէր, որ ընկճվէր մի փոքրիկ ժողովրդի ձեռքին։ Եւ այս բոլորը բաւական է, որ իրաւունք տար Վասակին չը միանալու եկեղեցական կուսակցութեան։ Մէկից աւելի շատ պատճառներ ունէր նա հակառակ դիրք գրաւելու համար։

Բայց չէ կարելի ասել թէ այդ մարդը մինչև վերջը մնաց զգոյշ, իր երկրի, իր հա-

քաղատ ազգի անկեղծ բարեկամ։ Մի ծայրայեղութեան առաջն առնելու համար նա ընկաւ միւս ծայրայեղութեան մէջ և այնպիսի աղէտների պատճառ դարձաւ, որոնք չեն մոռացվի պատմութեան մէջ։ Քաղաքական համոզմունքով պարսկասէր լինելը դեռ մեղք չէր. մեղք չէր լինի, եթէ Վասակը նոյն իսկ սրտանց հակառակորդ լինէր քրիստոնէութեան։ Ազնիւ, շիտակ հակառակորդը ամեն դէպքում իրաւունք ունի պահանջելու, որ դէպի իրան վերաբերվեն յարգանքով։ Սակայն Վասակը չը կարողացաւ այդպիսի հակառակորդ հանդիսանալ։ Նա ունէր քաղաքագէտի հոտառութիւն, բայց չունէր առաքինութիւն։ Պարսկասիրութիւնը անզուսպ պարսկամոլութիւն դարձաւ նրա մէջ. հակառակորդների ոչնչացումը տօնելու համար մոռացաւ ամենից առաջ և ամենից շատ մի հայի և ազնիւ մարդու պարտաւորութիւնները։

Սկզբում նա կեղծեց հաւատարմութիւն և գաղափարակցութիւն, որովհետև պէտք էր ժամանակ վաստակել, մինչև որ յանկարծակիի եկած Պարսկաստանը կը կարողանար ցոյց տալ իրան։ Եւ երբ պարսկական բանակները շարժումներ սկսեցին, երբ նրանցից մէկը մտաւ Աղուանից երկիրը, ուր նոյնպէս մոգեր էին գնացել քրիստոնէութիւնը ջնջելու և նոյնպէս դիմադրութեան էին հան-

դիպել, իսկ միւսը, Միհրներսեհի առաջնորդութեամբ, երևաց Հայաստանի սահմանագլխի վրա,—Վասակը այլ ևս աւելորդ համարեց դիմակը և սկսեց այնպիսի գործեր, որոնց համար արդէն չէ կարելի ոչ մի արդարացում գտնել, որքան էլ պարզենք նրա նպատակն ու ձգտումները ամենանպաստաւոր կերպով։

Ամենից առաջ յիշենք նրա յարուցած ներքին, ընտանեկան պատերազմը մի այնպիսի ժամանակ, երբ երկրին սպառնում էր մի մեծ արշաւանք։ Ապստամբութիւնը տիրացել էր արքունական տեղերին, այսինքն Արարատեան երկրին։ Ահաւոր պայքարի մէջ անկասկած մեծ նշանակութիւն ունէր թէ ում է պատկանում երկրի սիրտը։ Վասակը, զգալով այդ կարևորութիւնը, օգուտ քաղեց հայոց զօրքերի բացակայութիւնից և զէնքի ոյժով յետ խլեց այդ տեղերը։ Հարուածի դէմ իսկոյն դուրս հանվեց հարուած։ Ապստամբութեան տագնապը այնքան մեծ էր, որ նա ստիպված եղաւ շտապով յետ դարձնել այն բանակը, որ Վարդանի առաջնորդութեամբ ուղարկված էր Աղուանից երկիրը՝ պարսից զօրքի դէմ կռուելու համար։ Վարդանը վերադարձաւ և սարսափելի չափերով գործադրեց «ակն ընդ ական» սկզբունքը։ Արարատեան երկիրը նորից խլելուց յետոյ,

նա արշաւեց Վասակի վրա, որ ամրացել էր Սիւնեաց երկրում։ Եւ ի՜նչ տեսարաններ։ «Շատ հարուածներ թափեցին ուրացեալնե-րի գլխին, — ասում է Եղիշէն, — մինչև որ սուրբ եպիսկոպոսների ժողովը և քահանա-ների ամբողջ ուխտը արտասունք էին թա-փում այն սաստիկ զայրացած մարդկանց վրա, որոնք բոբիկ տղամարդկանց և փափ-կասուն կանանց քշում էին հեռուն, այն-պէս որ շատ մանուկներ ճանապարհների անցքերում քարերին էին զարկվում»։ Դըժ-բախտ երկիր։ Դեռ ահարկու փորձանքը չէր հասել նրա դռներին, բայց նա արդէն ծուատ-վում էր ներքին կրքերից, մոլեգնութեան հասած եղբայրասպանութիւնից։ Քրիստո-նէութեան դատը պաշտպանող կուսակցու-թիւնը միջոցների խտրութիւն չէր ճանա-չում։ Հաշտութիւն երկու կողմերի մէջ այլ ևս չէր կարող լինել։

Բայց այնքան կատաղութեան հասած ապստամբութիւնը դրսից նայողին ուրիշ մտքեր պէտք է թելադրէր։ Այդ անօրինակ եռանդը յայտնի չափով երկիւղ ազդեց պար-սից արքունիքին։ Ժամանակն էլ նպաստում էր այդ երկիւղին։ Յաղկերտը անաջողու-թեան էր հանդիպել հեփթաղների պատե-րազմում։ Այդ նեղ միջոցին Միհրներսէհը զգուշութիւն է ձեռք առնում։ Հայերի յա-

մաղութիւնը արդեօք չէ՞ր ցոյց տալիս թէ Պարսկաստանը նրանց եռեռւմ պիտի տեսնէ զինված Արեւմուտքը։

Եւ իրաւ, դա մի լուրջ հարց էր։ Հայերը իրանց բոլորովին անօգնական չէին համարում։ Կար քրիստոնեայ Եւրոպան, որ, ինչպէս կարծում էին Հայաստանում, չէր թոյլ տայ որ մի փոքրիկ քրիստոնեայ ժողովուրդ տրորվի ասիական վիթխարիի ոտների տակ։ Հինգերորդ դարը պատմութեան առաջին շրջանն է, երբ Ասիայի մէջ տառապող փոքրիկ անպաշտպան ազգութիւնը լարում է իր բոլոր ջանքերը ազատութիւն գտնելու համար, յոյսը դրած Եւրոպայի վրա։ Նոր երևոյթ է դա, և այդպէս էլ պիտի լինէր, քանի որ քրիստոնէութիւնը անջատել էր այդ ազգութիւնը ընդհանուր միջավայրից, թշնամացրել նրա հետ։

Քրիստոնեայ Եւրոպան հայերի համար այդ ժամանակ Բիւզանդիան էր։ Այդտեղ էին հայերը լուսաւորվել, այդտեղ էին սովորել ատել ասիականութիւնը, բռնութիւնը և սիրել ազատութիւնը. այդտեղ էլ նրանք դինակցութիւն էին որոնում իրանց իւրացրած քաղաքակրթական իդէալները ասիականութիւնից պաշտպանելու համար։ Դեռ ապստամբութեան սկզբում հայերը պատգամաւորութիւն էին ուղարկել բիւզանդական

արքունիքը՝ օգնութիւն խնդրելու։ Եւ այդ օգնութեան վրայ յոյս դրած՝ նրանք կրկնապատկում էին իրանց եռանդը։

Անկարելի է, որ Միհրներսեհը իմացած չը լինէր այդ պատգամաւորութեան մասին, քանի որ ունէր Վասակի պէս մի գործակալ, որ սկզբում, ինչպէս տեսանք, կեղծել էր հաւատարմութիւն, հետեւաբար և լաւ տեղեակ էր ապստամբութեան բոլոր գաղտնիքներին։ Պարսից մեծ վէզիրը հարկաւոր համարեց մի առժամանակ թուլացնել իր քաղաքականութեան խստութիւնը։ Մինչև իսկ հրատարակվեց Յազկերտի մի հրամանը, որով նորից թոյլատրվում էր քրիստոնէութիւնը։ Այդպիսի մի թուղթ հարկաւոր էր մանաւանդ ապստամբութիւնը ջլատելու համար։ Վասակը գեղեցիկ առիթ ունէր հայ ժողովրդի մէջ պրօպագանդա անելու որ այլ ևս ոչինչ երկիւղ չը կայ պարսիկների կողմից։ Բայց քրիստոնէական կուսակցութիւնը հիմքեր չունէր հաւատալու թէ դա մի քաղաքական խաղ չէ։ Ուստի չը գիջեց, զէնքը վայր չը դրեց։ Թէ որքան լաւ էր նա հասկանում իրերի դրութիւնը, ցոյց է տալիս այն, որ պարսկական հաշտութիւնը անկեղծ չէր։ Միհրներսեհին ժամանակ էր հարկաւոր մի հարց պարզելու։ Այդ հարցը վերաբերվում էր Բիւզանդիային։ Եւ նա

ուղղակի դիմեց բիւզանդական կառավարութեան, հարցրեց՝ արդեօք ունի՞ նա թշնամական տրամադրութիւն դէպի Պարսկաստանը։

Մարկիանոս կայսրը, որ պիտի պատասխանէր այդ հարցին, հետեւում էր այն սկզբունքին թէ մի թագաւոր չը պիտի պատերազմներ յարուցանէ, երբ նրա պետութեան պատիւն ու շահերը վտանգված չեն։ Պարսկա-հայկական պայքարը քաղաքական նշանակութիւն չունէր Բիւզանդիայի համար, որ վաղուց վճռել էր հայոց հարցը, բարեկամական համաձայնութիւն կայացնելով Պարսկաստանի հետ՝ Հայաստանի բաժանման մասին։ Մենք տեսանք որ քրիստոնէութիւնը միայն ոչ-քրիստոնեայ իշխողներին էր վախեցնում, իրապէս նա նշանակութիւն կարող էր ունենալ մի քրիստոնեայ պետութեան համար այնքան ժամանակ, որքան նրա քաղաքական շահերը պատրուակ էին պահանջում։

Բացի դրանից, Բիւզանդիան այդ ժամանակներում սաստիկ վտանգված էր իր եւրոպական սահմանների կողմից։ Ահարկու Ատիլլան արդէն շատ անգամ էր ցոյց տուել արևմտեան քաղաքակիրթ աշխարհին իր նուաճողական կարողութիւնը։ Բիւզանդիան հարկ էր տալիս նրան և միշտ սպասում էր

որ Նուաճողի մի րոպէական քմահաճոյքն անգամ կարող է հեղեղել երկիրը կոտորողների և քանդողների բազմութեամբ. ուստի նա՝ իր զօրքերը կենտրոնացրել էր եւրոպական ցամաքում, և ասիական սահմանները հազիւ էին պաշտպանված։

Սակայն այս հանգամանքը, որքան էլ խոշոր լինի իբրև պատճառ, այնուամենայնիւ շատ էլ մեծ նշանակութիւն չը պիտի ունենայ պարսկա-հայկական ընդհարումի վերաբերմամբ Բիւզանդիայի բռնած դիրքը գնահատելու համար։ Եսամոլութիւնը բիւզանդականութեան հոգին էր։ Եթէ Ատիլլա էլ չը լինէր, Մարկիանոս կայսրը հայ պատգամաւորներին միայն պաշտօնական համակրանք և բարեհաճութիւն կարող էր յայտնել։ Քաղաքականութիւնը սրտի և զգացմունքի գործ չէ, իրական շահերի պաշտօնէութիւն է։ Այդ շահերը, բիւզանդական ըմբռնողութեամբ, այնպէս էին, որ փոխանակ քրիստոնէութիւնը պաշտպանելու Հայաստանում, Կ. Պօլսի կառավարութիւնը, իր համար չաղ պատառ պատրաստելով, հայ աշխարհի ամենանշանաւոր մասը յանձնեց Պարսկաստանին իբրև կատարեալ սեփականութիւն և շտապեց օրինակ տալ իր հարևանին թէ ինչպէս պէտք է ջնջել հայերի քաղաքական ինքնուրոյնութիւնը։

Իսկ հինգերորդ դարի կռուողները այնքան միամիտ գտնվեցան, որ հակառակն էին կարծում։ Նրանք համոզված էին որ իրանց քաջ դիմադրութիւնները, յամառ մրցութիւնը պիտի մղեն յոյներին դէպի իրական օգնութիւն, դէպի խրախոյս գործով։ Այդ մտքով էլ նրանք իրանց ապստամբական աջողութիւնների մասին շտապում էին լուր ուղարկել Կ. Պօլսի եկեղեցականներին, որպէս զի նրանք էլ ոգևորվեն քրիստոնէութեան յաղթանակներով։

Միհրներսեհը այդքան միամիտ չէր։ Ստանալով հաւաստիացում թէ յոյները տեղից չեն շարժվի, նա սկսեց վճռական ձեռնարկութեան պատրաստութիւնները. քաղաքական խորամանկութիւնը երբէք չէր թողնում այդ պետական մարդուն։ Մեծ ճարպիկութեամբ նա սկսեց շահագործել Վասակի բնաւորութեան բացասական կողմերը։ Դրա համար բաւական էր որ նա իր ժպիտը ցոյց տայ հայ իշխանին։ Վասակը տեսակցութեան գնաց մեծ վէզիրի մօտ և իր բոլոր ընդունակութիւնները ցոյց տալու համար մանրամասն ծրագիր առաջարկեց թէ ինչ ու ինչ պէտք է անել որ հայերի միաբանութիւնը ճեղքվի, ապստամբութիւնը ուժասպառ դառնայ։ Երկու քաղաքագէտները միացրին իրանց ճարպիկութիւնը և ստեղծեցին մի

խեղդող գրութիւն։ Եղիշէն մեծ կսկիծով է պատմում Վասակի արարքները։ Սարսափելի է, երբ տան մէջ հանդէս է գալիս ընտանի թշնամին, և Վասակը ճիշտ այդպիսի թշնամի էր։ Հայերը չէին կարող գաղտնիքներ պահել. Նրանց պատրաստութիւնները, նրանց ոյժը, ամբողջ կազմակերպութիւնը, պատերազմական բոլոր կարգերը,—ամեն ինչ մանրամասն կերպով յայտնվում էր պարսիկներին Վասակի ձեռքով։ Միայն լրտեսելը, գաղտնիքներ իմանալը չէր Վասակի մարդկանց (որոնց մէջ կային և քահանաներ) գործը. Նրանք տարածում էին լուրեր թէ զուր և անմիտ է ապստամբութիւնը, թէ Իրանի տէրը կրօնական ազատութիւն է տուել իր հպատակներին։

Ապստամբական շարժումը ծանր կորուստներ կրեց։ Դրութիւնը յուսահատական էր դառնում. դրսից ոչ մի օգնութիւն, ներսում՝ երկպառակութիւն, լրտեսութիւն, հետզհետէ աճող թուլութիւն։ Ըստ երևոյթին, գաղափարական միացումը վերջնականապէս խորտակվում էր, և ընդհանուր լքումը պիտի թողնէր երկիրը ճակատագրի կամքին։ Եւ եթէ մեր պատմութիւնը զարմանքով, հիացած հաւաստիացնում է, որ այդպիսի երևոյթ տեղի չունեցաւ, պատճառն այն է, որ Սահակ-Մեսրոպեան դպրոցները այդ ծանր հանգա-

մանրքների մէջ էլ անսասան ժայռերի պէս էին կանգնած «Մարդիկ», որոնք գրված էին Աստուծու սիրով,— ասում է Եղիշէն,— երբեք վախկոտ ու թուլասիրտ չը պարտվեցան և անձնեւերն երկիւղ չը կրեցին ոչ մահից, ոչ տանջանքի յաղթահարութիւնից, ոչ սիրելիների կոտորածից, ոչ ընտանիքի զրկութիւնից, հայրենի երկրից դուրս քշվելուց և օտարութեան մէջ ստրկութեան մատնվելուց։

Այդ անսասան մարդկանց հոգին Վարդան Մամիկոնեանն էր։ Վարդանը այս պատմական դրամայի մէջ մի քնարդ տիպ է, որի մէջ մըրցում են դրական և բացասական յատկութիւնները։ Նրան ճանաչելու համար պէտք է նրան շատ և լաւ ուսումնասիրել։ հակասութիւնները, ծայրայեղութիւնները, կիրքը, փառասիրութիւնը, գործնական խելքը ամէն մի քայլում կանգնեցնում են, ճանաչել են տալիս Վարդանը—ընդհակառակն։ Մի պարզ բնաւորութիւն։ Ս. Սահակի թոռը, հայ դըպրոցի առաջին պտուղներից մէկը, պիտի արիւնի դառով ամբողջացնէր այն մեծ գործը, որ նրա պապն էր կենդանացրել տասնեակ տարիների աշխատանքով։ Գրիգոր Լուսաւորչի տոհմը շարունակում էր գործել նրա մէջ. նոյն անվախ, համարձակ հոգին, որ առանց աջ ու ձախ նայելու, առանց հաշիւներ ելու, գնում էր փորձանքների ու վտանգ-

Ներքի դէմ Իբրև զօրավար՝ Վարդանը քաջ էր։ Եւ այժմ պատրաստվում էր իր նախնիքների գործին տալ վերջնական մկրտութիւն—մարտիրոսութիւնը։

Անթիւ խմբեր դիմում էին դէպի այդ մարտիրոսութեան դաշտը, դէպի Աւարայր։ Դա զինուորական բանակ չէր, դա ժողովուրդ էր, որին առաջնորդում էր գաղափարի մարմնացումը—խաչ՝ միացած սրի հետ։ Դըժուար էր որոշել թէ ուր է վերջանում մէկի իշխանութիւնը, ուր է սկսվում միւսինը։ Վարդանը ճառ է ասում ժողովրդական բանակի առաջ. այդ ճառի մէջ նա թէ զինուոր է և թէ եկեղեցու քարոզիչ։ Խօսում է և եկեղեցու մարդը, Ղեւոնդ երէցը։ Նրան պատշաճում էր քարոզել խաղաղութիւն, հեզութիւն. բայց նրա խօսքը սրի գործն է նուիրականացնում, նրա միջոցով եկեղեցին մըղում է մարդկանց դէպի կոտորած, արդարացնելով այդ անհրաժեշտութիւնը հրէական պատմութիւնից վերցրած բարձր հայրենասիրութեան և անձնազոհութեան ոգևորիչ օրինակներով։ Երկու ճառախօսները ազատ են մեծամտութիւնից, անձնապաստանութիւնից։ Նրանք չեն թաքցնում դրութիւնը, չեն մոռանում թէ ինչ ոյժի հետ պիտի ընդհարվեն, չեն կարծում թէ անպատճառ յաղթութիւն է կանգնած ամենքի առաջ։ Ո՛չ. կուել

քաջութեամբ և նախատակվել առանց ափսոսանքի, առանց վարանումների։

Սկզբից այդպէս էր դրված նպատակը.—նախատակութիւն։ Այդպէս էլ պէտք է նայել այդ մեծ մենամարտութեան։ Իբրև քաղաքական ձեռնարկութիւն, նա մի խակ, լաւ չը մտածված արկածախնդրութեան է նմանվում. սառն հաշիւը, որ պարտաւորական է մանաւանդ այն դէպքում, երբ մի ամբողջ ժողովրդի վիճակն է տնօրինվում, երբէք չէ կարող խելացիութիւն համարել մի թզուկի մենամարտութիւնը մի հսկայի հետ, երբ չորս կողմում չը կան թզուկին նպաստող հանգամանքներ։ Այսպէս սառն դատողների համար Վասակը հանդիսանում է և՛ շատ խելօք, և՛ զուր տեղը զրպարտված։

Բայց երևոյթը միայն քաղաքական կողմ չունի, և սառն դատողութիւնը, լօգիկան անզօր են այն դէպքում, երբ հասարակութեան տրամադրութիւնը անչափ բարձրացած է, երբ նա առաջ է նետվում մի իդէալ իրագործելու, մի սուրբ ստացուածք ձեռք բերելու։ Հայ ժողովուրդը կամ նրա մի նշանաւոր մասը ուզում էր պաշտպանել իր նուիրական ժառանդութիւնը։ Այստեղ էլ նոյն հոգեկան դրութիւնն է, որ տեսնում ենք անհատի կեանքի մէջ, օրինակ, երբ մի հատ մարդ զէնքը ձեռքին դուրս է վազում

մը տան, իր ընտանիքի վրա յարձակվող մի ամբողջ հրոսակախմբի դէմ։

Պատերազմը իրանք, հայերն էին ուզում։ Քաղաքական տեսակէտից նա միայն դժբախտութիւն էր փոքրիկ երկրի համար։ Ո՛չ Պարսկաստանը ընկճվել կարող էր, ո՛չ Միհրներսէհի քաղաքականութիւնը պիտի ջնջվէր։ Դրութիւնը այս կողմից անփոփոխ մնաց, մինչդեռ հայերը թուլացան և անհաշիւ վնասներ կրեցին։ Բայց պատերազմ պիտի լինէր։ Նա հարկաւոր էր ոչ թէ քաղաքական ոյժի և փառքի համար,—ոչ։ Նա հարկաւոր էր որպէս զի ստեղծվի մի բարձր հեղինակութիւն, որ այնուհետև պիտի հաստատուն, դարաւոր առաջնորդ դառնար ժողովըրդի մտաւոր ինքնուրոյնութեան, հոգեկան անկախութեան համար...

## Ը.

*Պատերազմող կողմերը Աւարայրի դաշտում։—Հայերի թուլութիւնը։—451 թ. յունիսի 2-ի օրվայ խորհուրդը։—Երկիրը պատերազմից յետոյ։—Աքսորներ, նահատակութիւններ։—Պարսկական կուսակցութեան կատարեալ յաղթանակը։—Մռայլ տարիներ։—Վատութիւնը և դաւաճանութիւնը խրախուսված։—Պերոզի վկայութիւնը իբրև բարոյական անկման ապացոյց։—Կայծեր աւերակների տակ։—Հայ կանանց կատարած դերը։—Սահակ-Մեսրոպեան դպրոցները չեն մեռել։—Լեռներում և անտառներում։—Պարսկաստանում։—Զուիկ տիկին։—Նորից ապստամբական շարժում։—Վահան Մամիկոնեան։—Նրա կազմակերպած պատերազմական գործողութիւնները։—Նրա աջողութիւնը։—Այդ աջողութեան պատճառները։—Պարսկաստանը նեղ դրութեան մէջ։—Վաղարշ թագաւորը փոխում է պարսկական քաղաքականութիւնը։—Նուարսակի դաշնադրութիւնը։—Երեք պայմաններ։*

*Հինգերորդ դարի շարժման ընդհանուր պատկերը։—Յունականութեան նշանակութիւնը այդ շարժման մէջ։—Յետագայ դէպքերը։—Անջատում յունականութիւնից, կղզիացում։—Հինգերորդ դարի հեղինակութիւնը յետագայ դարերի համար։—Ղեկավարող է նա, ներքին ոյժ է։—Մեսրոպեան գիւտը իբրև հայութեան միակ պաշտպան։—Նոր ժամանակների լուսաւորութիւնը և Մեսրոպի գործը։*

---

Հայերը չը յաղթեցին Աւարայրի պատերազմում, նրանք չէին էլ կարող յաղթել։

Տղմուտ գետի մի ափում կանգնած էր Արեւմտեան Ասիայի վիթխարի պետութիւնը։ Արհամարհանքով, թեթեւ պատրաստութեամբ չէր եկել նա։ Իրանի ամբողջ ռազմական հմտութիւնն էր երեւում դաշտի վրայ։ Դա այն կազմութիւնն էր, որ կարողանում էր բաղխվել հռոմէական լեգէոնների հետ. և տարիներով արշաւանք գործել անապատների և լեռների ազատ որդիների դէմ։ Հընդկական փղերը, Սասանեանների զվարդիան —անյաղթելի Մատեան գունդը, պարսկական բանակի հպարտութիւնն էին կազմում։

Իսկ ի՞նչ էր երեւում գետի միւս ափին։

Վարդանը կարողացել էր հաւաքել 66 հազար մարդ։ Մեծամասնութիւնը կռիւ էր եկել առանց պատրաստութեան, չունենալով զէնք ու զրահ անգամ։ Նրանց դեռ պէտք էր կրթել ու վարժեցնել։ Վարդանը, որքան ներում էր ժամանակը, պատրաստեց այդ ամբոխը։

Բայց երկիրը աւելի մեծ պատերազմական ոյժ ունէր և Վարդանի բանակը աւելի ստուարաթիւ պիտի լինէր. և եթէ հետաքրքրվենք իմանալու թէ ո՞ւր էին միւս պատերազմողները, պիտի անցնենք պարսից կողմը։ Այնտեղ էին Վասակը և նրա համամիտ նախարարները իրանց գնդերով։ Եւ այսպէս, պատրաստված կռիւը պիտի լինէր

գլխաւորապէս եղբայրասպանութիւն, մի և նոյն ազգի երկու մասերի փոխադարձ ոչնչացում։ Պարսիկները իրանց հաւատարիմ հայերին պիտի առաջ քաշէին, իսկ սրանք, հաւատարմութիւնը լաւ ապացուցանելու համար, պիտի կռուէին իրանց եղբայրների դէմ առանձին յամառութեամբ։

Դժբախտութիւնը միայն այսքանը չէր։ Աւելի ծանր էր այն դժբախտութիւնը, որ հայոց բանակում ամենքը չէին գաղափարով միացած, մի մարմին ու մի հոգի դարձած։ Երերվող բնաւորութիւններ կային, շատ շատերի համար պարզ չէր արիւնհեղութեան անհրաժեշտութիւնը։ Վասակը գիտէր այդ. և պարսից բանակից էլ շարունակում էր թուլացնել դիմադրութիւնը, երկար բանակցութիւններ էր վարում որ ուխտապահ նախարարները ցած դնեն զէնքը։ Խղճալի է այդպիսի մի բանակը, որի մէջ միութիւն չը կայ, որ տարուբերվում է վճռական, ահաւոր րոպէին...

Բայց և այդպէս, 451 թւականի յունիսի 2-ի օրը մէկն է այն հազուագիւտ պատմական օրերից, որոնք յաւիտեան դրոշմվում են մի ժողովրդի սրտում և դառնում են ամենաբարձր, ամենանուիրական մի պաշտամունք։ Ազգերը ունեն իրանց սեփական տօները, որոնց հետ կապված են սքանչելի, յու-

գին յիշատակներ։ Եւ մեր ամբողջ անցեալում չը կայ մի ուրիշ օր, որ այդ օրվայ հմայքն ունենայ։ Նա ապրում է իբրև ազգային սրբութիւն․ և գուցէ կանյայտանայ նոյն այդ ազգի հետ միայն։

Առաւօտից սկսվեց պատերազմը։ Տեսարանը շատ էլ մխիթարական չէր։ Առաջին բաղխումներից յետոյ հայոց բանակը թուլացաւ, շփոթվեց․ Նրա մի մասը չը կարողացաւ կանգնել և փախուստ տուեց դաշտից։

Բայց այդ թոյլերն ու վախկոտները չէին օրվայ վիճակը տնօրինողները։ Կռուողներ էլ կային դաշտում, քաջ, յամառ կռուողներ, որոնք ամեն ինչ մոռացած՝ առաջ մըղվեցին որ ցոյց տան պարսիկներին մի ժողովրդի ինքնաճանաչութեան ամբողջ բուռն թափը։ Ահա դրանք էին մեծ օրվայ խորհուրդը կատարում։

Կոտորածը մեծ էր, երկու կողմից ընկան հազարաւոր մարտնչողներ։ Ծանր, ճընշող էին հայերի կորուստները։ Վարդանը չուզեց պահպանել իրան․ վաղուց Նա ձգտում էր դէպի մարտիրոսութիւն, իսկ կազմալուծված բանակը պիտի Նրան աւելի ևս համոզէր, որ այլ ևս չարժէ ապրել։ Եւ Նա մահ գտաւ իր զինուորների շարքում, պատերազմի փոթորիկի մէջ։ Նրա հետ ընկան և միա-

բանված նախարարութեան ծաղիկները։ Դիակների մի ահաւոր կոյտ։ Նրանց արիւնով գրվեց պատմութեան էջերում մեծ եղելութիւնը։ Արեւելեան հարցի բազմադարեան արիւնոտ շղթայի մի օղակն էր դարբնվում Տղմուտ գետի ափին։ Հայի արիւնը վազում էր իրանականութեան յանգուցն արշաւանքի առաջն առնելու համար։ Այդ արիւնը վերջնականապէս ճեղքում, պատառում էր ժամանակի դարաւոր շրջանները. անցեալը գընում էր անվերադառնալի կերպով, հաստատվում էր նոր ներկան։ Հայութիւնը ստանձնում էր որոշ հաստատուն վիճակ, մի ծանր, մարտիրոսական դեր. նա դառնում էր քրիստոնէութեան առաջաւոր պահակը Ասիայի այս խուլ անկիւնում, որ արիւնածարաւ ցեղերի և վայրենի պաշտամունքների մի խառնարան էր դարերի սկզբից։

Բայց այդ մկրտութիւնը, այդ նոր կոչումը չափազանց թանգ նստեց հայերին։ Երկիրը բեմ էր հանել իր բոլոր ընտիր ոյժերը։ Դրանցից դիակների կոյտեր կազմվեցին, բայց այդ կոյտերը դեռ վնասների վերջ չէին նշանակում։ Կորուստը այն 1036 հոգիները չէին, որոնք սպանվեցին պատերազմի դաշտում։ Երկարատև տանջանքները, որոնք հոգեկան աւելի մեծ կարողութիւն էին պահանջում, սկսվեցին պատերազմից յետոյ։

Դիմադրութեան ոյժը սպառուել էր, իսկ պարսիկները Աւարայրից Պարսկաստան չըվերադարձան, այլ զօրքի մի մասը մնացրին Հայաստանում։ Ապստամբութիւնը ամրացաւ լեռներում և մի առ ժամանակ կարողանում էր փոքրիկ խմբերով յարձակումներ գործել պարսիկների վրայ։ Բայց այդ դիմադրութիւնն էլ սպառուեց։ Վարդանի եղբայր Հմայեակը սպանուեց այդ փոքրիկ յարձակումներից մէկի ժամանակ։

Այնուհետև պարսիկները սկսեցին ահաբեկել ազնուականութիւնը, դատել ու պատժել։ Վասակը պարսից զօրապետի խորհրդականն ու ղեկավարն էր։ Նրա ցուցմունքներով ապստամբութեան գլխաւորները կալանաւորվեցին և քշվեցին Պարսկաստան իբրև պետական յանցաւորներ, իսկ երկրորդական գործիչներին սպանեցին տեղն ու տեղը։ Պարսկաստան քշվածները երկու կարգի էին — հոգևորականներ և աշխարհականներ։ Առաջիններին պարսից կառավարութիւնը չըխնայեց։ Ղևոնդ երէցը, Յովսէփ կաթողիկոսը և այլ աչքի ընկնող հոգևորականներ մատնվեցին երկար տանջանքների, ապա և դահիճների ձեռքը։ Միհրներսէհը աւելացնում էր նահատակների թիւը, չըմտածելով որ դրանով քրիստոնէութեան համար ոյժի նոր աղբիւրներ է բաց անում։ Իսկ նախարար-

ներին, որոնց թիւը հասնում էր 35—37-ի, պահեցին գերութեան մէջ։

Այս բոլոր հարուածները թափվում էին Սահակ-Մեսրոպեան դպրոցների վրայ։ Աւերվել էր երկիրը, բայց նրանց կրած աւերմունքը աւելի մեծ էր։ Մնացել էին թոյլ ու փոքր բեկորներ միայն, որոնք քրիստոնէութեան հաւատարիմ մնացած տարրերի հետ հալածական էին դարձել և ապաստան գտան լեռների ու անտառների մէջ։ Ի՞նչ էր թողել Աւարայրը։ Երկիրը կորցրել էր իր տնտեսական բարօրութիւնը, նրա քաղաքական ոյժը ոչնչացել էր։ Եկաւ դժբախտ տարիների մի երկար շարք, երբ ամեն ինչ ձեռքից գնացած էր երեւում, երբ թւում էր թէ ապստամբական շարժումը ոչինչ չէ թողել երկրին, բացի տանջանքներից և դժբախտութիւնից։

Գեղեցիկ, կենսատու վերածնութեան յաջորդեց մռայլ անտէրութիւնը. ասիականութիւնը շտապեց չորացնել լուսաւորութեան, առաջադիմութեան ծաղիկները.—այս է եղել նրա կոչումը միշտ։

Պարսկական կուսակցութեան կատարեալ յաղթանակն էր։ Վասակը չը վայելեց իր ջանքերի պտուղը. նրան էլ կանչեցին Պարսկաստան, ուր Ղեւոնդը և նախարարները ծանր մեղադրութիւններ բարդեցին նրա

վրա, բոլոր չարիքների պատճառ ցոյց տուին նրան և թբրև ապացոյց՝ բերին այն, որ Վասակը ապստամբութեան սկզբում քրիստոնեայ կուսակցութեան կողմնակիցն էր։ Միհրներսէհի համար դա մի լաւ առիթ էր հեռացնելու Հայաստանի կառավարչին, որ, այնուամենայնիւ, մի հայ էր։ Բայց Վասակի կողմնակիցների դրութիւնը այդպէս չէր։ Նրանք գլուխ բարձրացրին Հայաստանում, նրանցն էր աջողութիւնը, նրանք էին տիրում ու վայելում։

Մռայլ ռէակցիայի ամենավտանգաւոր երևոյթը այն քաղաքականութիւնն էր, որ մտցրեց պարսից կառավարութիւնը Հայաստանի մէջ։ Քրիստոնէութիւնը ջնջող կարգադրութիւնը չը վերացվեց, բայց պարսիկները աւելորդ համարեցին այլ ևս բռնութիւնների դիմելը։ Կարելի էր այնուհետև խաղաղ միջոցներով տարածել մազդեզականութիւնը։ Իսկ խաղաղ միջոցների գլխաւորը այն խրախոյսն էր, որին արժանանում էր ամեն մի հաւատուրացութիւն։ Կաշառքները, աշխարհային բարիքները պիտի կատարէին այն, ինչ պարսիկները ուզում էին իրականացնել զէնքով և հրամանով։ Ով ուրացող էր հանդիսանում, ով օգնում էր պարսից մոգերին, ով մատնում էր իր դժբախտ հայրենակիցներին, նա արժանանում էր

փառքի և հարստութեան, գտնւում էր հոգե-
հանգստութիւն, չըջում էր բարձրագլուխ, իբ-
րև իշխանաւորը։

Այդ տխուր մթնոլորտում կարող էին զարգանալ միայն ստոր հակումները։ Կեղծաւորութիւնը, պակասութիւնը, սրբապղծադութիւնը, զարմանքի կեանքի խաւարութիւն, ագահութեան գրաւականներ. Անբարոյականութիւնը ակնյայտ տարածւել, լայն չափերով դարձաւ մի անտելի չարիք, որից երկիրը աւելի շատ էր տանջւում, քան նոյն իսկ պատերազմական աւերմունքներից։ Եւ պարսիկները իրանք քայքայւում էին իրանց սերմանածը։ Յազկերտի յաջորդ Պերոզը ասում էր. «Իմ պետութեան մէջ անդամները, մարդը և յետին փոքրը ասորին է, բայց առաջուց աւելի հայն է յետին և անկիրթ մարդը»։ Բայց այդպէս չէր խօսում նրա հայր Յազկերտը Վարդանի, հայ նախարարների և ահատարակ հայ զօրքի մասին։ Իրանի մէջ հայկական հեծելազօրքը շատ բարձր համբաւ ունէր դեռ հին ժամանակից։ Երբ խորտակւում են միայն ստոր հակումները, երբ անարդարութիւնը դառնում է ցեխավարագ սկզբունք, մարդկանց մէջ կորչում է առաքինութիւնը.—սա բնական է, և զարմանալի չէ որ հայ ժողովուրդը մի կարճ միջոցում այդքան ընկել էր...

Եւ լքման, կազմալուծութեան այն շրջանը երկար շարունակվեց։ Մեռաւ Յագ-կերպը, թագաւորեց նրա որդի Գերոգը, որ սակայն, իր հօր ձգտութեան էր հետեւում։ Միջնեկունէնը հեռացաւ ասպարէզից եւ Գերոգը միայն այն արաւ, որ բաւական համարեց հայ նախարարների գերութիւնը, արձակեց նրանց։ Մօտ 15 տարի գերութիւն եւ կոտորածներ կրելուց յետոյ վերադարձան նրանք իրանց հայրենիքը, բայց այդ վերադարձը փոփոխութիւն չը մտցրեց դրութեան մէջ։ Իշխանները գտան լռութեան մատնված մի երկիր, ուր թոյլատրված էր միայն բռնակալութիւնը եւ պաշտվում էր միայն ստորութիւնը։ Նրանք ստիպված եղան լինէին քաշվել իրանց կալուածները, ապրել իրանց կարօտած ընտանիքների ծոցում։

Բայց ամէն ինչ կորած չէր։ Կայծեր էին մնացել աճիւնների տակ։ Մինչդեռ Հայաստանի քաղաքներում եւ գիւղերում պաշտվում էր կոպիտ նիւթականութիւնը եւ ամէն ինչ ծախու էր մի կտոր փողի, մի կտոր հացի համար,—գաղափարականութիւնը, հոգեւոր բարձր շահերի պաշտամունքը մոռացութեան ապաստաններ էր որոնում լեռնային կիրճերում, անտառների մթութեան մէջ, առանձնվում էր լուռ, նահատակվողի համբերութեամբ։ Քրիստոնէու-

թիւնը թագնված կրօն էր։ Նրա հետ սարերն ու անտառները քաշվեց այն ամենը, ինչ մնացել էր լուսաւորութեան և գրագիտութեան փայլուն ժամանակից։ Այդ թանգագին բեկորները սուրբ աւանդի պէս էին պահվում վայրենի և անլոյս տեղերում, գրկանքների, կենդանի նահատակութեան այն աշխարհում։ Եւ աւանդապահները մեծ մասամբ հայ կանայք էին։ Ո՞ւմ չեն յայտնի Եղիշէի այն գեղեցիկ, բանաստեղծական էջերը, ուր հայ կինը հանդէս է գալիս իբրև կոչման, անձնազոհութեան սքանչելի օրինակ։ Երկիրը դատարկվել էր, բոլոր լաւագոյն ոյժերը հեռացրված էին այնտեղից։ Եւ այդ ժամանակ ազնուական հայ կինը դուրս է գալիս իր ապարանքներից, որպէս զի բռնէ իր տանջված, տարագիր ամուսնու տեղը։ Կռուել, յաղթել նա չէր կարող, բայց դրա փոխարէն զինվեց անսահման անձնազոհութեամբ և գնաց լեռներում, բնութեան անմատչելի վայրերում պահելու այն, ինչ չէր կարելի պահել տանը այդ ապականված ժամանակներում։ Այդ կամաւոր զրկանքների մէջ հայ փափկասուն տիկիններին ոգևորողը, մխիթարութիւն տուողը Սահակ-Մեսրոպեան գանձն էր։ Նրանք մրմնջում էին աղօթքներ, նրանք կարդում էին հոգևոր գրքեր։

Իսկ նրանց գերի ամուսինները և սի-

րելլիները Պարսկաստանի խորքերում նոյնպէս ուրիշ մխիթարութիւն չունէին, բացի գրքերից։ Նախարարների հետ գերի էին գնացել և շատ ազնուական երիտասարդներ, որոնք վարակվել էին ընդհանուր ոգևորութեամբ, բայց դեռ չէին ճաշակել այն սրբութիւնը, որի համար կռւում էին։ Եւ ահա հեռու հայրենիքից, գերութեան և տառապանքների մէջ, կարելի է նշմարել մի այսպիսի տեսարան։ Հասակաւոր նախարարները երիտասարդների ուսուցիչ են դառնում, սովորեցնում են մայրենի դպրութիւնը։

Հայաստանի սահմաններից դուրս էր դարձեալ, որ Մամիկոնեան տան մի այրին, Ձուիկ տիկինը, Վարդանի եղբայր Հմայեակի ամուսինը, իր երեխաներին դաստիարակեց, գիր սովորեցրեց։ Ձուիկ տիկինն էլ Սահակ-Մեսրոպեան դպրոցների մի պտուղն էր։ Եւ նրա դաստիարակութիւնը պատրաստեց մի այլ մարտնչող հայրենի ազատութեան և մտաւոր անկախութեան համար։ Դա նրա որդի Վահանն էր։

Ահա ուր էին թագնված կայծերը։ Հայը սկսել էր պաշտել իր մայրենի գրականութիւնը, որ և թոյլ չը տուեց նրան կորչել ժամանակի վատութեան մէջ։ Նա սկսեց նորից պատրաստվել իր դատը պաշտպանելու համար։ Եւ Աւարայրի ճակատամարտից հա-

մանը, յամառ ժողովրդական պատերազմ, որ երկար տևեց, յաղթական էր և չէր նեղում ժողովուրդը, չէր լարում նրա ամբողջ ույժերը։ Մի թոյլ ու խեղճ երկիր այդպէս միայն կարող էր կռուել. Վարդանի սխալներից մէկն այն էր, որ նա չը հասկացաւ այս իրողութիւնը և միանգամից սպառեց երկրի ույժերը։

Մօտ չորս տարի հայերը այս եղանակով կռուեցին պարսիկների դէմ։ Եւ Վահանը իր հօրեղբօրից անհամեմատ բախտաւոր էր, նա հասաւ իր նպատակին։ Բայց միամտութիւն կը լինէր կարծել թէ միայն այդ մանըր յաղթութիւններն էին աջողութիւն պատրաստում։

Պարսկաստանը նոր չը պիտի սովորէր երկարատև, յամառ պատերազմներ մղելը, իսկ նրա ույժերը բաւական էին որ հայերը վերջ ի վերջոյ յոգնէին և անձնատուր լինէին։ Վահանին միայն քաջութիւնն ու աջողակ գործողութիւնները չէին հովանաւորում։ Աւելի զօրեղ հովանաւոր հանդիսացան քաղաքական հանգամանքները։ Երբ գլուխ բարձրացրեց Վահանի ապստամբութիւնը, Պարսկաստանը ոչ մի գիջումի մասին չէր էլ մտածում. նա իսկոյն զինուորական ույժ հանեց ապստամբութիւնը ճնշելու համար, և եղաւ մի ժամանակ, երբ նա համարեա հասել էր իր նպատակին։ Բայց անակնկալ կերպով նրա

գլուխը խառնվեց և բախտը առ ժամանակ երես դարձրեց նրանից։

Պերոզի թագաւորութեան վերջը շատ գժբախտ էր։ Նա պատերազմի բռնվեց հեփթաղների հետ (484) և մի մեծ ճակատամարտի մէջ սպանվեց։ Հեփթաղները ողողեցին Պարսկաստանը, քարուքանդ արին նրան։ Գահը առժամանակ թափուր մնաց, պարսիկները պիտի մոռանային ամեն ինչ և իրանց ներքին գործերը կարգաւորելու մասին էին մտածում։ Վերջապէս Պերոզին յաջորդեց Վաղարշը, որ ամենից առաջ ցոյց տուեց թէ վերանում է վաթսուն տարվայ պարսկական այն քաղաքականութիւնը, որի ամենամոլեռանդ ներկայացուցիչն էր Յազկերտ երկրորդը։ Վաղարշը մոգերի և ազնուականների տիրապետութեան դէմ գնաց. այդ կողմից նա Յազկերտ առաջինի ժառանգն էր։ Եւ բացվեց հին, ծանօթ տեսարանը—սաստիկ մրցութիւն պարսից արքունիքում։ Մոգերն ու մեծամեծները իրանց ազդեցութիւնը ձեռքից չը տալու համար կռիւ սկսեցին թագաւորի դէմ։ Նշանակում էր որ քրիստոնեաները կարող են հանգիստ ապրել։

Ահա թէ ինչն էր Վահան Մամիկոնեանի աջողութեան գլխաւոր պատճառը։ Վաղարշը յօժարութիւն չունեցաւ հայերի դէմ

կրօնական պատերազմ շարունակելու․ Նա աւելի մեծ հոգսեր ունէր։ Հեփթաղների արշաւանքը դատարկել էր պարսից գանձարանը, իսկ առանց դրամի Թագաւորը չէր կարող իր կողմը գրաւել զօրքը և առհասարակ կազմել կուսակցութիւն՝ մոգերի և իշխանների ջանքերը ոչնչացնելու համար։

Այս շատ կարևոր հանգամանքը, սակայն, աւելորդ չէ դարձնում Վահանի ապստամբական գործողութիւնները։ Եթէ չը լինէին նրանք, եթէ զէնքով և արիւնով մի երկարատև բողոք չը պահպանվէր պարսկական ռէժիմի դէմ, Վաղարշը ոչ մի առիթ չէր ունենայ Հայաստանի վերաբերմամբ կարգադրութիւններ փոփոխելու։ Իր երկրի հոգևորականութեան դէմ մղած կռիւը դեռ չէր նշանակում թէ նա Սասանեան տոհմից չէ, ոչ էլ ջերմեռանդ մազդեզական։ Բայց, յանդուգն դիմադրութիւնը, որ չէր թուլանում Հայաստանի մէջ, հասկացրեց նրան որ այդպիսի մի դժուար ժամանակամիջոցում աւելի լաւ է խաղաղութիւն հաստատել։ Եւ նա հայերին նոյն իսկ պատերազմող կողմ ճանաչեց և հաշտութեան բանակցութիւն սկսեց։

Հայաստանի սահմանագլխի վրա, Հեր գաւառի Նուարսակ գիւղում, պարսից և հայոց լիազօրները մշակեցին հաշտութեան

պայմանները։ Հայերը չէին էլ մտածում պարսկական հպատակութիւնից ազատվելու մասին. Նրանք միայն պահանջեցին իրաւունքներ, արդարութիւն։ Այդ պահանջը ձևակերպված էր երեք կէտերի մէջ։

Առաջինը և ամենակարևորը, իհարկէ, կրօնական ազատութիւնն էր։ Քրիստոնէութիւնը պաշտօնապէս ճանաչված և քաղաքական իրաւունքներ ունեցող կրօն է յայտարարվում. պարսիկները հայերին չը պիտի գրաւեն դէպի մոգութիւն, և հաւատափոխութիւնը չը պիտի վարձատրվի իշխանութեան և հարստութեան հրապոյրներով։ Հայաստանի մէջ մտցրած մազդեզականութիւնը վերացվում է։ Քահանաները և աշխարհականները իրաւունք ունեն բացարձակ կերպով քրիստոնէութիւնը պաշտելու ուր և կամենան։

Պակաս կարևոր չեն և միւս երկու կէտերը։ Հայերը առաջարկում էին որ վատ ու անպիտան մարդկանց պարսից կառավարութիւնը առաջ չը քաշէ, երկրի իսկական տրամադրութիւնը և բուն հանգամանքները իմանալու համար նրանց չը դիմէ ու նրանց չը լսէ և հաւատայ։ Թագաւորը անմիջապէս, առանց միջնորդների է գործ ունենում հայ ժողովրդի հետ. նա անձամբ քննում և իմանում է ամեն ինչ և ապա դատաստան է անում։

Այս բանակցութիւնների մէջ երևում է մի տառապած ժողովրդի ձեռք բերած փորձառութիւնը։ Այստեղ մենք տեսնում ենք թէ ինչ ցաւերից էր տանջվում հայ ժողովուրդը, ինչ անարդարութիւնների դէմ էր բողոքում, վտանգի ենթարկելով իր ամբողջ բարեկեցութիւնը, կեանքն անգամ։

Եւ արիւնոտ ջանքերը, վերջապէս, բերին իրանց պտուղները։ Երեք պայմաններն էլ ընդունվեցին. Վահանը Հայաստանի մարզպան նշանակվեց։ Ահա այստեղ միայն ընկճվեց Յազկերտ երկրորդի այն հրամանը, որով քրիստոնէութիւնը ոչնչացրված էր Հայաստանում։ Վահանի մարզպանութիւնը խաղաղութիւն և բարեկարգութիւն բերեց։ Կրօնը ստացաւ իր արժանաւոր դիրքը։ Նա այլ ևս գործիք չէր դառնում փառասէր, վատ մարդկանց ձեռքին, որոնք ծախու էին հանում նրան պարսից հրապարակներում՝ պատիւ ու հարստութիւն ստանալու համար։ Մի հաշիւ, որի պատճառով Հայաստանը լցվել էր ուրացողներով և դաւաճաններով։

---

Այսպէս վերջացաւ հինգերորդ դարի շարժումը։ Ութսուն տարվայ մի շրջան է դա, որի սկզբում դրված է հայոց տառերի գիւտը (404), իսկ վերջին է Նուարսակի դաշ-

նադրութիւնը (485)։ Քառասուն տարի հայ ժողովուրդը սովորում էր Սահակ-Մեսրոպեան գրականութիւնը, իսկ երեսուն և հինգ տարի (449-ից) պաշտպանում էր իր ստացածը սրով, նահատակութիւններով, տանջանքների գնով։ Հազիւ թէ հին ժամանակներում ասիական երկիրներից մէկի ժողովուրդը այնքան ճիգ թափած, այնքան յուզումներ կրած լինի իր բարոյական և մտաւոր երջանկութեան համար։ Հազիւ թէ մի ուրիշ երկրում ասիականութեան և եւրոպականութեան պայքարը այնքան մեծացրած լինի պատմական արիւնոտ դրամայի չափերը...

Հինգերորդ դարից դէնը մենք չենք անցնի։ Նուարսակի հաշտութիւնը Սահակ-Մեսրոպեան գործի քաղաքական յաղթանակն էր։ Բայց մի քանի խօսքով կը գծագրենք նրա ապագայ ճակատագիրը։

Կռիւների, տանջանքների, քաղաքական թշուառութիւնների ամբողջ պատճառն այն էր, որ յունական սկզբունքներն էին թագաւորում այդ գործի մէջ։ Բայց շուտով, դեռ հինգերորդ դարի վերջանալու վրա, կտրվեց կապը արևմտեան լուսաւորութեան հետ.— հայոց եկեղեցին բաժանվեց յունականից, չը համաձայնվելով դաւանական այն սկզբունքների հետ, որ մշակել և ընդունել էր Քաղկեդոնի ժողովը։ Այդ բաժանման մէջ գուցէ

և քաղաքական անհրաժեշտութիւն կար-գուցէ Պարսկաստանի կասկածներից ազատ-վելու միջոցներից մէկն էր դա։ Կատաղի թշնամութիւն ծագեց երկու եկեղեցիների մէջ։ Պարսիկները և նրանց յաջորդած մահ-մեդական իշխողները կարող էին հանգիստ մնալ դրանէ այն կողմից, որ հայ-յունական միութիւն չէր կայանալ, քանի որ յոյները մազդեզականներից և մահմեդականներից պակաս խստութեամբ չէին հալածում հայե-րին, համարելով նրանց հերձուածողներ։

Եւ չը մնաց քրիստոնեայ մի երկիր (եթէ չը հաշւենք Աղուանից աշխարհը), որի հետ հայերը դաւանակից և բարեկամ լինէին։ Կրօ-նական առանձնութիւնը ազգի համար բերեց կատարեալ կղզիացում, որ աղէտալի էր քա-ղաքական տեսակէտից։ Բայց այդ անջատու-մը չէր նշանակում թէ հայերը կտրվեցին Ա-րեմուտքից, նորից ընկան ասիականութեան գիրկը։ Առանձնացումը չընդհատեց աշխա-տանքը։ Հայոց եկեղեցին աւելի ևս ազգայ-նացաւ, աւելի նեղ, սահմանափակ շրջանակի մէջ ամփոփվեց. նա չը մօտեցաւ ոչ նեստո-րականներին, ոչ յակոբիկներին, ոչ քաղ-կեդոնականներին, այլ դարձաւ հայ ազգի ինքնուրոյն աշխատութեան, մտաւոր կարո-ղութեան մի շինուածք, որ իր կղզիացած դրութեան մէջ, իր տանը բաւական հիւթեր

զգում իր գոյութիւնը շարունակելու համար։ Եւ այդ նիւթերը հինգերորդ դարում ընդունված ընդհանուր քրիստոնէական-եկեղեցական սկզբունքներն էին։

Ներկված այնքան նահատակների արիւնով, անմոռվոր փայլ ստացած այնքան ընդունակ, տաղանդաւոր գործիչներից, հինգերորդ դարը յետագայ ժամանակների համար ոչ միայն դասական ոսկեդար էր, այլ և մի այնպիսի նուիրական հեղինակութիւն, որի դէմ ոչինչ չէր կարող դուրս գալ։ Հայերին հինգերորդ դարի վերջում առաջարկեցին ընդունել Քաղկեդոնի ժողովը։ Ինչ էր․ Ասորիսի մի հարց կարող էին վճռել մեծ շարժման մարդիկ․ նրանք չը կարողացան վճիռ կայացնել, որովհետև Քաղկեդոնի ժողովը տեղի ունեցաւ այն իսկ տարին, երբ Աւարայրի պատերազմն էր պատրաստվում։ Այնուհետև յայտնի դարձաւ որ հայերը միայն այն կարող էին պահպանել, ինչ ժառանգել էր Սահակներից, Մեսրոպներից, Ղևոնդներից։

Եւ դաւանական տեսակէտով ոչինչ զատ չը կար դրանից։ Այժմեան ժամանակի քրիստոնեայ անթիւ եկեղեցիները այն են ցոյց տալիս, որ իւրաքանչիւր ժողովուրդ իր տեսակ է ըմբռնում կրօնը։ Այսպէս է եղել դարերի սկզբից։ Երկնքի համար նշանակութիւն ունեցողը քրիստոնէութիւնն է և ոչ թէ մարդ-

կանց սանդղած ծէսերն ու ձեւերը։ Հայոց եկեղեցին ապրում էր իր համար, դաստիարակվում էր հինգերորդ դարի գրականութեան վրայ, որ ամբողջ ժամանակ բարձր հեղինակութիւն մնաց, մի և նոյն ժամանակ մտաւոր փոխառութիւններ էր անում Արևմուտքից, որքան այդ թոյլ էին տալիս քաղաքական դժբախտ հանգամանքները։

Իսկ այդ հանգամանքները երկար ու երկար կախված էին հայոց աշխարհի վրայ։ Արիւն-աւերանքի դարեր եկան ու գնացին, գահեր հիմնվեցին, գահեր խորտակվեցին, ազգաբնակութիւնը սպառվելու չափ ջնջվեց, ստրկութեան ամենադաժան լուծեր կրեց իր վզին։ Բայց խաւարի ու անէծքների մէջ չէին մարում կենդանութեան կրակները։ Դրանք ամեն ժամանակ, ամեն տեղ մի և նոյն կերպարանքն ունէին—Մեսրոպեան գիրը։ Մեր հազարամեայ անցեալի այն երկար ճանապարհին, որի վրայ փռված են մեր անհուն տառապանքները, ոչ բանակներ ունէինք մեր պահպանութեան համար, ոչ ոյժ, ոչ հնարաւորութիւն, ոչ էլ դրսի օգնութիւն, այլ մի հատիկ բան միայն—Մեսրոպեան գիրը։

Կամենո՞ւմ էք տեսնել նրա հրաշագործութիւնը, դիտեցէք մեր պատմութեան ամենամռայլ, զարհուրեցնող շրջանները՝ երբ բռնաւորի սուրը գերեզմանոց էր դարձնում

մեր երկիրը։ Դուք կը տեսնէք խաւար և մե-
ռելութիւն, գրականութիւնը դադարում է,
երկիրը վայրենանում է, անապատի փոխ-
վում։ Բայց մէկ էլ նշմարում էք, որ մի փոք-
րիկ լոյս վառվեց.—հեռաւոր մի խորշում
բացվել է դպրոց և մարդիկ գիշեր-ցերեկ
գիրք են կարդում։ Փոխվում է տեսարանը։
Կամաց-կամաց երևան են գալիս մարդիկ, աշ-
խարհը ձգտում է դէպի բարեկարգութիւն և
արիւնոտ պատմութեան էջերում լոյս են տա-
լիս ժպիտ ու յոյս պատճառող երևոյթներ։

Անցան բռնութեան երկաթէ դարերը,
նոր ժամանակներ լուսացան, երբ ազգերը
պիտի մկրտվէին եւրոպական լուսաւորու-
թեան մէջ։ Գրականութիւնը բաժանվեց ե-
կեղեցուց, աշխարհիկ կերպարանք ստացաւ։
Հայերի առաջ էլ դրված էր լինել—չը լինե-
լու անողորմ հարցը։ Այդ խորհրդաւոր ժա-
մանակում դարձեալ Մեսրոպն էր, որ եկաւ
մեզ առաջնորդելու դէպի այդ նոր պահանջը։
Եւ մենք էլ մտանք կրթվող, առաջադիմող
ազգերի շրջանը։

Հազար հինգ հարիւր տարի է անա, ինչ
մեզ հետ է Մեսրոպը։

## ՎԵՐՋԱԲԱՆ

Հանդարտ ու հեզիկ սահում է ամառնային օրը Օշականում: Կանաչներ, ստուերներ, յուլիսեան ջերմ լոյսեր:

Ս. Մեսրոպի փոքրիկ ծառերը կամ օրօրում են իրանց ճիւղերը, վրադ թափելով երերուն, խռթռող շուաքներ ու մեղմ շշուկների քրթմնջիւն, կամ անշարժանում են որ արևը լաւ տաքացնէ նրանց: Ամեն ժամանակ նրանց բուների մօտ ստուեր կայ, իսկ այդ ստուերի մէջ խտացած են դարերը: Նըրանք խօսում են, նրանք պատմում են: Այստեղ ամեն ինչ պատմութիւն է, այստեղ բացված են գերեզմանները:

Ու միմեանց ետևից ուղևորին հրաժեշտ են տալիս Օշականի համեստ, բայց անմոռանալի գեղեցկութիւնները:

Ահա ծածկվեց Վահան Ամատունին: Աւարայրի կռւողներից էր, կենդանի մնաց, գերի գնաց նախարարների հետ Պարսկաս-

տան, վերադարձաւ, իր ուսուցչի մօտ հող մտաւ։ Ամատունեաց այս գաւառը Վարդանի ժամանակ չը մոռացաւ որ Մեսրոպ ունի Իր հողում։ Նա զինված էր ամբողջովին, Ղեւոնդի և Յովսէփի հետ էր։ Կուի դաշտ գնացին, գերութեան տանջանքները ճաշակեցին և Ամատունի տոհմի կրտսեր իշխանները։

Արգէն ձորն ենք իջել, Քասախը իր վճիտ, աղմկարար ալիքներով բարի ճանապարհ է մաղթում գնացողին։ Եւ յետոյ—երկնքի մէջ խրված պսպղուն գագաթները—Արագած ու Մասիս։

Դարձեալ Արարատեան կրակված դաշտը, դարձեալ տօթ ու տանջանք։ Բայց Օշականի յիշատակները նստած են քո մէջ, բռնել են սրտիդ բոլոր խորշերը։ Նրանք քաղցր, անմեռ զգացմունքների աղբիւր դարձան, և այլ ևս ոչինչ չէ կարող չորացնել կամ սառցնել այդ աղբիւրը—ոչ այս խեղդող տօթը, ոչ Մասիսի սառցարանները։

Մեսրոպը ամէն տեղ։ Միշտ Մեսրոպը...

ՎԵՐՋ

# ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

1. *Փաւստոսի Բուզանդացւոյ Պատմութիւն Հայոց. Վենետիկ*, 1832.
2. *Ագաթանգեղոս, Պատմութիւն. Վենետիկ*, 1862.
3. *Կորիւն. Պատմութիւն վարուց և մահուան սրբոյն Մեսրոպայ վարդապետի. Վենետիկ*, 1894.
4. *Եզնկայ Կողբացւոյ Բագրեւանդայ եպիսկոպոսի Եղծ Աղանդոց. Վենետիկ*, 1826.
   Քննադատ.—*«Նորագոյն աղբերք Եզնկայ Կողբացւոյ»*, Հանդէս Ամսօրեայ, 1893, 1894.
5. *Եղիշէի Պատմութիւն Վարդանանց, Թէոդոսիա*, 1861.
   *Աշխարհաբար Թարգմանութիւն Հ. Ղուկասեանի, Թիֆլիս*, 1891.
   *Պատմութիւն Եղիշէի և քննադատութիւնք Մ. Փաշայի Փորթուգալ. Վենետիկ*, 1902.
6. *Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց. Վենետիկ*, 1891.
7. *Սրբոյ հօրն մերոյ Մովսէսի Խորենացւոյ Մատենագրութիւնք. Վենետիկ*, 1864.
   *Պատմութեան աշխարհաբար թարգմ. Խորէն եպիս. Ստեփանէի, Պետերբուրգ*, 1897.
8. *Պատմութիւն վասն սրբոյն Մաշտոցայ հայրապետին և Մեսրովբայ վարդապետին («Սոփերք Հայկականք», Բ.). Վենետիկ*, 1853.
9. *Գիրք Թղթոց. Թիֆլիս*, 1901.
10. *Հ. Ղ. Ալիշան. Այրարատ, բնաշխարհ Հայաստանեայց. Վենետիկ*, 1890.
11. *Հ. Յ. Գաթըրճեան. Տիեզերական Պատմութիւն. հատ. Բ., Վիեննա*, 1852.
12. *Ա. Մ. Գարագաշեան. Քննական Պատմութիւն Հայոց.* 4 *հատոր, Թիֆլիս*, 1894.
13. *Թ. Նէօլդէքէ. Պատմութիւն Սասանեան Տէրութեան, թարգմ. Ն. Քարամեան, Վաղարշապատ*, 1896.
14. *Ս. Մալխասեան. Դասընթաց Հայոց Մատենագրութեան Պատմութեան. Թիֆլիս*, 1899.

15. *Հ. Գ. Մէն. Ծագումն հայ տառից (մատենախօս.)* Հանդէս Ամսօրեայ, 1896.
16. *Նորայր Ն. Բիւզանդացի. Կորիւն վարդապետ և նորին թարգմանութիւնք. Թիֆլիս,* 1900.
17. *Պրոֆեսոր Հ. Գելցէր. Համառօտ Պատմութիւն Հայոց. Թարգմ. Հ. Գ. Գալէմքեարեան. Վիեննա,* 1897.
18. *Հ. Արսէն Այտընեան. Քննական Քերականութիւն աշխարհաբար կամ արդի հայերէն լեզուի. Վիեննա,* 1866.
19. Масперо. Древняя Исторія Востока. М. 1894.
20. I. Г. Дройзенъ. Исторія Эллинизма. 3 т. М. 1890.
21. Т. Момсенъ. Римская Исторія 4. т. М. 1887.
22. В. Коршъ. Всеобщая Исторія Литературы. т. I, Спб. 1880.
23. Г. Кольбъ. Исторія Человѣческой Культуры. т. I, Кіевъ, 1897.
24. А. Мензисъ. Исторія Религій. Спб. 1897.
25. Беттани и Дугласъ. Великія Религіи Востока. М. 1899.
26. Проф. А. Крымскій. Арзакиды, Сасаниды и завоеваніе Ирана арабами. Лекціи. М.
27. Г. Халатьянцъ. Армянскіе Аршакиды въ «Исторіи Арменіи» Моисея Хоренскаго. М. 1903.
28. Архиманд. Месропъ Теръ-Мовсесянъ. Исторія перевода Библіи на армянскій языкъ. Спб., 1902.
29. Н. Марръ. Тексты и разысканія по армяно-грузинской филологіи. V. Критика и мелкія статьи. Спб., 1903.
30. В. Райтъ. Краткій очеркъ Исторіи Сирійской Литературы. Спб. 1902.
31. Я. Шницеръ. Иллюстрированная Всеобщая Исторія Письменъ. Спб. 1903.
32. З. Рагозина. Исторія Мидіи, второго Вавилонскаго царства и возникновенія Персидской державы. Спб., 1903.
33. В. Виндельбандъ. Исторія Философіи. Спб., 1898.
34. Гиббонъ. Исторія упадка и разрушенія Римской Имперіи. т. III, М. 1876.
35. Бокль. Исторія Цивилизаціи въ Англіи. Спб., 1895.

## ԿԱՐԵՒՈՐ ՍԽԱԼՆԵՐԸ.

| Եր. | Տող | Սխալ | Ուղիղ |
|---|---|---|---|
| 8 | 3 ն. | 1902 | 1903 |
| 25 | 8 վ. | *հարկադրութիւնը* | *հակադրութիւնը* |
| 36 | 11 վ. | *որ և* | *որ և է* |
| 76 | 9 ն. | *վարդապետունը* | *վարդապետութիւնը* |
| 91 | 8 » | *անյատութիւն* | *անյայտութիւն* |
| 116 | 3 » | *մօտ* | *մօտ.* |
| 151 | 4 » | *ե* | *և* |
| 170 | 1 » | *այդպէռ* | *այդպէս* |
| 194 | 3 » | *ունարէնից* | *յունարէնից* |
| 306 | 1 » | *ելու* | *անելու* |
| 309 | 1 վ. | *վր* | *իր* |

---